# Տ Ա Ճ Կ Ա Հ Ա Յ Ք

## (ՀԱՅՈՑ ՀԱՐՑԸ)

ՐԱՖՖԻ

# ՏԱՃԿԱՀԱՅՔ

(ՀԱՅՈՑ ՀԱՐՑԸ)

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՆՈՐ ՆԻՒԹԵՐՈՎ ԼՐԱՑՐԱԾ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1913.

# ՑԱՆԿ

Էջ

# ԱԶԴ

---

Ներկայ հատորի մէջ ամփոփուած կտորներից “Հայաստանը երկու կրակի մէջ,, եւ նրա յառաջաբան կազմող “Մենք յոյսերով ենք մեզ խաբում,, հատուածները առաջին անգամ են տպագրւում: Ճիշտ է 187 թուին “Մշակում,, լոյս տեսաւ “Դատարկ յոյսերով ենք խաբւում,,. բայց այդ մի համառօտ ուրուագիծ էր, որը մինչեւ անգամ ամբողջովին չտպագրուեց: Ահա ինչ է գրում “Մշակի,, այն ժամանակուայ քարտուղար Ց. Տէր Գրիգորեանը իր փետրուարի 24 նամակով հեղինակին՝ որը այն ժամանակ գտնւում էր Ագուլիսում. — “Քո յօդուածները շատ են կարդացւում, մանաւանդ Մ: 22 մէջ տպուած գծի տակ յօդուածը, որտեղից միայն թաղողը (գրաքննիչը) բաւական հանեց, բայց թողուածի համար էլ շնորհակալ պէտք է լինել,,:

Զնայելով այդ կրճատումներին, յօդուածը, իր մէջ արծարծած նոր մտքերի պատճառով, մեծ տպաւորութիւն գործեց մասնաւորապէս գրական շրջանում եւ ընդհանրապէս ընթերցող հասարակութեան վրայ: Նամակագիրը շարունակում է. “Գ. Արծրունին շատ անգամ ինձ մօտ յայտնել է իր շնորհակալութիւնը ‘դատարկ յոյսերով ենք խաբւում’, յօդուածի համար, որ ունեցաւ առանձին տպաւորութիւն:,,

Քաջալերուած ստացուած եւ այլ նամակներով եւ ուրիշ համակրական զգացմունքներով այդ առթիւ, հեղինակը ընդարձակեց այդ գրուածքն նպատակ ունենալով հասցնել իր պատմական տեսութիւնը մինչեւ մեր օրերը:

Բայց դժբախտաբար վերջին շրջանները չեն գրուած: Կան սեւագրութեան կտորներ, նիւթեր, որոնցից հեղինակը նպատակ ունէր կազմել յետագայ ժամանակների պատմութիւնը: Զգուշութեամբ համեմատելով, որքան մշակուած ձեռագրի հետ կցեցինք մի քանի սեւագրութեան կտորները իբրեւ ծանօթութիւն, իւրաքանչիւր դէպքում յիշելով՝ "ծանօթութիւն նիւթերից,,:

Հեղինակը մասամբ լրացնում է իր տեսութիւնը քննելով խնդիրը եւ այլ տեսակէտներով "Սամուէլի,, միջանկեալ "Փակագծի մէջ,,: Այդ զուտ պատմական տեսութիւնը ունեցել է մեր գրականութեան մէջ առանձին նշանակութիւն, լինելով նոր ըմբռնում պատմութեան:

Դրանից յետոյ շատ պատմական գրուածքներ են երեւան եկել զանազան գրողների կողմից, որոնց յենակէտերը Րաֆֆիի պատմական նոր ըմբռնումներն են կազմում:

"Խամսայի Մելիքութիւնները,,, "Դաւիթ-Բէկ,, եւ "Սամուէլը,, պատմական հարուստ շտեմարաններ են գրուած նոր քննական ոգով:

Ուստի Րաֆֆիի պատմական տեսութիւնները ամբողջացնելու համար, մօտեցրինք այդ հատուածները: Աւելորդ չը համարեցինք կցել դոցա "Սամուէլից,, վերցրած մի համառօտ կտոր "Մի խօսակցութիւն Սահակ եւ Մեսրոպի մէջ,,, որը նոյն խնդիրն է շօշափում տարբեր տեսակէտներով: "Դաւիթ-Բէկը,, կազմում է "վերջին շրջանը,,, դա մի համառօտ պատմական տեսութիւն է, որ հեղինակը գրել է նախ քան այդ անուն կրող իր վէպը, որը մինչեւ այժմ անտիպ էր մնացել:

Լօնդօն, 2 Նոյեմբեր 1910:

ԱՅՐԻ ԱՆՆԱ ՐԱՖՖԻ

## ԱՊՐԻԼ 24ԻՆ 1913 Թ. ԼՐԱՆՈՒՄ Է ՐԱՖՖԻԻ ՄԱՀՈՒԱՆ 25 ԱՄԵԱՑ ՏԱՐԵԴԱՐՁԸ։



Րաֆֆի

Ծն. 1837—† 1888

# Ի՞ՆՉ ԿԱՊ ԿԱՅ ՄԵՐ ԵՒ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ ՀԱՅԵՐԻ ՄԷՋ

## Ա.

Մինչեւ վերջին ռուս-թիւրքական պատերազմը, եթէ պատահում էր մեր կողմերում մի տաճկաստանցի հայ ֆէսը գլխին, իսկոյն "հոսոս" անունը կպցնում էինք ճակատին եւ երեսներս շուռ տալիս: Մեր կողմերում մշեցի եւ վանեցի հայ մշակներին մեր երեխաներն անգամ "կռօ" էին կոչում, եւ շատերն մեզանից հաւատացած էին, թէ "կռօն" հայ չէ, այլ Քրդերի մի որ եւ է ցեղին է պատկանում:

Տաճկաստանցին նոյն սխալ եւ մութը կարծիքներ ունէր մեր մասին: Եթէ մեզանից մէկը հանդիպում էր Կ. Պոլսի կամ այլ քաղաքների փողոցներում, տաճկաստանցին մի կասկածաւոր հայեացք է գցում մեր երեսին, եւ "անոնցմէ է" . . . . ասելով, ցոյց էր տալիս իւր ընկերին: Մեզ համարում էին հայութիւնից օտարացած, մենք միմեանց չէինք ճանաչում, նրանք օտար էին մեզ, իսկ մենք — նրանց:

Մեր մէջ բոլոր յարաբերութիւնները կտրուած էին։ Վաճառականութիւնը, որ կարող էր մեր մէջ հաղորդակցութեան կապ լինել, այն եւս չը կար։ Տաճկաստանցի Հայը գործ ունէր եւրոպացիների հետ, իսկ մեր վաճառականը Մոսկուայի եւ Նիժնայի հետ։ Մի քանի ծխախոտ ծախողներ վերջին ժամանակներում միայն սկսեցին յայտնուել Թիֆլիսում։

Մնում էր երկու բան, որ կարող էին մեզ ծանօթացնել միմեանց հետ, այն է՝ գրականութիւնը եւ լրագրութիւնը։

Բայց մի՞թէ ունինք գրականութիւն։ Մենք ունինք, արդարեւ հին, կլասիկական հարուստ գրականութիւն, բայց նոր ոչինչ նոր չունենք։ Եղիշէն կարդալով կարող ենք տեղեկութիւն ստանալ, թէ որպէս էր տանջվում հինգերորդ դարու Հայը պարսիկներից, իսկ այժմեան Թիւրքիայի Հայի վիճակի մասին նա մեզ տեղեկութիւն չի տայ։

Մի ազգի կամ մի ժողովուրդի հետ կարելի է ծանօթանալ իւր գրականութիւնից, մինչեւ անգամ նրան չը տեսնելով, բայց այն ժամանակ միայն, երբ գրականութիւնը կը լինէր կատարեալ արտայայտութիւն նոյն ազգի կեանքի եւ մտաւոր զօրութեան, — երբ գրականութեան մէջ կը յայտնուէր նա իւր տնտեսական, արհեստագործական եւ ընկերական կեանքով, իւր մտածութիւններով եւ ձգտումներով, մի խօսքով, իւր կեցութեան բոլոր բազմատեսակ կողմերով։ Այսպիսի գրականութիւնից թէ մենք եւ թէ մեր տաճկաստանցի եղբայրներս զուրկ ենք։

Ինչ գործ էր կատարում լրագրութիւնը։

Մեր լրագրութիւնը առաջ ամենեւին չէր զբաղվում տաճկաստանցիներով. նա չէր զբաղվում եւ մեր տեղական հարցերով կամ մեր կեանքով։ Իսկ Տաճկաստանի Հայոց

լրագրութիւնը հէնց այսօր նոյն ողորմելի վիճակի մէջն է, ինչ որ էր մեր լրագրութիւնը տասը տարի առաջ։

Ես համոզուած եմ, եթէ մէկը այժմ վեր առնի «Մշակի» եւ «Մեղուի» (Նորի) բոլոր համարները եւ ուշադրութեամբ ուսումնասիրէ, կը տեսնայ, եթէ ոչ բոլորովին կատարեալ, բայց բաւականին պարզ գաղափար Ռուսաստանի Հայոց կեանքի մասին, — կը տեղեկանայ նրանց տնտեսական վիճակը, եւ թէ ուսումը կրթութիւնը։ Ո՛ր աստիճան առաջ է գնացել, կամ ի՞նչ դեր են խաղում նրանք արհեստի եւ վաճառականութեան մէջ, եւ նմանաւոր վիճակագրական տեղեկութիւններ կունենայ, թէ որքան թուով որտեղ են բնակւում եւ այլն։ Իսկ Կ. Պոլսի լրագրութիւնը չէր կարող մեզ այս տեղեկութիւններից եւ ոչ մէկը տալ, որովհետեւ նա տեղական հարցերով չէր զբաղւում։ Կ. Պոլսի լրագրութիւնը զբաղուած էր Եւրոպայով եւ պատրիարքարանի խնդիրներով, բայց Բօսփօրի միւս կողմը, Փոքր-Ասիայում նա ոչինչ չէր տեսնում, — Հայաստանի հայ բնակչի վիճակը եւ նրանց յարաբերութիւնները իրանց օտարազգի դրացիների հետ չէին հետաքրքրում Կ. Պոլսի լրագրութիւնը. շատ-շատ եւ կը տպէր մի գաւառական սկանտալ եւ աւելի ոչինչ։

Կ. Պոլսի լրագրութիւնը չէր ուսումնասիրում մինչեւ անգամ իր ոտքի տակի հողը — Կ. Պոլիսը։ Մենք ամենեւին չը գիտենք, թէ մօտ հարիւր հազար հայ բնակիչներ Թիւրքիայի Մայրաքաղաքում ինչ գործով են զբաղուած, մի քանի հատակոտոր, ծուռ ու սխալ տեղեկութիւններ հասել են մեզ նրանց մասին օտարազգի լրագրութիւնից, իսկ բուն Կ. Պոլսի լրագրութիւնը նրանց մասին միշտ լուռ է եղել։

Բայց Կ. Պոլսում հրատարակուել է միշտ 10ից սկսեալ մինչեւ 15 կամ աւելի, զանազան տեսակ պարբե-

րական թերթեր, եւ չը նայելով նրանց բովանդակութեան աղքատութեանը, լրագրութեան փոխանակութիւն եւս չէ եղել մեր եւ նրանց մէջ։ Ուրեմն լրագրութիւնն եւս չէր կարող մեզ կատարելապէս ծանօթացնել միմեանց հետ։ — Մեզ մօտեցնելու եւ միմեանց հետ ծանօթացնելու կարեւորութիւնը զգալով "Մշակը„, սկսեալ իր հրատարակութեան օրից, եւ մանաւանդ վերջին տարիներում սկսեց խիստ յաճախ խօսել տաճկաստանցոց վրայ, եւ ես համոզուած եմ, որ Պոլսեցիք կարդալով "Մշակը„ աւելի ճիշտ տեղեկութիւններ կարող էին քաղել Փոքր-Ասիայի հայոց դրութեան մասին, քան թէ իրանց բոլոր լրագրութեանը ամբողջութեամբ վեր առած։

Եւ այսպէս Տաճկաստանի հայոց դրութիւնը մեզ այնքան էր յայտնի, որքան Միջին-Աֆրիկայի վայրենիների դրութիւնը, եւ նոյն իսկ Պոլսեցիք մեզանից աւել չը գիտէին նրանց մասին։ Այս կարծիքը ուղիղ է, եւ որի ապացոյցն է այն, որ հայոց պատգամաւորների մէկը արդէն գտանվում էր Լոնդոնում, իսկ միւսը Ս. Պետերբուրգում, երբ Կ. Պոլսում դեռ նոր մտածեցին, թէ Հայաստանի մասին պէտք է ճիշտ եւ մանրամասն տեղեկութիւններ ունենալ եւ դեռ նոր վարդապետներ վազեցրին դէպի Հայաստան, որ գնան, տեսնեն, թէ որտեղ են բնակւում հայերը, ո՞րքան է նրանց թիւը եւ ինչ յարաբերութեան մէջ են օտարների հետ։ Այն ժամանակ միայն մտածեցին Հայաստանի համար քարտէս պատրաստել։ Բայց Կ. Պոլսում պատրիարքարան կար, ազգային ժողով կար, այնտեղ էր հայոց ինտելիգենցիան. — այս բոլորը պէտք է գիտենային եւ պատրաստէին առաջուց, շատ եւ շատ առաջուց, եւ որի մէջ գլխաւոր գործիչ պէտք է լինէր լրագրութիւնը, եւ առհասարակ լրագրութիւնը։

Ուրիշ օրինակ անյարմար կը լինէր բերել, քան թէ այն, որ Բերլինի աւագաժողովի ժամանակ Կ. Պոլսի Հայոց դրութիւնը նմանում էր մի վաճառականի, որ կամենում է սկսել մի մեծ առեւտրական սպեկուլացիա, առանց նախապէս գիտենալու իր դրամական վիճակը. նա հասկանում է, որ իր կասսան դատարկ է այն ժամանակ միայն, երբ գործը արդէն էր վերջացել։ Այսպիսի հանգամանքում անյաջողութիւնը ինքն ըստ ինքեան հասկանալի է։

Բայց անյաջողութիւնը, մանաւանդ մի մեծ յեղաշրջումից յետոյ ժողովուրդների կեանքում, ինչպէս եւ պարտութիւնը ձախորդ պատերազմից յետոյ, ունին իրանց օգուտները այն կողմից, որ նոյն ժողովուրդներին հասկացնել են տալիս իրանց դրութիւնները, սխալները եւ առհասարակ նրանց անընդունակութիւնները, որոնք պատճառ եղան անյաջողութեան։ Եւ այդ գիտակցութիւնը բաւական էր ապագայում նրանց առաջնորդելու համար դէպի ուղիղ եւ հաստատ ճանապարհը, որ հասցնում է նպատակին։ Եթէ կայ Տաճկաստանի Հայոց անյաջող ձեռնարկութեան մէջ մի օգտաւէտ կէտ, — այդ է։ Իսկ արդեօք կարո՞ղ են տաճկաստանցիք օգուտ քաղել դրանից, — ահա մի հարց, որ պէտք է պարզել։

Այդ հարցը այնքան բաղադրեալ է, որ դժուար է միանգամով բացատրել, մենք կը հետազօտենք նորա գլխաւոր գծերը միայն։ Արդարեւ, ամեն մի անյաջող ձեռնարկութիւն ժողովուրդների կեանքի մէջ ունի իր օգուտները, որ նրանց զգալ է տալիս իրանց թերութիւնները եւ նախապատրաստում է մի նոր ապագայի համար, եւ դրանից է յառաջ գալիս այն գիտակցութիւնը, որ կոչվում է ինքնաճանաչութիւն։ Բայց դժուար կարելի է գտնել ամբողջ մարդկութեան մէջ մի ժողովուրդ, որ ինքն իրան

ճանաչէր, — նրան ճանաչում են եւ քննում են նոյն ժողովրդի առաջաւոր մարդիկը, զարգացած մասը, որպէս բժիշկը հիւանդներին։ Եւ այս վերջինները հաղորդում են ժողովրդին նրա թերութիւնները, նրա պէտքերը, եւ միեւնոյն ժամանակ հնարներ նոյն պէտքերին բաւականութիւն տալու։ Դրանք կոչւում են զանազան անուններով՝ ժողովրդական գործիչներ, առաջնորդող մարդիկ, — գրաւոր եւ բերանացի խօսքը նրանց գլխաւոր զէնքն է, — նրանք ներկայացնում են ժողովրդի մտաւոր զօրութիւնը, — նրա ինտելլիգենցիան։

Բայց մենք տեսանք մեր յօդուածի սկզբում Թիւրքիայի հայի թշուառ ինտելլիգենցիան նա կարո՞ղ է արդեօք առաջնորդող լինել, ազդել դրդել եւ բարձրացնել ամբոխը իր ընկած դրութիւնից, քանի որ ինքը՝ ինտելլիգենցիան ուղղուելու կարօտ է։

Պէտք է ի նկատի ունենալ եւ տեղի դրութիւնը։ Կ. Պոլիսը, որպէս պաշտօնական կայարան, հասկանալի է, այնտեղ է Բ. Դուռը, այնտեղ հայոց պատրիարքը միշտ կարող է յարաբերութիւն ունենալ վէզիրների եւ Եւրոպական պետութիւնների ներկայացուցիչների հետ։ Բայց Կ. Պոլիսը որպէս ներգործող կենդրոն Հայաստանի վերաբերութեամբ, անյարմար է։ Կ. Պոլիսը, թէեւ կրում է իր մէջ Տաճկաստանի հայոց առաջաւոր մարդիկը, բայց իր առանձնացած դիրքով, հազիւ թէ կարող էր ազդել հեռաւոր Հայաստանի վրա։ Կ. Պոլիս եւ տաճկական Հայաստանի մէջ ծովեր կան, Անատոլիայի ցամաքը կայ, այլ եւս չենք յիշում ճանապարհների վատ հաղորդակցութիւնը։ Այստեղից հասկանալի է ազդեցութեան թուլութիւնը, որ Պոլսեցիք կարողանում են անել բուն Հայաստանցոց վրա։ Ուրեմն չէ կարելի ամեն ինչ յուսալ պոլսեցիներից կամ ամեն ինչ նրանցից միայն սպասել։

Տաճկական Հայաստանի հայերին, աւելի քան պոլսեցիքը, կարող ենք օգնել մենք՝ Ռուսաստանի հայերս, որովհետեւ նրանց հետ մօտ դրացութեան յարաբերութիւն ունինք։ Թողնելով այդ, Ռուսաստանի հայը համեմատաբար աւելի բարձր է քան թէ պոլսեցին, թէ իր մտաւոր եւ թէ նիւթական կարողութեամբ։ Ի՞նչու մենք բոլոր հոգսը պոլսեցիների վրա ենք ձգում. մենք նրանց հետ պէտք է բաժանենք բռնութեան լծի տակ ճնշուած մեր եղբայրների ցաւերը։

Տաճկաստանի հայերի վերականգնումը միշտ կարծիքական պէտք է համարել, երբ յոյս կը դրուի միմիայն Կ. Պոլսի վրա։ Պէտք է ամեն տեղից, ուր որ կան հայեր, օգնութեան ձեռք մեկնեն նրանց, եւ այդ պարտաւորութիւնը առաւելապէս հասնում է մեզ՝ ռուսահայերիս։ Մեր բարեսիրտ կառավարութիւնը մեզ չէ արգելում օգնել նրանց. նա կը ցանկանայ, որ մենք պատրաստէինք Փոքր-Ասիայում մի ժողովուրդ, որպէս վահան անգլիական ազդեցութեան դէմ. նա կը ցանկանայ, որ մի քրիստոնեայ ժողովուրդ ազատուած լինի Թիւրքիայի բռնութիւնից, որոնց համար թափեց իր զինուորների այնքան շատ արիւնը։

Ի՞նչ կարող ենք անել, գուցէ կը հարցնէ ընթերցողը։ Շատ բան, միայն թէ մտածէինք օգնել։

Բայց նախ քան օգնելը, պէտք է գիտենալ, թէ ինչ բանի կարօտ են նրանք, իսկ այդ գիտենալու համար պէտք է նրանց հետ, որեւիցէ կապ եւ յարաբերութիւն ունենալ։ Բաւական չէ այն, որ մենք նրանց հետ դրացիներ ենք, բայց մեր դրացութիւնը մինչեւ այսօր եղել է այնպէս, որ առիթ չենք ունեցել լաւ ճանաչել միմեանց։ Եւ մեր յօդուածի սկզբում նոյնպէս նկատեցինք, որ մեր եւ տաճկաստանցւոց մէջ չը կայ եւ չի եղել որ եւ իցէ միացնող կապ։

Մեր մէջ կայ մի կապ միայն, այն է ազգակցական, որ նրանք եւ մենք միեւնոյն ցեղին ենք պատկանում, միեւնոյն լեզուով ենք խօսում, եւ մեր երակների մէջ միեւնոյն արիւնն է վազում. — այսքանը միայն։ Մի որոշ կապ էլ ունինք, այն է կրօնական, որ մենք եւ նրանք միեւնոյն եկեղեցուն ենք պատկանում։ Իսկ այդ վերջին կապը հազիւ թէ կարելի է ամբողջական համարել՝ զանազան հերձուածների պատճառով, — մեր կաթոլիկ, բողոքական եւ մահմետական եղբայրների մեզանից բաժանուելով, — այլեւ, բուն լուսաւորչականների վերաբերութեամբ նոյնպէս թոյլ է նա, որովհետեւ, մեր մեղքից, մեր եկեղեցական կառավարութիւնները երկու հակառակ պետութիւնների մէջ՝ — Թիւրքիայում եւ Ռուսաստանում — կարծես, մինը միւսին հակառակ աթոռներ են ներկայացնում, եւ այդ աւելի նկատելի եղաւ վերջին քաղաքական հանգամանքներում, երբ Ս. Էջմիածնի վեհարանը[1] իրան խուլ անտարբերութեան մէջ պահեց, ամենեւին չը մասնակցելով Կ. Պոլսի պատրիարքարանի ձգտումներին։ Պատմութիւնը, ի հարկէ, կը դատապարտէ այդ մեծ անուշադրութիւնը, իսկ ժամանակակից բարեմիտ մարդը չէ կարող առանց խորին վրդովմունքի նայել դրա վրայ։

Ցաւելով պէտք է խոստովանվել, որ չը նայելով մեր ամենին բոլոր ցանկութեանը, վերջին ժամանակներում, լուսաւորչական Ս. աթոռի Վեհափառի ընտրութիւնը Թիւրքիայի եկեղեցականներից չարդարացրուց այն յոյսը, որ սպասվում էր, այսինքն, որ Տաճկաստանից ընտրուած ընդհանուր հայոց Վեհ. կաթողիկոսը կամրացնէր հայրապետական աթոռի կապերը Կ. Պոլսի պատրիարքարանի հետ, որպէս աւելի բազմաթիւ հայ ազգաբնակութեան

[1] Գէորգ Դ.ի կաթուղիկոսութեան օրով։ Ծան. հրտ.։

եկեղեցու ներկայացուցչի։ Այս խօսքերը մեզ առել են տալիս մի քանի տխուր փաստեր, որոնց յիշելը աւելորդ ենք համարում։ Եւ որ աւելի վնասակարն է, այն է, որ նոյն իսկ Ս. Էջմիածնի մէջ յառաջ եկաւ մի տեսակ խորթութիւն, — վեհարանը առանձնացաւ ամբողջ միաբանութիւնից։ Ով որ փոքր ի շատէ ծանօթ է Ս. Էջմիածնի այժմեան դրութեանը, կը համաձայնուի մեզ հետ։ Այդ, ի հարկէ, պէտք է համարել մի կամայական զեղծում, որ առաջ է եկել աւելի անձնաւորութիւններից, եւ որը ապագայում կարող է ուղղուել, երբ նոյն անձնաւորութիւնները տեղի կը տան ուրիշներին։ Իսկ մեր եկեղեցական բարձր կառավարութեան հիմնական գաղափարը դարձեալ կը մնայ այն, ինչ որ եղել է միշտ, այսինքն, թէ Ս. Էջմիածինը, որպէս գլուխ, կունենայ սերտ եւ անմիջական կապ իւր բոլոր մասների հետ, — ընդհանուր Հայոց հոգ. ներկայացուցիչների հետ, — որտեղ եւ ինչ պետութեան մէջ լինէին նրանք։

Ես հարկաւոր չեմ համարում այժմ մեր կեղտոտ լուացքը դուրս թափել եւ ուրիշների աչքի առջեւ լուանալ. դեռ եւս պէտք է լռել... խօսելու ժամանակ շատ կայ...

Խօսելով ազգային միութեան վրայ, չէ կարելի չը յիշել մեր այն եղբայրներին, որ կրօնական հերձուածներով բաժանուել են մեզանից, մեր խօսքը հայ-բողոքականների եւ հայ-կաթոլիկների մասին է։ Լրագրութիւնը այժմ զբաղուած է այդ հարցով։ Բայց մենք երբէք մեզ թոյլ չէինք տալ հակառակ լինել խղճի ազատութեան, եթէ կրօնական հերձուածները Թիւրքիայի հայերի մէջ չը վնասէին ազգային միութեան եւ չը բաժանէին նրա ամբողջութիւնը։ Բայց երբ տեսնում ենք բողոքականութիւնը

հայերի մէջ դառնում է զանազան քաղաքական նպատակների գործիք անգլիացիների ձեռքում, որ չունի ոչինչ կապ քրիստոնէութեան եւ կրօնի հետ, — այդպիսի դէպքում չէ կարելի անտարբեր մնալ։ Ով որ տեսել է բողոքականին Եւրոպայում, գուցէ կը ծիծաղի մեր դատողութեան վրայ, բայց Ասիայում նոյնը չէ բողոքականը, այստեղ նա բաժանուելով իւր մայրենի եկեղեցուց, դառնում է բոլորովին ուրիշ մարդ. Նրա բոլոր կապերը կտրւում են ազգի հետ, եւ նայում է իւր ազգայինների վրայ այնպէս, որպէս մի ժամանակ հրէաները նայում էին սամարացիների վրայ։ Կաթոլիկների մասին աւելորդ է խօսել անգամ, նրանք եւս վատ են։ Մէկը իրան ինգլէզ է կոչում, միւսը ֆրանգ։ Եթէ սրանք այսպէս են, լուսաւորչականները նոյնպէս յետ չեն մնում իրանց աններողամտութեամբ դէպի իրանց անջատուած եղբայրները, եւ աւելի նրանց առիթ են տալիս հեռանալու։

Ճանապարհորդելով մի ժամանակ տաճկական Հայաստանում, ես շատ անգամ առիթ եմ ունեցել տեսնուել որպէս կաթոլիկ, նոյնպէս բողոքական հայերի հետ. մտել — եմ նրանց դպրոցներում, ժողովարաններում, եւ երբեմն տաք վիճաբանութիւններ եմ ունեցել նրանց հետ։ Այդ մարդկանց վրայ պէտք է խղճալ, նրանք շատ ողորմելիներ են։ Նրանց այնքան փոքր բան են սովորացրել, որ ուրիշ կերպ լինել չէին կարող, հին եւ նոր կտակարանից մանաւոր տեղեկութիւն, մի քանի աղօթքներ, փոքրիկ քրիստոնէական վարդապետութիւն, եթէ աւելացնենք դրանց վրայ եւ այն համոզմունքը, թէ ով որ իրանց եկեղեցուն չէ պատկանում, զրկւում է Քրիստոսի արքայութիւնից, կը ստանանք նրանց գիտութեան ամբողջ չափը։

Մեր կարծիքով, այդ բաժանումները լոկ դաւանաբանական պատճառներով, պէտք է համարել ժամանակաւոր մի երեւոյթ, որը ինքն ըստ ինքեան կ'անհետանայ, երբ ազգայնութեան գաղափարը իւր բոլոր կենագործող զօրութեամբ կը մարմնանայ նրանց մէջ։

Շատ ցանկալի էր, որ մեր բոլոր ազգայինները պատկանէին նոյն եկեղեցուն. բայց երբ որ կաթոլիկութիւնը եւ բողոքականութիւնը մեր մէջ արդէն մի կատարուած իրողութիւն է, այլ եւս ինչ պէտք է անել։ Մեր եկեղեցականները չունին այն հոգին որ աշխատեն կրկին նրանց միացնել մեզ հետ. ուրեմն պէտք է թոյլ տուած, որ կրօնի վերաբերութեամբ ազատ մրցութիւնը ընթանայ իւր ճանապարհով, իսկ ազգայնութեան վերաբերութեամբ՝ աշխատել, որ պահպանուի նրանց հետ մեր միութիւնը։ Մենք այն կարծիքի ենք, թէ դաւանութիւնների բազմատեսակութիւնը չէ ոչնչացնում ազգային միութիւնը, — միութիւնը պէտք է որոնել, այդ մասների ներդաշնակութեան մէջ, որի հիմնական ձօնն— պէտք է լինի ազգայնութիւնը իւր բարձր նշանակութեամբ։ Մենք համոզուած ենք, որ մի առանձին եկեղեցու անբաժան միութիւնը նոյն ազգի մէջ, կարող է տանել դէպի միակողմանիութիւն, եւ հետեւապէս դէպի անկենդանութիւն, — որի ընդհակառակն, բաժանուած մասերը, առանց մի ընդհանուր առաջնորդող ազգային ոգու (որ կարտայայտէր բոլորի շահերը) կը տանեն դէպի թուլութիւն եւ կործանում։

Կրկնում եմ, պէտք է թողնել մրցութիւնը գնայ իւր ճանապարհով, դրանով աւելի կը շահուեն լուսաւորչականները, քան թէ հալածելով իրանց եղբայրներին։ Տաճկաստանցիք փոքր չօգտուեցան այն մրցութիւնից. եթէ նրանց մէջ փոքր ի շատէ ծաղկել սկսեց տպագրութիւնը

եւ առհասարակ գրականութիւնը, դա առաջ եկաւ Վենետիկցոց հետ մրցութիւնից. եթէ նրանք սկսեցին բարեկարգել եւ բազմացնել իրանց դպրոցների թիւը, դա առաջ եկաւ բողոքականների հետ մրցելուց: Բողոքականութիւնը այժմ մեծ գործունէութեան մէջ է. բայց հաւանական չէ նրանցից սպասել այն վտանգը, որ կարծվում է, որովհետեւ Փոքր-Ասիայի մէջ գործող միսիօնարները ըստ մեծի մասին պատկանում են Ամերիկայի մեթօդիստների Փօրտ ընկերութեանը, որոնք անգլիականների կամ անգլիացոց հետ ոչինչ կապ չունեն եւ մինչեւ անգամ սաստիկ հակառակ են վերջիններին: Իսկ եթէ կը մտնեն հայերի մէջ բուն անգլիականները, այն ժամանակ գործը կը փոխուի, նրանք կարող են վտանգաւոր լինել, հայերից շատերը կընկնեն նրանց գիրկը, անգլիական կօնսուլներից եւ գործակատարներից պաշտպանութիւն գտնելու համար:

Եթէ քննենք Թիւրքիայում կրօնափոխութիւնների պատճառը, կը տեսնենք, որ դաւանաբանական համոզմունքը, խղճի երկրորդական դեր է խաղում, այլ ըստ մեծի մասին մարդիկ հեռանում են իրանց եկեղեցուց կեանքի զանազան նիւթական կարիքների պատճառով: Տեսնում էք, միսիօնարը յայտնվում է մի տեղ: — Նրանք ընտրում են խուլ անկիւններ, ուր տիրում է մտաւոր եւ նիւթական աղքատութիւն: — Նրա քարոզների առաջին ունկնդիրները լինում են այն մարդիկը, որ իր տանը ծառայում են, խոհարարը, սպասաւորը, ձիապանը, նրանց կանայքը եւ այլն: Ստանալով մեծ միջոցներ իր հայրենիքից, եւ օգուտ քաղելով երկրի էժանութիւնից, նա չնչին վարձատրութիւններով կարողանում է իրան շրջապատել անթիւ ծառաներով եւ շքեղ կացութեամբ: Տան ծառաների վրայ աւելանում են վարժապետները,

տպարանի մշակները, մանաւոր քարոզիչներ եւ բոլոր այն մարդիկը, որ որեւիցէ պաշտօն են կատարում եւ միսիօնարից ամսական են ստանում: Այսպէսով կազմվում է նրա փոքրիկ եկեղեցին: Բայց կտրուեցաւ մէկի ամսականը, զրկուեցաւ նա իւր տեղից, — միւս օրը այլ եւս չի գնայ “պատուելիի„ քարոզը լսելու:

Բայց “պատուելին„ ի հարկէ չէ կարող իւր ունկըն-դիրների բոլորին գործ յանձնել եւ ռոճիկ տալ, եւ նրանց պահպանելու համար, ստիպուած է ուրիշ կերպով օգնել, կամ փող ընծայելով, կամ պաշտպանելով այս եւ այն հարստահարութիւններից եւ կամ հրապուրելով զանազան խոստմունքներով ու յոյսերով: Մի փաստ, որին ես ականատես եմ եղել, կարող է բացատրել, թէ այս եղանակով հաստատուած եկեղեցին որքան հիմնաւոր պէտք է համարել: Մի գիւղացի պարտքով վեր է առնում միսիօնարից մի քանի ոսկի եւ իւր համար եզն է գնում: (Նրանք շատ անգամ տոկոսով փող են տալիս իրանց ունկնդիրներին աւելի պարտաւորացնելու համար:) Այնուհետեւ գիւղացին մի քանի ամիս յաճախում է լսելու “պատուելիի„ քարոզները, իսկ յետոյ դադարում է գնալ: Միսիօնարը պահանջում է ոսկիները եւ ստանում է խորամանկ գիւղացուց մի այսպիսի պատասխան. “Ես արդէն վճարել եմ ձեզ իմ պարտքը. դուք տուեցիք ինձ մի քանի ոսկի, ես փոխարէն երեք ամիս ձեր եկեղեցին եկայ. իսկ հիմա երբ փողը յետ էք պահանջում, պէտք է երեք ամիս էլ դուք մեր եկեղեցին գաք, որ «էշ«մէն» (այսինքն քվիտ լինինք:)„ Ի հարկէ, դրանք պատահում են աւելի չափահաս մարդկանց հետ, բայց մանուկները, որոնք կրթութիւն են ստանում նրանց դպրոցներում, բաւական տարբերվում են իրանց հայրերից:

Բայց դպրոցի աշակերտներն եւս, սկզբից կաշառուելով, մի տեսակ սովորում են փողի։ Աղքատ մանուկը, մտնելով միսիոնարի դպրոցը, ստանում է գիրք, թուղթ եւ բոլոր դասական պիտոյքները ձրի. Նա ստանում է շատ անգամ հագուստ եւ շաբաթական մի մասնաւոր վճար։ Նա սովորում է ուրիշի հաշւով ապրելուն։ Նա դուրս է գալիս դպրոցից բոլորովին փոխուած մարդ։ Սովորել է լաւ հագնել, լաւ ուտել, բայց չէ սովորել մի բան, որ կեանքի մէջ նրան հաց տար։ Իւր հօր պարապմունքի վրայ նա ամաչելով է նայում։ Ստիպուած է դիմել միսիոնարին, որ իրան գործ տայ։ Բայց միսիոնարը ամենի համար գործ չունի։ Նա մնում է անգործ եւ առանց ապրուստի։ Նա դառնում է աւելի թշուառ աղքատ, քան թէ իւր հայրը։ Այն ժամանակ պատրաստ է նա պատահած մարդու գիրկը ընկնել, իւր կրօնը փոխելով, եթէ նրան ապրուստի միջոց կը տար։ Այստեղից է յառաջ գալիս բախտախնդիրների այն հասարակութիւնը, որոնց ուրիշ անուն տալ անյարմար կը լինէր, բայց միայն կոչել կրօնավաճառներ, որոնք կաթոլիկներից փախչում են դէպի բողոքականները, իսկ վերջիններից դէպի կաթոլիկները, որտեղ որ նրանց լաւ էին վարձատրում։ Այդ պատահում է ոչ միայն մասնաւոր անձերի հետ, այլ ես գիտեմ մի ամբողջ բողոքական ժողովուրդ, ուր Ամերիկայի միսիոնարները աշխատել էին աւելի քան քառասուն տարի եւ միլիոններ էին ծախսել, բայց երբ սկսեցին ծախսերի թիւը պակասացնել[1] ժողովուրդը պատգամաւորներ ուղարկեց

---

[1] Այդ ընկերութիւնը, կարծեմ, 30 տարուց աւելի իրաւունք չունէր մի ժողովրդի մէջ ծախսեր անելու. այդքան միջոցում պէտք է նա իւր գործը աւարտած լինէր եւ այնուհետեւ ինքը ժողովուրդը պէտք է իւր եկեղեցու ծախսերը հոգար։

Լոնդոն, այստեղից հրաւիրելու անգլիականների (եպիսկոպոսների) քահանաներ, այն յուսով, թէ նրանք աւելի հարուստ են։

Վերոյիշեալներից պարզ է, որ Թիւրքիայում կրօնափոխութեան գլխաւոր պատճառները պէտք է որոնել ժողովրդի դառն աղքատութեան եւ նրա անտանելի հարստահարութիւնների մէջ մահմետականների կողմից։ Եւ մի եկեղեցի, որ հիմնվում է ժողովրդի չքաւորութիւնից եւ նրա նեղ դրութիւնից օգտուելով, հասկանալի է, թէ որ աստիճան փարող է նա հաստատուն լինել։ Եւ երբ ժողովրդի տնտեսական դրութիւնը կը բարեկարգուի, երբ նրա կեանքը կապահովուի. նա իւր գլխի եւ ապրանքի տէրը կը լինի, — ես համոզուած եմ, որ այդ կարգի կրօնափոխութիւնը ինքն իրան կարգելուի, եւ կը դադարի, ինչպէս նա այժմ չէ յաջողվում այն քաղաքներում, ուր ժողովուրդը փոքր ի շատէ հանգիստ է, եւ եթէ յաջողվում է, այն եւս բնակիչների ամենաստոր դասի մէջ, որ տանջվում են դառն աղքատութեամբ։

Ես շատ կը տխրէի, եթէ Ֆրանսիայում մի փոքրիկ հայ գաղթականութիւնը կընդունէր կաթոլիկութիւն, իսկ Անգլիայում բողոքականութիւն. կարող էի մարգարէի ոգւով նախագուշակել, որ նրանք մէկ կամ կէս դարից յետոյ կը կորչէին. բայց երբէք չեմ կարող երեւակայել, որ Հայաստանում հայը Ֆրանկ կամ ընգլէզ կարող է դառնալ։ Մի փոքրիկ ազգութիւն, իրաւ է, կը կլանուի, կանհետանայ, երբ կը միանայ իւր տիրապետող պետութեան եկեղեցու հետ, ինչպէս Թիւրքիայում բոլոր մահմետականութիւն ընդունող հայերը ձուլուեցան թիւրքերի հետ։ Բայց նոյնը չէ պատահում, երբ մի ժողովուրդ իւր հայրենի երկրում ընդունում է մի ուրիշ դաւանութիւն, որ տարբեր էր պետական կրօնից։

Թիւրքիայի անհեռատես կառավարութիւնը, որ Հայերի մէջ երկպառակութիւն գցելու միջոցով, եւ նրանց միութիւնը քանդելու համար թոյլ էր տալիս, եւ մինչեւ անգամ ինքը նպաստում էր, որ կրօնափոխութիւնը տարածուի Հայերի մէջ, — բայց նա մի սխալանքից մի ուրիշ աւելի վատի մէջ ընկաւ, որ Հայերից կաթոլիկներ եւ բողոքականներ պատրաստելով, թէեւ մի կողմից քանդեց նրանց միութեան կապերը, բայց միւս կողմից իրան վնասեց, դրանով մի ճանապարհ բացելով կաթոլիկ եւ բողոքական պետութիւնների (Անգլիայի եւ Ֆրանսիայի) դիպլօմատիայի առջեւ միջամտութիւն գործելու իրանց հաւատակիցների գործերում։ Յիշեալ սխալանքի հետեւանքը բացայայտ երեւում է Բերլինի դաշնագրի վրայ։ Պարսկաստանը այդ մասին աւելի խելացի քաղաքականութեան է հետեւում. նա ամեն կերպով աշխատում է, բողոքականութիւնը եւ կաթոլիկութիւնը չը տարածուի իւր երկրում գտնուած քրիստոնեաների մէջ, Հայոց դպրոցներին պետական գանձից օժանդակութիւն տալով եւ Հայ եկեղեցականների իրաւունքները ու նրանց նշանակութիւնը բարձրացնելով, որ կարողանան օտարերկրեայ քարոզիչների հետ մրցութիւն անել։ Այդ մասին ինձ յայտնի են շատ փաստեր, որոնց յիշելը աւելորդ եմ համարում։ Եթէ Թիւրքեան խելքը գլուխը հաւաքէր, նոյնը պէտք է անէ այսուհետեւ, որովհետեւ դրանից աւելի կը շահուի։

Բայց մեզ շատ անգամ պատահել է լսել այսպիսի կարծիք. ի՞նչ ենք կորցնում, եթէ անգլիացին եւ ֆրանսիացին մեր կրօնը փոխելու համար կ՚սկսէին համակրել եւ պաշտպանել մեզ, ինչու օգուտ չը քաղենք այդ հանգամանքից։ Վասակները եւ Մեհրուժանները բոլորը այդ կարծիքի էին, բայց մեր ազգը սաստիկ պատժուեցաւ այդ

քաղաքականութեանը հետեւելով. — Կիլիկիայի մեր թագաւորութիւնը զոհ եղաւ այդ քաղաքականութեանը, երբ Հայերը իրանց սեփական ուժերը արհամարհելով, մտածեցին միանալ յունաց եկեղեցու հետ, որպէս զի Բիւզանդիայի կայսրութիւնից կամ պապից պաշտպանութիւն գտնեն։ Մեր պատմութիւնը լի է դրա նման շատ օրինակներով, որ միշտ կործանիչ հետեւանք են ունեցել։

Կրկնում ենք, շատ ցաւալի է տեսնել Թիւրքիայում կրօնի պատճառով Հայերի մի մասը անջատուած ազգային ամբողջութիւնից։ Բայց քանի որ դա պատմական կատարուած իրողութիւն է, ուրեմն պէտք է միաւորելու հնարներ որոնել եւ ոչ թէ բաժանող վիհը աւելի եւ աւելի լայնացնել։ Վէճը կարծիքների տարբերութեան մէջն է, թէ որպէս պէտք էր միաւորել։ Կրկին ազգասիրութեամբ քարոզել այն մաշուած թեման, թէ մենք մի կրօնական ժողովուրդ ենք, թէ մեր ազգութիւնը ճանաչվում է մեր եկեղեցով, թէ ով որ լուսաւորչական չէ, նա Հայ եւս համարուիլ չէ կարող եւ այլն, — այդ տեսակ քարոզներ գուցէ մի ժամանակ հարկաւոր լինէին, իսկ այժմ շատ եւ շատ հնացել են։ Այս տեսակ քարոզներով ոչինչ օգտուիլ չէ կարելի, ընդհակառակն վնասակար են այն կողմից, որ դրանցով աւելի առիթ կը տանք բողոքական եւ կաթոլիկ Հայերին բոլորովին անջատելու ազգային միութիւնից։ Թիւրքիայի Հայերի մէջ միութեան միակ հնարը այժմ այն է, ոչ թէ Հայրենի եկեղեցուց բաժանուած եղբայրներին կրկին դարձնել դէպի լուսաւորչի փարախը, այլ աշխատել նրանց մէջ տարածելու «ազգայնութեան» գաղափարը, թէ մի ազգի անդամները կարող էին այս եւ այն եկեղեցուն պատկանել, բայց դարձեալ մի ազգային ամբողջական մարմին կազմել, եւ ցրուած ուժերը մի տեղ

հաւաքելով, միասին գործել բռնութեան եւ հարստահարութեան դէմ, եւ միասին թօթափել այն անտանելի լուծը, որ ամենի վրայ մի եւ նոյն չափով ծանրացած է։

Ոմանք ասում են, այդ անհնարին է, Ասիայում, հայերի մէջ եկեղեցին կարող է լինել միաւորիչ յօդ. ազգայնութեան գաղափարը Եւրոպայում միայն ունի իւր ազդեցութիւնը, այնտեղ ամեն անհատ կարող է մինչեւ անգամ անհաւատ լինել, բայց մի ազգի պատկանել եւ այլն։ Խիստ կարճամիտ դատողութիւններ են։ Ինչ որ հնարաւոր է Եւրոպայի համար, այն եւ հնարաւոր է երկրագնդի ամեն մի ժողովրդի համար, զանազանութիւնը նրա մէջն է միայն, թէ եւրոպացին ինչ ճանապարհով հասաւ այն կէտին դու էլ նոյն ընթացքը բռնիր, քաղաքակրթութիւնը քեզ չի զլանայ այն բարիքը, ինչ որ բոլոր մարդկութեան սեփականութիւն է։ Մի՞թէ Եւրոպայի մէջ մի եւ նոյնը չէ՞ր մի քանի դար առաջ, ինչ որ այսօր հայերի մէջն ենք տեսնում, մի՞թէ եւրոպացիք նոյնպէս չէին շփոթում ազգութիւնը եկեղեցու հետ, իսկ այժմ ի՞նչպէս հասկացան, թէ ազգութիւնը եւ կրօնը որոշ գաղափարներ են։

Իմաստակութիւնը մեր մէջ թթուած ազգասիրութեան հետ ձեռք ձեռքի տուած է գնում։ Հայ կաթոլիկը եւ հայ բողոքականը անցեալ չունեն ասում են ոմանք, — լուսաւորչական հայերն միայն անցեալ ունեն, որովհետեւ պատմութիւնը նրանց է պատկանում։ Դրանից ատոր երեւակայական մտածութիւններ լինել չեն կարող։ Եթէ մեր անցեալը բովանդակում է միայն մեր եկեղեցու մէջ, ուրեմն էլ ի՞նչու ենք պարծենում Տրդատից եւ Լուսաւորչից առաջ եղող մեր հեթանոս Հայկով, Արամով, Տիգրաններով եւ այլն։ Ուրեմն մենք մեր պատմու-

թիւնը պէտք է սկսենք այն օրից, երբ լուսաւորչական եկեղեցին հիմնուեցաւ, եւ նրանից առաջ եղող մեր նախնիներին հայ չը համարենք, որովհետեւ կռապաշտներ էին եւ այդ եկեղեցուն չէին պատկանում։ Բայց մենք մի այսպիսի խտրութիւն չենք դնում պատմութեան մէջ։ Այլ եւս ի՞նչ իրաւունքով կարող ենք ասել կաթոլիկ եւ բողոքական հային, թէ դուք անցեալ չունէք, երբ նրանք էլ միեւնոյն ցեղի շարունակութիւնն են, — երբ Հայկը, Արամը, Տիգրանը, Տրդատը, Լուսաւորիչը, Վարդանը, Ներսէս մեծը եւ այլն, որքան լուսաւորչականներին են պատկանում, այնքան էլ պատկանում են հայ բողոքականներին եւ հայ կաթոլիկներին։ Ազգային պատմութիւնը, ազգային անցեալը ամբողջ ազգի սեփականութիւնն է, ինչ կրօնի եւ ինչ աղանդի պատկանելու լինէին նրա կազմող մասները։

Եթէ այսօր հայ բողոքականը եւ հայ կաթոլիկը իրանց հայ չեն համարում, այդ անկրթութեան հետեւանք է։ Մի՞թէ անկիրթ հայ լուսաւորչականը միեւնոյն աչքով չէ նայում նրանց վրայ. մի՞թէ նա բողոքականին եւ կաթոլիկին հայ է համարում։ Որպէս կաթոլիկը իրան ֆրանգ է կոչում, այնպէս էլ հայ լուսաւորչականը նրան ֆրանգ է կոչում։ — Այդ բոլորը առաջ է գալիս այն համոզմունքից, թէ ազգայնութիւնը պէտք է որոնել եկեղեցու մէջ։ Եւ այդ բոլորը կանհետանան այն ժամանակ, երբ ազգայնութեան գաղափարը կրթութեան միջոցով կընդհանրանայ ամեն մի անջատուած մասների մէջ։

Եւ Թիւրքիայի պետական մարդիկը շատ լաւ են հասկացել վերոյիշեալ հանգամանքները. “բաժանեա՛, զի տիրեսցես„ — ահա նրանց դեվիզը։ Մեզանից ամեն մէկը առհասարակ խիստ արհամարհական կարծիք ունի Թիւրքիայի մարդերի վրայ. նրանք թէեւ հանճարներ չեն,

Նրանք թէեւ մի-մի երեւելի աւազակներ են, որ կողոպտում են արքունի գանձը, եւ ամբողջ նահանգների ժողովուրդը վերջին թշուառութեան մէջ են ձգում, — բայց խորամանկութեան մէջ, դիւանագիտական խաբէյութեան մէջ եւ ընդհանրապէս մակիավելլիզմի մէջ անհամեմատ շնորհալի են։ Նրանք շատ լաւ են հասկանում պետութեան մէջ եղող բոլոր ցեղերի յարաբերութիւնները, նրանց ձգտումները, եւ եթէ վնասակարութեան մի փոքրիկ նշոյլ են տեսնում, գիտեն, թէ ինչ եղանակով պէտք էր կամ յարմար էր խեղդել նրանց ձգտումները, կամ բոլորովին ոչնչացնել։ Նրանք չեն արհամարհում օգուտ քաղել եւ ամենափոքր միջոցներից, որոնցով կարելի էր մի ցեղի մէջ երկպառակութիւն ձգել եւ նրա միութեան կապերը քանդել։ Նրանք վաղուց են հասկացել, թէ ինչ միջոցով կարելի է քայքայել հայ ժողովրդի ամբողջութիւնը, որ լուսաւորչական եկեղեցուց դուրս հայ չէ ճանաչում։ Եւ այդ է պատճառը, որ Թիւրքիայում կրօնափոխութիւնը այնպէս արագ քայլերով առաջ է գնում. որովհետեւ կառավարութիւնը ինքը նպաստում է։ Այս բոլորից յետոյ զարմանալի չէ տեսնել, որ հայկական խնդրին կից յարուցուեցաւ հասունեանների եւ հակահասունեանների դադարած կռիւը։

Կրօնական երկպառակութիւններին ուժ տալը եւ նրանց միջոցով զանազան միջոցով զանազան ցեղերի մէջ անմիաբանութիւն եւ անհաշտութիւն պահպանելը՝ — դա մի ժառանգական քաղաքագիտութիւն է, որ սեփականել է իրան մոնղոլական Թիւրքիան Բիւզանդիայի գահի հետ։ Միայն հայերի վերաբերութեամբ չէ վարվում նա այդպէս. նոյն երեւոյթները կրկնվում են նեստորական եւ նեստորականութիւնից բաժանուած ասորիների մէջ, քիւ-

դանիների մէջ, մարոնիտների մէջ, եակուբինների մէջ, ղպտիների մէջ, եւ առհասարակ բոլոր քրիստոնեայ ցեղերի մէջ: Ո՞վ չը գիտէ, թէ ամէն տարի, սուրբ յարութեան տօնի օրը Երուսաղէմում, սուրբ Յակոբայ տաճարի մէջ ինչ խայտառակ խռովութիւններ են պատահում հայոց, լատինական եւ յոյն աբեղաների մէջ: Եւ չը նայելով հայոց եւ յունաց պատրիարքարանների անդադար բողոքներին, մինչեւ այսօր Բ. Դուռը մի կարգ կամ սահման չը դրեց նրանց մէջ, եւ նրանց իւրաքանչիւր իրաւունքները չը որոշեց, որ աբեղաները ստիպուած չը լինէին ամեն տարի միմեանց գլուխը ջարդել:

Բ.

Մենք բաւական հեռացանք հարցից, երկար կանգնելով կրօնափոխութեան խնդրի վրայ: Ցոյց տալով, թէ մեր եւ տաճկաստանցոց մէջ ոչինչ կապեր կամ յարաբերութիւններ չը կան, եւ յայտնելով այն միտքը, թէ մենք պարտաւոր ենք օգնել նրանց, — գուցէ ընթերցողը սպասում էր, թէ մենք պէտք է ցոյց տանք որեւիցէ նոր կապեր, կամ մենք կասենք, թէ ինչով եւ ինչ բանի մէջ կարող էինք օգնել նրանց: Դրանց եւ ոչ մէկը մեր յօդուածի նպատակը չէ: Մենք պէտք է հետեւենք հմուտ բժշկի եղանակին, որ առաջ հետազօտում է հիւանդի կազմուածքը, ուսումնասիրում է նրա ամբողջ կեանքը, քննում է նրա ցաւերը, հասկանում է ցաւերի առաջ բերող պատճառները, իսկ յետոյ մտածում է դարմանների մասին: Մենք, որպէս սկզբում յայտնեցինք, դեռ ոչ բոլորովին ճանաչում ենք մեր տաճկաստանցի եղբայրներին, չը գիտենք ինչ բանի կարօտ են նրանք, եւ նրանց դրութիւնը իւր բոլոր կողմերով դեռ մեզ յայտնի չէ. ուրեմն

ինչ որ գրենք, ինչ որ մտածենք նրանց մասին, բոլորը կը լինեն թերի, միակողմանի եւ շատ անգամ անհիմն ենթադրութիւններ։ Պէտք է ունենալ ճիշդ տեղեկութիւններ։ Պէտք է մեզ հիմնուել խնդրի բարձր նշանակութեան վրայ եւ հասկանալ, որպէս հարկն է, նրանց պէտքերը, եւ ուսումնասիրել նրանց կեանքի եւ կացութեան բոլոր էական գծերը, նրանց տնտեսական վիճակը, անցեալ եւ ներկայ քաղաքական դրութիւնը եւ այլն։ Բաւական չեն միայն եղբայրական զգացմունքների արտայայտութիւնները կամ ազգասիրական դատարկ ցուցումներ, որ վերջանում են նրանով միայն, որ ողորմելի տաճկաստանցու համար օդեղէն ամրոցներ ենք ստեղծում, մինչդեռ նա իւր գլուխը դնելու եւ հանգչելու տեղ չունի։

Մեր մէջ պէտք է կազմուի փոխադարձ հասկացողութիւն։ Մենք դեռ չունենք ոչ մի օրինաւոր շարադրութիւն տաճկական Հայաստանի մասին։ Մի քանի հատուկտոր, չնչին, անիմաստ յօդուածներ ի՞նչ լոյս կարող էին ձգել նրանց կեանքի վրայ։ Մեզ պէտք են կատարեալ ժողովրդագրական (էտնօգրաֆիական) տեղեկութիւններ, հիմնուած փաստերի վրայ, ոչ միայն հայերի կեանքը ուսումնասիրելու համար, այլեւ թիւրքերի, քիւրդերի, չէրքեզների եւ բոլոր ցեղերի, որ այժմ Հայաստանում բնակուած են։ Մեզ պէտք են կատարեալ աշխարհագրական տեղեկութիւններ Հայաստանի ազգաբնակութեան, արդիւնաբերութեան, տեղագրութեան, ճանապարհների հաղորդակցութեան եւ նրա թէ բնական եւ թէ քաղաքական կեանքի մասին։ Մեզ պէտք են ճիշդ վիճագրական եւ տնտեսագիտական տեղեկութիւններ հայոց ազգաբնակութեան մասին առանձնապէս եւ օտար ցեղերի մասին ընդհանրապէս։ Մեզ պէտք են մինչեւ անգամ գիտենալ

Հայաստանում բնակւող ժողովրդների մէջ տիրող ոգին, նրանց բնաւորութիւնները, ուղղութիւնը, ձգտումները, կրօնական եւ քաղաքական զգացմունքները, մի խօսքով, նրանց բոլոր մտաւոր եւ հոգեբանական կողմը։

Կ. Պոլսի Հայոց մամուլը եւ նրանց գրականութիւնը չը տուեցին մեզ վերոյիշեալ տեղեկութիւններից եւ ոչ մէկը, ոչ իրանք ցանկացան ունենալ. — դրա մէջ պէտք է որոնել նրանց անյաջողութեան ամենամեծ պատճառը։ Թիւրքիայի գրական մարդիկը այն աստիճան անզարգացած եւ ծանրքէկ մարդիկ են (թէեւ, պէտք է խոստովանուել, որ մեր մէջ չը կան մեծ մարդիկ) որ մինչեւ անգամ չէին կարող մտածել, թէ ինչ պէտք է իրանց եւ ինչ բանի համար պէտք է գրել։ Տեղային սահմանափակ միջոցները չը կարողացան ստեղծել զօրաւոր տաղանդներ զօրաւոր գործերի համար, եւ մնալով տկար, նրանք չը կարողացան ծառայել ազգային գլխաւոր պահանջներին, — նրա փրկութեանը օտարի ճնշող ներգործութիւնից։ Իսկ մեր մէջ թէեւ չը կան զօրաւոր տաղանդներ, բայց կան զարգացած մարդիկ, որոնք կարող են աւելի նպատակայարմար եւ հիմնաւոր կերպով գործել, քան թէ Կ. Պոլսեցիք։

Բայց կան եւ մարդիկ, որ այսպէս են մտածում. Թողէք տաճկաստանցիներին հանգիստ մնալ, մի պղտորէք նրանց միտքը, նրանք աւելի լաւ են հասկանում իրանց գործը, „մենք մեծ յոյսեր ունենք նրանցից“ եւայլն։ Երանի թէ գիտենայինք, ինչ բանի վրայ են հիմնուած այդ յոյսերը։ Այս տեսակ խօսքերով կարելի է ամբողջ գրքեր գրել, միայն թէ ցանկութիւն լինէր անիմաստ բառեր շարել։ Եւ զարմանալին այն է, որ այդ պառաւախօս իմաստակները համարձակւում են մի ամբողջ ընկած ժողովրդի „գեղեցիկ“ ապագան նախագուշակել դատարկ յոյսերով

միայն, առանց նրան ճանաչելու, առանց նրա ներկայ դրութիւնը հասկանալու։ Դրանք նմանում են այն Եղջրամուր+ կոչուած պառաւներին, որ հրաւիրվում են դիակների վրայ երգ երգելու. նրանց համար միեւնոյն է, թէ ով էր, ինչ տեսակ մարդ էր հանգուցեալը, կարող են նրան մինչեւ անգամ չը ճանաչել, կարող է նա բոլորովին ոչինչ մարդ լինել, — բայց նրանք միշտ իրանց սովորական երգն են երգում, գովասանում են նրա չը գործած սխրագործութիւնները, նրա առաքինութիւնը, գութ եւ ափսոսանք են շարժում, որովհետեւ դրա համար վարձ են ստանում։

Միշտ յոյս եւ յոյս, — այդ է իմաստակների խօսքը, թէեւ դատարկ յոյսը առանց գործի ոչ մի նպատակի չէ հասցնում։ Անշարժութեան այդ վարդապետները, ես հաւատացած եմ, կը ցանկանային, որ ամբողջ մարդկութիւնը մումիաներ լինէին եւ երբէք չը փոխուէին, փոյթ չէ, եթէ նրանց մէջ կեանք չէր լինի։

Ոչ, մենք պէտք է խօսենք, պէտք է մտածենք մեր տաճկաստանցի եղբայրների մասին. պէտք է քննենք նրանց եւ բոլորը կրիտիկական խստութեամբ քննենք։ Քանի որ կատարելապէս չենք ուսումնասիրել, քանի որ չունենք եւ չենք աշխատի ունենալ նրանց դրութեան մասին ճիշդ եւ մանրամասն տեղեկութիւններ, — մեր բոլոր ջանքը, մեր բոլոր աշխատութիւնը նրանց օգնելու մասին ապարդիւն կը լինի։ Կանգնել հեռու, չը մտնել գործի մէջ, չը տեղեկանալ մի ժողովրդի իսկական պահանջները եւ միայն ստեղծել իւր գլխում իդէալական ցնորքներ, — այդ բոլորը հրապուրիչ բաներ են, բայց խաբուսիկ են։ Կաբինետի երեւակայութիւնները ինքն իրան ոչնչանում են, երբ զարկվում են իրականութեան հետ։

Կրկնում ենք, մեր եւ տաճկաստանցի եղբայրների մէջ մինչեւ այսօր ոչ մի ամուր կապ չէ եղել եւ չը կայ։ Պատճառները բացատրենք։ Եւ այն ժամանակ կը կազմուի մեր մէջ փոխադարձ յարաբերութեան կապ, երբ կը լինի մտքի փոխանակութիւն, որին պէտք է ծառայէ իսկապէս մամուլը եւ գրականութիւնը։ — Գրականական հաղորդակցութիւնը կունենար եւ այն օգուտը, որ կը ստեղծէր մեր ընդհանուր գրականական լեզու, եւ այդ ամենակարեւոր մի գործ է, որովհետեւ բազմաբարբառութիւնը, թէեւ մի կողմից կազմում է լեզուի հարստութիւն, բայց միւս կողմից, թուլացնում է, անջատում է գրականութեան կրթողական ուժը եւ դժուարացնում է միեւնոյն ազգի մէջ տոհմային յարաբերութիւնները։

Տաճկաստանի մեր հայ եղբայրները կարօտ են օգնութեան, կարօտ են, որովհետեւ անկիրթ են, կարօտ են որովհետեւ աղքատ են, — անկրթութիւնը եւ աղքատութիւնը երկուսն էլ մեծ արգելք են լինում ժողովրդի յառաջադիմութեան։ Ամեն հայի պարտքն է օգնել նրանց, իսկ մեծ պարտաւորութիւնը հասնում է Ռուսաստանի հայերին։ Մենք մեծ նշանակութիւն չենք տալիս այն ժամանաւոր նուիրատուութիւններին, որ լինում են Տաճկաստանի այս եւ այն ընկերութեան անունով. որովհետեւ չը գիտենք, թէ որքան այն ընկերութիւնների նշանակութիւնը նպատակայարմար էր, թէեւ չենք կարող ուրանալ եւ մեր ժողովրդի գովելի ջանքը, որ աշխատում է գոնեա այդքանով նպաստել մեր կարօտեալ եղբայրներին։

Բայց ցաւալի է խոստովանուել, որ մեր տաճկաստանցի եղբայրների վերաբերութեամբ այն օժանդակու-

թիւնը, որ արեց եւ անում է մեր ժողովուրդը, այն աստիճան աննշան եւ անբաւականացուցիչ պէտք է համարել, որ մինչեւ անգամ յիշելու արժանաւորութիւն չունի։ Մեր հարուստները համարեա չը մասնակցեցին, ժողովրդի այդ մասը, որի սրտի մէջ սառել է ազգային ամեն զգացմունք, որ իւր քէֆի եւ փառքի համար ահագին գումարներ է վատնում, — հարուստները, խիստ մասնաւոր բացառութեամբ, Տաճկաստանի կարօտեալների համար ոչինչ չը նուիրեցին։ Մեր հոգեւորականութիւնը, միայն իւր շահերի եւ քսակի համար մտածող հոգեւորականութիւնը, բոլորովին անտարբեր մնաց, եւ որպէս սկզբում հայկական խնդիրը զարթնելու ժամանակ լռութիւն պահեց, այնպէս էլ նիւթապէս օգնելու գործի մէջ նա սառնասիրտ յամառութեամբ պահպանեց իւր անկարեկցութիւնը։ Մեր արիստօկրատիան եւ այսպէս անուանուած չինովնիկ հասարակութիւնը, ոչ սակաւ սառնասիրտ գտնուեցան քան հարուստ եւ հարստահարող վաճառականը եւ քան ամեն բարի ձգտումներ խեղդող հոգեւորականութիւնը։ Մի կէտ, որ աչքի է զարկում եւ որ աւելի մխիթարական էր, այն էր, որ Տաճկաստանի մեր կարօտեալ ազգայինների հառաչանքը արձագանք գտաւ, մեր ժողովրդի ստոր դասի մէջ։ — չքաւոր գիւղացին, օրական աշխատանքով ապրող գործակատարը, փոքրիկ քաղաքների մանրավաճառները, եւ միշտ դրպանը դատարկ գիմնազիստը բաժանեցին իրանց սուղ միջոցներից մի փոքրիկ մասն այն եղբայրների համար, որ աւելի կարօտութեան մէջ էին, քան թէ իրանք։

Ի՞նչից առաջ եկած պէտք է համարել մեր սառնասրտութիւնը դէպի մեր արենակից եղբայրները եւ ինչու պէտք է մենք այս աստիճան անկարեկից գտնուէինք։ Մենք

ուրիշ պատճառ չենք ճանաչում, բայց միայն այն, որ ինչպէս ցոյց տուեցինք մեր յօդուածի առաջին գլխում, մեր եւ տաճկաստանցիների մէջ հէնց առաջուց չէ եղել եւ չը կար որեւիցէ սերտ կապ, մենք կտրուած էինք միմեանցից եւ այդ անջատման վիճակի մէջ մեր փոխադարձ համազգացութիւնը սառել եւ իսպառ օտարացման էր հասել։ Ծագեց ռուս-թիւրքական վերջին պատերազմը, լսեցինք, կարդացինք մեր եղբայրների դառն թշուառութիւնները, եւ գտնուեցան դեռ ոչ բոլորովին մեռած սրտեր, որոնց գութը շարժուեցաւ, ոգեւորուեցան, եւ մտածեցին օգնութեան ձեռք հասցնել։ Բայց որովհետեւ այդ ոգեւորութիւնը րոպէական էր եւ առաջ էր եկել իրերի ժամանակաւոր երեւոյթներից, ուրեմն եւ չէր կարող լինել տեւողական, չէր կարող հիմնաւոր, այլ շարժառիթ պատճառների անհետանալու հետ անհետանար եւ ոգեւորութիւնը։ Այսպէս էլ եղաւ եւ լինում է։ Սկզբում մենք խիստ յաճախ կարդում էինք “Մշակի„ թերթերի մէջ նուիրատուութիւնների ցուցակներ “Արարատեան ընկերութեան„ համար, իսկ այժմ նուիրատուութիւնները հետզհետէ նուազում են, եւ շատ չի անցնի, որ գուցէ իսպառ կը դադարեն։

Մի ժողովրդի ոգեւորութիւնը պահպանելու համար դէպի մի բարի գործ պէտք են ազդու միջոցներ եւ եռանդոտ աշխատութիւն, ոչ միայն նրա համար, որ դրդեն հասարակութեանը նիւթապէս նպաստամատոյց լինել գործին, — այլ գլխաւորապէս նրա համար, որ հասկացնեն, թէ նրանք կատարում են սրբազան պարտաւորութիւն։ “Մշակի„ մէջ մի քանի անգամ յայտնուեցաւ այն միտքը, թէ պէտք է մեր մէջ կազմուի մի յանձնաժողով, որ հոգ տանէ տաճկաստանցոց համար նուիրատուութիւններ հաւա-

քել տեղային նոր բացուած դպրոցներին եւ առհասարակ կրթութեան տարածմանը նպաստելու նպատակով։ Բոլորովին համակրելով յիշեալ միտքը, եւ կրկին դառնալով մեր վերեւում յայտնած նկատողութիւններին, թէ մեզ պէտք են նախ եւ առաջ հիմնաւոր տեղեկութիւններ եւ ճիշտ հետազօտութիւն մեր տաճկաստանցի եղբայրների դրութեան եւ նրանց պէտքերի ու կարօտութիւնների մասին, — կաւելացնենք, որ մի այդպիսի յանձնաժողովի նպատակը խիստ սահմանափակ կը լինէր, եթէ նա ուշադրութիւն դարձնէր մի միայն նիւթական օժանդակութեան վրայ։ Որովհետեւ նախ քան օգնելը պէտք է հասկանալ, թէ ինչ բանի մէջ նրանք աւելի կարօտութիւն ունեն, պէտք է հասկանալ նրանց անհրաժեշտ պահանջները, մի խօսքով նրանց այն ցաւերը, որ շուտափոյթ դարմանելու կարօտ են։ Իսկ այդ բոլորը ուրիշ կերպ կարող չէ լինել, բացի կատարելապէս ծանօթանալուց նրանց վիճակի հետ։ Բայց տեղեկութիւնները մեզ մօտ խիստ պակաս են։

Գուցէ ոմանք կը նկատեն, թէ այդ մեր գործը չէ, մենք փողը կը հաւաքենք, կը տանք նրանց ձեռքը, նրանք իրանց պէտքերը շատ լաւ են հասկանում, թող ինչ հիմնարկութեան համար ցանկանում են, գործ դնեն փողերը։ Մենք մեզ սխալուած կը համարենք, եթէ յայտնէինք այն միտքը, թէ պէտք է նրանց ձեռնարկութիւնների մէջ մենք եւս միջամտութիւն գործենք, կամ փող տալով, մեզ նրանց գլխին հոգաբարձու կանգնեցնենք, — այդ մտքերը հեռու են մեր նպատակից։ Բայց չենք կարող թագցնել եւ մեր կասկածանքը, թէ մեր տաճկաստանցի եղբայրների գործող մասը այնպէս հիմնաւոր կերպով ուսումնասիրած լինէր ժողովրդի պէտքերը, որպէս հարկն է։

Միայն ուսումնարան, միայն գիր-կարդալ, միայն այբբենով չէ կարելի մի ընկած ժողովուրդ վերականգնել. դրա համար պէտք են ուրիշ զանազան հնարներ, որոնք կրթութեան հետ պէտք է զուգնթացաբար յառաջ գնային: Այլ եւս չենք խօսում այն բանի վրայ, որ մեր Տաճկաստանցի գործիչները, երեխայական ոգեւորութեամբ, միշտ սովոր են եղել մանր եւ մինչեւ անգամ չնչին գործերի համար մեծ աղմուկ բարձրացնել . . . . :

Մեր կարծիքով, պէտք է սկսել մի հիմնաւոր գործ, եւ փոխանակ ցրուելու, մասնաւորացնելու ուժերը, հաւաքել, կենդրոնացնել նրանց մի ամբողջութեան մէջ եւ խմբովին գործել: Դա ուրիշ կերպ լինել կարող չէր, բայց միայն երբ Ռուսաստանի հայերից կը կազմուէր մի յանձնաժողով գլխաւորապէս բարեգործական նպատակով օգնելու մեր տաճկաստանցի եղբայրների կարօտութիւններին: Ահա այդ յանձնաժողովը կարող էր ձեռք բերել Տաճկաստանի մասին այն տեղեկութիւնները, որոնց մասին վերեւում խօսեցինք: Նա կարող էր գործին հմուտ ճանապարհորդներ ուղարկել Թիւրքիայում հայերի դրութիւնը ուսումնասիրելու, եւ հրատարակել ոչ միայն հայերէն լեզուով, այլ զանազան լեզուներով, նա կարող էր մինչեւ այսօր հրատարակուած հատուկտոր տեղեկութիւնները հաւաքել, ամբողջացնել, եւ նոյնպէս առանձին գրքերով եւ թարգմանութիւններով հրատարակել: Մի այսպիսի յանձնաժողովը բացի նիւթապէս եւ բարոյապէս օգնելուց, ուրիշ շատ օգնութիւններ կարող էր անել, որոնց վրայ հարկ չենք համարում խօսել. — այս էլ բաւական է, որ նա ծանօթացնէր տաճկական Հայաստանի դրութիւնը ոչ միայն մեզ՝ Ռուսաստանի հայերիս, այլ բոլոր լուսաւոր

աշխարհին։ Այն ժամանակ մենք հաստատ կերպով կը գիտենայինք, թէ ինչ կարողութիւն ունին նրանք եւ ինչ բանի մէջ պէտք է օգնել[1]։

Ժողովուրդների վիճակը յանկարծ չէ յեղափոխվում, մի օրուայ մէջ չէ բարւոքվում, այն նախապատրաստու-թիւնը սկսվում է դուցէ դարերով առաջ, իսկ յարմար ժամանակը նրան իրագործում է։ Տաճկաստանցիք նախա-պատրաստուած չէին ժամանակից մեծ օգուտ քաղելու, եւ այս պատճառով չը հասան իրանց նպատակին, թէեւ ոմանք Բերլինի վճռի 61րդ յօդուածի մէջ ոսկու հանք են տեսնում։ Այդ հանքը մեզ շատ չէ շլացնում։ Այս եւ այն յօդուածը, մանաւանդ երբ նա ֆորմի համար գրուած է լինում, մի ժողովրդի վերածնելութեան վերա-բերութեամբ այնքան նշանակութիւն ունի, որքան մեռած բեցեպտը հիւանդի առողջութեան համար, երբ դեղերը չեն գործադրվում։

Մենք մէկ հանք ենք ճանաչում, որից կարելի է ստանալ ցանկացած ոսկին, եթէ այդ հանքը անդադար եւ անընդհատ կերպով կը բովագործուէր. — դա կոչվում է նախապատրաստութիւն։ Եւ Տաճկաստանի հայոց խնդիրը պէտք է կայանայ այսուհետեւ անդադար եւ անընդհատ նախապատրաստութեան գործի մէջ, որպէս զի նրանք կազմ եւ պատրաստ հանդիպեն այն մեծ օրուանը, երբ կրկին անգամ կը զարկէ ազատութեան ժամը։ Իսկ այդ օրը կը կրկնուի, եւ շատ անգամ կը կրկնուի . . . դուցէ շատ հեռու չէ մեզանից . . .

---

[1] Վաղուց լսել ենք, թէ մեր ռուսաստանցի հարուստներից մէկը ցանկութիւն ունէր տալ. Հայաստանում հիմնել մի բարձր դպրոց եւ այդ նպատակով վարժապետներ էր պատրաստում, եթէ ճիշդ է այդ. արդեօք ո՞ր օրուայ համար է պահել նա իւր դպրոցը եւ վարժապետները . . .։

Տառերը դժգոհութեամբ խօսում են. — «արեւե-լեան խնդիրը այս անգամ էլ չը վերջացաւ . . .» — «ա՜խ, երբ պէտք է վերջանայ այդ արեւելեան խնդիրը...:» Խիստ միամիտ խօսքեր են դրանք։ Արեւելեան խնդիրը Եւրոպայի կենսական խնդիրն է։ Կեանքի խնդիրները չեն վերջանում, այլ ժամանակաւորապէս պայմանաւորվում են։ Ամբողջ հայոց ազգի մտածողների մէջ ես միայն մի մարդ եմ ճանաչում, որ իսկապէս հասկացել էր, թէ ինչ է նշանակում արեւելեան խնդիր, եւ հասկացել էր այն ժամանակ, երբ այդ դիպլոմատիկական տերմինը դեռ մեզանից շատերին ծանօթ չէր։ Միթէ արեւելեան խնդիրը կարո՞ղ է վերջանալ — ոչ, նա կը մնայ անվախճան, որքան ինքը արեւելքը յաւիտենական է։ Դա մի պատ-մական խնդիր է եւ պիտի ձգուի ազգերի պատմութեան հետ։ Մի ժամանակ արեւելքից ազգերը հեղեղի հոսանքով թափվում էին Եւրոպան կողոպտելու համար։ Այժմ դերերը փոխուել են։ Այսուհետեւ Եւրոպայից պիտի հոսեն դէպի արեւելք Ասիայի հարստութիւնից օգուտ քաղելու։ Եւ ամեն մի հոսանք կը յարուցանէ մի նոր արեւելեան խնդիր։ Այսօր ռուսը եւ անգլիացին արեւել-քում շահեր ունեն եւ մրցում են միմեանց հետ։ Յետոյ կ'սկսէ գերմանացին, ֆրանսիացին եւ միւսները։ Ամեն մի Եւրոպական պետութիւն աճելով, սեղմուելով իւր երկրի նեղ սահմանների մէջ, եւ սպառելով նրա հարստութիւն-ները, պէտք է դիմէ դէպի արեւելք ապրուստ որոնելու։ Եւ ամեն մի նոր արշաւանք կամ գաղթականութիւն կը յարուցանեն մի նոր արեւելեան խնդիր։ Եթէ մինչեւ այսօր եւրոպական ազգերի հոսանքը դէպի արեւելք թոյլ էր գնում, այդ մասին պէտք է շնորհակալ լինել Ամերիկային, որի յայտնուիլը մի քանի դար թուլացրուց եւրոպացի-

ների հոսանքը դէպի Ասիա. Իսկ այժմ Ամերիկան էլ լծուելու վրայ է։ — Ուրեմն արեւելեան խնդիրը միշտ կայ ու կը մնայ, եւ տաճկաստանցի Հայը պէտք է նախապատրաստուի օգուտ քաղել յարմար դէպքից, երբ միւս անգամ կը յուզուի նա։

Իսկ եթէ նա միշտ անպատրաստ կը մնա՞յ։

Այն ժամանակ դժբախտ Հայաստանը — այդ Եւրոպայի եւ Ասիայի պատմական կամուրջը — ազգերի անցու-դարձի ներքոյ կը տրորուի եւ կը ոչնչանայ . . .

## ՏԵՂԵԿԱԳԻՐՔ

### ԳԱՒԱՌԱԿԱՆ ՀԱՐՍՏԱՀԱՐՈՒԹԵԱՆՑ Կ. ՊՈԼԻՍ 1876 Թ.

(*Պաշտօնական հրատարակութիւնք ազգային պատրիարքարանի։*)

---

*Անցեալ տարուայ վերջին ամիսներում Կ. Պոլսում հրատարակուեցաւ յիշեալ վերնագրով մի գրքոյկ, որ բովանդակում է իւր մէջ Ասիական Տաճկաստանի հայ ազգաբնակութեան վերաբերութեամբ կատարուած գաւառական հարստահարութիւնները։ Դա մի պաշտօնական հրատարակութիւն է, որ դուրս է բերուած Կ. Պոլսի պատրիարքարանի արձանագրութիւններից եւ 1876 ամի սեպտեմբերի ներկայացրած է տեղային Ազգային ժողովին։*

*Վարագոյրը բարձրացաւ, այժմ մենք գիտենք, թէ ինչ է կատարւում բեմի վրայ . . .*

*Մինչեւ այսօր մենք խիստ աննշան տեղեկութիւններ ունէինք Կ. Պոլսի պատրիարքարանի, այլ խօսքով, ազգային սահմանադրութեան գործունէութեան վրայ։ Մինչեւ այսօր մենք համարեա չը գիտէինք թէ Կ. Պոլսի հայոց ազգային վարչութիւնն որ աստիճան նշանակութիւն ունի Բ. Դրան առջեւ, եւ որ աստիճան ձեռնհաս է նպաստելու արտապոլսական գաւառացիների գործերին։ — Յիշեալ 'տեղեկագիրքը„ տալիս է մեզ թէեւ շատ տխուր, բայց հետաքրքրական տեղեկութիւններ։*

*"Տեղեկագիրքը„ բաժանուած է երկու մասն։ Առաջին մասը պարունակում է իւր մէջ գաւառական հարստա-*

հարութիւնների ամբողջ 20 տարուայ արձանագրութիւնների հաւաքածուն եւ ունի այսպիսի վերնագիր՝ “Ա. Տեղեկագիր գաւառական հարստահարութեանց առ Բ. Դուռն յանուն ազգային ժողովոյ ի 11 ապրիլի 1872։„ Տեղեկագիրը ունի կնիք եւ ստորագրութիւն այս անունով՝ պատրիարք Կ. Պոլսի Մկրտիչ արքեպիսկոպոս Խրիմեան։

Յիշեալ տեղեկագրի բովանդակած խնդիրները, որպէս ասացինք, դուրս են բերուած պատրիարքարանի 20 տարուայ արձանագրութիւններից եւ հասնում են մինչեւ 1872 ամի ապրիլի 11ը։ Իսկ երկրորդ տեղեկագիրը ունի այսպիսի վերնագիր. “Երկ. Տեղեկագիր գաւառական հարստահարութեանց ի խորհրդարանական յանձնախմբէ առ Ազգային ժողովն։„ — Դա պարունակում է իւր մէջ 1872 թուից սկսեալ մինչեւ 1876 սեպտեմբերի 1ը, այսինքն 5 տարուայ ընթացքում կատարուած հարստահարութիւնների արձանագրութիւնները։ Ասել է թէ, ամբողջ տեղեկագիրը ներկայացնում է պատրիարքարանի 25 տարուայ գործունէութիւնը։ Թէ ի՞նչ չափով եւ ո՞րքան թուով բողոքներ է ստացել պատրիարքարանը գաւառներից այս 25 տարուայ ընթացքում, յայտնի չէ. յայտնի է միայն, որ 57 զանազան խնդիրների մասին նա պաշտօնական բանակցութիւն է ունեցել Բ. Դրան հետ։ Դա շատ փոքր թուանշան է, ի նկատի ունենալով այն բազմաթիւ անիրաւութիւնները, որ կատարվում են ասիական Տաճկաստանում, այն եւս 25 տարուայ ընթացքում։

Ընթերցողին փոքր ինչ գաղափար տալու համար թէ ինչպիսի հարստահարութիւններ են կատարվում ասիական Տաճկաստանում, հարկաւոր ենք համարում ծանօթացնել թէ առաջին եւ թէ երկրորդ տեղեկագրի բովանդակութեան հետ։

Առաջին տեղեկագիրը պարունակում է իւր մէջ հետեւեալ խնդիրները։

1. Օրէնք եւ արդարութիւն գործ դնելու մէջ գաւառական պաշտօնակալները ընդհանրապէս անփոյթ եւ անտարբեր են մնում։ Եւ իրանց կամայականութեանը հետեւելով, իրանց հաճոյքի համեմատ զեղծանում են բարձրագոյն հրամանագրները հարստահարութիւնները բառնալու եւ հարստահարիչները պատժելու մասին։

2. Գաւառական Արքունի ժողովները Թէշքիլաթի[1] օրէնքով կազմուելով, չար եւ շահախնդիր անձանց մենավաճառութեան ասպարէզ են դառնում։

3. Գաւառացի հայը, մահմետականների մոլեռանդութեան ենթակայ լինելով, միշտ նախատինքի թշնամանաց եւ անպատուութեան առարկայ է դառնում։

4. Արքունի շինուածքների համար հայերին ձրի աշխատեցնում են, եւ ով որ աշխատելու անկարող է, դրամական անիրաւ պահանջմունքի են ենթարկում։

5. Ճանապարհների շինութեան համար հայերին նոյնպէս ձրի աշխատեցնում են, եւ կամ այս պատրուակով նրանց կեղեքում են։

6. Կապառուները (մուլթէզիմ) փոխանակ բերքի տասանորդը ստանալու, բռնադատելով, նրա տեղը զուտ արծաթ են առնում։

7. Նմանապէս իւր ընտանիքի ուտեստի համար տան պարտէզի մշակած բերքից ստիպեցնում են տասանորդ վճարել։

[1] Մի տեսակ դատարանի կազմակերպութիւն խառն մահմետականներից եւ ոչ մահմետականներից կոչվում է Թէշքիլաթ, ուր իսկապէս ոչ-մահմետականները միայն ձեւի համար ընտրուած կամ կոչուած են լինում։

8. *Բերքից ստացած տասանորդը գիւղացիներին ստիպեցնում են կապալառուի շտեմարանը փոխադրել:*

9. *Կապալառուն դիտմամբ իւր ժամանակին չը գալու համար, բերքը անձրեւի տակ մնալով՝ փտում է (որովհետեւ գիւղացին իրաւունք չունի վեր առնել առանց տասանորդը վճարելու): Եւ յետոյ փտած բերքի տասանորդի փոխարէն ողջի արժէքով զուտ արծաթ է առնում:*

10. *Գիւղացին պարտաւորվում է կապալառուին եւ նրա գործակալներին իւր տան մէջ հիւրասիրել եւ ձրիաբար կերակրել:*

11. *Կապալառուները, երբեմն եզների լուծերի վրայ հաշուելով, տասանորդի անունով ապօրէն եւ աւելորդ ցորեան են առնում գիւղացիներից:*

12. *Բացի կապալառուների յիշեալ հարստահարութիւններից, գաւառացի հայերին բռնաբարում են վճարել մշակութիւնների համար շահնալըգ եւ օլչէք-հաքքը կոչուած աւելորդ տուրքերը*[1]:

13. *Զինուորական տուրքից՝ մեռնողների, գաղ-*

---

[1] *Գիւղացի հայերի գլխաւոր հարստահարիչները լինում են կապալառուները: Որովհետեւ գաւառական պաշտօնականները մշակութեանց բերքերի տասանորդի վճարը կապալով են տալիս ըստ մեծի մասին իրանց բարեկամներին կամ մերձաւոր մէկին, եւ իրանք գաղտնի կերպով նրանց հետ ընկերանում են: Երբ որ բերքը ծախվում է, լաւ գին ունի, կապալառուն տասանորդը ստանում է առաւելութիւնով, իսկ երբ որ բերքը գին չունի, նա թանգ գնահատելով, փողն է ստանում, որ ամենեւին իրաւունք չունի: Բայց գիւղացին ստիպուած է խոնարհուիլ կապալառուի բռնութեանը, որովհետեւ եթէ հակառակուի, կապալառուն նրա մշակութեան կալը երեսի վրայ կը թողնի, ձիւնի եւ անձրեւի տակ կը փտեցնէ, այն ժամանակ աւելի իրաւունք կը ստանայ տասանորդի կրկնակի արժէքը արծաթով առնելու, որովհետեւ բերքը փչացած է: Եւ տեղային կառավարութիւնը համբերում է կապալառուի բռնակալութեանը, որովհետեւ ինքն էլ նրա շահերին ընկեր է: — Իսկ օլչէք-հաքքը նշանակում է չափելու վարձ, շահնալըգ նշանակում է արքունական:*

թողների եւ փախստականների մասը՝ հարկադրում են մնացողներին վճարել[1]։

14. Կալուածական եւ քաղաքական տուրքերի անդադար բաշխման պատճառով մահմետականների բեռը հայերն են կրում։

15. Տուրքերի վճարման պատճառով՝ տնային անհրաժեշտ կահ-կարասին, — երկրագործական պարագայքը եւ մինչեւ անգամ բանւոր անասունները — ծախելու են ստիպում, եւ ոստիկանութեան ձեռքով ծեծելու, բանտ դնելու խստութիւններին են ենթարկում չքաւոր ժողովուրդը։

16. Անիկները եւ չափահաս մանուկները բռնաբարվում են մահմետական կրօնը ընդունելու։

17. Ոչ-մահմետականների վկայութիւնը չընդունուելով, մահմետականների հայերի վերաբերութեամբ կատարած առեւանգութիւններն, գողութիւններն եւ սպանութիւններն մնում են անպատիժ։

---

[1] Տաճկաստանում հայերը որովհետեւ զինուոր չեն տալիս, նրա փոխարէն վճարում են մի տուրք, որ կոչվում է բէդէլ (փոխարէն)։ Այս տուրքը որոշուել է ստանալ հետեւեալ եղանակով. — 180 արու անձանց վրայ մի զինուոր հաշուելով, նրա փոխարէն պէտք է ստացուի զուտ փող 5000 ղուրուշ (300 րուբլի)։ Այս վճարին մասնակից լինելու բաշխումից ազատ պէտք է մնան՝ 15 տարեկանից ցած եւ 75 տարեկանից վեր անձինք, նաեւ կղերականներն, աղքատ ու բոլորովին անկարող մարդիկը, եւ այն անձինքը, որ անյայտացած են։ Բայց տէրութեան հարկահանները, յիշեալ բացառութիւնները ամենեւին նկատի չառնելով, եւ իրանց կամայականութիւնը միայն գործ դնելով, ժողովրդին տուժել են տալիս, որքան եւ կարողանում են։ Թողեալ այդ, մահմետականը, որ զինուոր է տալիս, վայելում է այդ մասին ինչ — ինչ բացառիկ արտօնութիւններ եւ առանձնաշնորհութիւններ։ Բայց հայը, որ զինուորի փոխարէն արծաթ է վճարում, զուրկ է այն արտօնութիւններից, որ ունի զինուոր տուող մահմետականը։ Եւ ի նկատի ունելով այնքան բազմաթիւ գաղթականները տաճկական տաճկաստանից, հասկանալի է, թէ որքան կը ծանրանայ մնացած ժողովրդի վրայ զինուորական տուրքը. որովհետեւ դա ստացվում է ազգահամարի հաշուով։

18. *Զինեալ գործերի, լեռնաբնակ ցեղերի, չէրքէզների եւ բնիկ Թուրք դէրէբէյիների (ինքնիշխան բռնակալ) այլ եւ այլ հարստահարութիւնների ներքոյ հայ ժողովուրդը տանջվում է եւ կեղեքվում։*

19. *Կիները, հարսները, այլ եւ կոյս աղջիկներ առեւանգուելով բռնաբարվում են։*

*Ահա սրանք են առաջին տեղեկագրի խնդիրներն, որ մինչեւ* 1872 *թուականը ամբողջ* 20 *տարուայ ընթացքում Պատրիարքարանի եւ Բարձ-Դրան մէջ պաշտօնական բանակցութեան նիւթ են դարձած եղել։ Բայց Դուռը ի՞նչ հոգացողութիւններ է արել հարստահարութիւնները բառնալու համար։*

*Այս մասին մենք առաջ կը բերենք յանձնաժողովի նկատողութիւնը, որ պատրիարքարանի արձանագրութիւններից առնելով, հաղորդում է ազգային ժողովին. "Յիշեալ տեղեկագրի մատուցած թուականէն ի վեր* (11 *ապրիլ* 1872) *հարստահարութեանց համար պատրիարքարանէն գրուած Թագրիրներն (թղթագիր) ալ, ինչպէս կերեւին ձեր յանձնախմբի պատրաստած հաւաքածոյէն, կամ բաթթալ ըլլալով (առանց հետեւանքի թողնելով, ոչնչանելով) կամ անպատասխանի թողնուելով, եւ իսթիլամի*[1] *ապարդիւն դրութեամբ յետաձգուելով, եւ առ առաւելն կենդրոնական Կառավարութենէն առ գաւառականս ուղղեալ հրա-*

---

[1] Գաւառական հարստահարութեանց մասին մատուցած մի թղթը շատ անգամ Բարձ. Դուռը դարձնում է նոյն գաւառի կամ նահանգի կառավարչին ստուգելու կամ վերաքննելու համար, դա մի խորամանկ ձեռնարկութիւն է թղթաբերկուները ստելու համար։ Որովհետեւ երբէք գաւառական կառավարիչները չեն ցանկանայ արդարացնել թղթաքողներին այն մեղադրանքների մէջ, ուր իրանք դատաւորներն շատ անգամ խառն են լինում։ Իսթիլամը մի այսպիսի բան է։ Նա կատարվում է առաւելապէս գործը երկարացնելու եւ վերջապէս մոռացութեան անդունդի մէջ ձգելու համար

հանգաց անգործադրելի մնալովը՝ մոռացութեան մէջ թողուած են, առանց դարման տանելու ժողովրդեան կրած տառապանաց։„

Յանձնաժողովի այն նկատողութիւնը մեր լեզուով կը պարզենք այսպէս. — Մինչեւ 1872 թուականը 20 տարուայ ընթացքում, պատրիարքարանը գաւառներից զանազան տեսակ հարստահարութիւնների մասին գանգատներ է ստանում, եւ իւր բողոքագրերով (թագրիրներով) հաղորդում է Բարձ. Դրանը եւ բաւականութիւն է խնդրում, բարձր Դուռը պատրիարքարանի բողոքները կամ թողնում է առանց հետեւանքի, կամ պատասխանի չէ արժանացնում, կամ եթէ ընդունում է եւ իւր կողմից հրամաններ է գրում, այն ժամանակ գաւառական պաշտօնակալներն բարձրագոյն հրամանագրերը թողնում են առանց հետեւանքի։ Եւ այսպէս, ժողովրդի վիճակը միշտ մնում է թշուառութեան մէջ. . . ։ եւ պատրիարքարանի բողոքներից ոչ մէկը իւր նպատակին չէ հասնում. . . .

Տաճկաստանի ներկայ տագնապի մէջ շատերի հետաքրքրութիւնը զբաղեցնում է այն հարցը, արդեօք այս տէրութիւնը վերջին 20 տարուայ ընթացքում առաջ է գնացել, թէ ոչ. եւ կամ նրա կառավարութիւնը քրիստոնեայ հպատակների վերաբերութեամբ բարւոքուե՞լ է, թէ ոչ։ Տաճկաստանի բարբարոսութիւնները ծածկող, եւ նրա երեւակայական յառաջադիմութիւնը հռչակող անձնական հաշիւներով կուրացած մարդիկ յայտնում են, թէ այժմ Տաճկաստանը բաւական բարեկարգուած է, եւ քրիստոնեայ հպատակների դրութիւնը այժմ համեմատաբար շատ լաւ է, քան թէ առաջ, եւ նրանք համարեա կատարեալ ազատութիւն են վայելում եւ այլն. . . .

Այս բոլորն դատարկ խօսքեր են։

Տաճկաստանը առաջ է գնացել միայն մէկ բանի մէջ՝ — այն է՝ իւր արտաքին կերպարանքը պաճուճել որպէս եւրոպական մի պետութիւն, իսկ սրտով, հոգւով եւ գործով մնալ միշտ մոնղոլ, նոյն բնաւորութեամբ, որպէս էր նա երբեմն Թուրանի անապատներում. . . .

Քննելով պատրիարքարանի 25 տարուայ արձանագրութեանց "Տեղեկագիրը", մենք աւելի համոզւում ենք այս կարծիքի մէջ, թէ տաճկական կառավարութիւնը ինչ որ էր առաջ համարեա նոյնն է մնացել եւ այսօր, նաեւ ոչ-մահմետական ազգերի վիճակը փոխանակ բարւոքուելու հետզհետէ վատթարացել է։

Այս իրողութիւնը աւելի շօշափելի կացուցանելու համար մենք ընթերցողի ուշադրութիւնը կը դարձնենք պատրիարքարանի "Երկրորդ տեղեկագրի" վրայ, որ բովանդակում է իւր մէջ Տաճկական Հայաստանի 1872ից սկսեալ մինչեւ այսօր, 5 տարուայ ընթացքում կատարուած հարստահարութիւնների արձանագրութիւնները։ Ի՞նչ ենք տեսնում։

"Երկրորդ տեղեկագրի" մէջ հարստահարութեանց խնդիրների թիւը առաւելութիւն է կազմում[1]։ Կը նշանակէ անիրաւութիւններն հետզհետէ սաստկացել են։ Հարստահարութիւններն աւելի բազմատեսակ են դառնում եւ իրանց քրէական բնաւորութեամբ աւելի սարսափելի են։ Երկու բան մնում են անփոփոխ. մինը՝ կառավարութեան

---

[1] Առաջին տեղեկագիրն ունի 20 տարուայ շրջան եւ պարունակում է իւր մէջ 19 խնդիրներ միայն, իսկ երկրորդ տեղեկագիրն ունի 5 տարուայ շրջան եւ պարունակում է 38 խնդիրներ։ Բացի դրանից, երկրորդ Տեղեկագրի մէջ երեւան են գալիս նոր տեսակ խնդիրներ, որոնք առաջինի մէջ չը կան, այն է 284 գիւղերի եւ վանքերի կալուածները մահմետականներից յափշտակուելու խնդիրներն։ Եւ չը պէտք է մոռանալ որ երկրորդ տեղեկագիրն վերջին ժամանակների գործերն է բովանդակում։

գործ դրած թոյլ միջոցները իրանց անբաւարար հետեւանքներով, միւսը՝ հարստահարութեանց կատարուած տեղերը[1], որովհետեւ միշտ նոյն անիրաւութիւնները միեւնոյն կերպով կատարուել են միեւնոյն տեղերում։ Դա ի՞նչից է։

Պատճառն շատ պարզ է։ Դրանով բացատրվում է այն հարցը, թէ Տաճկաստանը 25 տարուայ ընթացքում ո՛րքան է առաջ գնացել։ — Այո՛, նա մեծ յառաջադիմութիւն է գործել ոչ-մահմետական ազգերը նորանոր ձեւերով կեղեքելու, կողոպտելու եւ անպատուելու մէջ...։ Եւ որպէս զի ընթերցողը համոզուի՝ այս խօսքերի ճշմարտութեան մէջ. մենք կը դնենք այստեղ պատրիարքարանի Երկրորդ Տեղեկագրի խնդիրներն. որոնք իրանց բովանդակութեամբ աւելի մանրամասն եւ աւելի որոշ կերպով գրուած են[2]։

Հարստահարութիւններ.

1. Արզրումի կուսակալութեան ներքոյ գտնուող Երզնկայ գաւառի Ղուղուլջանի կալուածոց (Նահանգապետ փաշայի փոխանորդ) Շահ-Ցուսէյն բռնաւորի հարստահարութեանց դէմ. սկսեալ Խրիմեանի պատրիարքութեան օրերից (1873ից) մինչեւ այսօր անդադար բողոքներ են

[1] Թէ առաջին եւ թէ երկրորդ Տեղեկագրի մէջ հարստահարութիւնների կենդրոնը է Վանայ ծովակի չորեք կողմում գրուած գաւառները, այսինքն՝ Արզրումի, եւ Տիգրանակերտի նահանգները. Մուշ. Բաղէշ. Վան, Դերջան Քղի, Ղուլուլջան, Չարսանջակ. Սղերտ. Սասուն եւ այլ գաւառները։

[2] Կ. Պոլսի պատրիարքի վերջին անգամ մեծ եպարքոսին (սադրէազամին) մատուցած խնդիրների կարգում, որոնցով նա տաճկահպատակ հայերի ցաւերին դարմաններ էր աղերսում, նոյն խնդիրների մէջ անցուցած էր նաեւ Շահ-Ցուսէյն չարագործի անունը, կարծես, մի մասնաւոր անձի հարստահարութիւններն նոյն կարեւորութիւնն ունէին, որպէս, օրինակ, հայերի ընդհանուր կալուածական հարցը, կամ անչափահաս երեխաներին կրօնափոխ անելու խնդիրը...

մատուցուել Բարձ. Դրան: Դուռը խիստ "ազդու" միջոցներ է գործ դրել, որ յիշեալ չարագործը իւր պաշտօնից հեռացուի եւ ժողովրդի հանգստութիւնը յարգուի: Եւ մեծ եպարքոսը (սադրէզամը) նաեւ արտաքին, ներքին, եւայլն եւայլն մինիստրներն այս հարցի մասին հինգ փառաւոր հրամանագրներ են ուղղել Արզրումի կուսակալ փաշային: Հրամանագրների լեզուն բաւական խիստ եւ ազդու է: Նրան յայտնում են, որ "իւր հայրն ու մայրն եւ կինն սպանող" Շահ-Յուսէյնին իւր պաշտօնից զրկեն եւ Երզնկայի գաւառից հեռացնեն: Նրանք յայտնում են, որ "հարիւրաւոր սպանութիւններ գործող" եւ "քուրդ աւազակների պարագլուխ դարձած"՝ քրիստոնեայ ժողովուրդը կեղեքող՝ Շահ-Յուսէյնին Երզնկայից հեռացնեն, եւ իւր բռնակալութեանց համար աքսորեալ հօր պէս, որդուն եւս անհետացնեն....

Հինգ մինիստրների Բարձ. Դրան կողմից ուղղած հրամանագրների ամբողջ օրինակները դրած են Տեղեկագրների ամբողջ օրինակները դրած են Տեղեկագրքի մէջ, եւ իրանց բովանդակութեամբ, այո, խիստ ազդու են եւ մարդասիրական, որպէս լինում են ամեն մի թղթի վրայ գրուած, բայց ոչինչ գործադրութիւն չը գտնող բարձրագոյն ֆերմաններն, որոնց Դուռը շռայլօրէն դուրս է տալիս իւր խաբէյութեան գործարանից....

Հրամանագրների իւրաքանչիւրի ներքոյ դրոշմուած կնիքների մէջ կարդացվում են Թիւրքիայի այս մեծամեծ մարդերի անունները՝ Սաֆէ, Մահմուդ-Նէդիմ, Միթհատ, Մուհամմէտ Ռուշտի, Յուսէին-Աւնի.... Հինգն էլ շատ անգամ հասարակ վէզիրից բարձրացել են մինչեւ սադրազամութեան բարձր աստիճանը: Բայց ի՞նչ օգուտ բերեցին այս հինգ մինիստրների հրամանագրներն: — Ոչինչ: Նրանք

Կ. Պոլսի նեղուցէն դէպի Փոքր-Ասիա անցնելով, իրանց նշանակութիւնը կորցնում են, եւ Շահ-Ցուսէյն չարագործը մինչեւ այսօր շարունակում է իւր աւազակութիւնները, որովհետեւ նա մի աւելի մեծ աւազակի՝ Արզրումի փաշայի պաշտպանութեան տակ է գտնվում....

Այստեղից հասկանալի է, թէ ինչու բարձրագոյն հրամանագրերն գաւառական պաշտօնականներից շատ անգամ մնում են անգործադրելի։

2. Սղերտ գաւառի Սասուն աւանի քիւրդ բէկերն, տեղային հայերից արքունի տուրքերը բռնութեամբ հաւաքելով, այլ եւս իրանց կողմից գանձին չեն ներկայացնում։ Կառավարութիւնը զինուորներ ուղարկելով, քուրդ բէկերից յետ է ստանում արծաթը։ Բայց հէնց որ զինուորներն հեռանում են, քիւրդ բէկերն սկսում են իրանց տուած արծաթը վերստին հայերից առնել։ Եւ որպէս զի միւս անգամ այսպիսի անիրաւութիւններ չը պատահեն քրդերից, կառավարութիւնը այնտեղ զօրանոց շինելու եւ մշտական զօրք պահելու որոշում է անում, բայց մնում է անգործադրելի։

3. Մուշի հարստահարիչ քուրդ բէկերից Փարիզ եւ իւր եղբայրն կառավարութեան հրամանով աքսորվում են Գասթամունի, բայց յետոյ յայտնի չէ ինչ հնարքով ազատութիւն գտնելով, վերադառնում են եւ աւելի վրէժխնդրութեամբ սկսում են տանջել եւ կողոպտել հայերին։ Այդ մասին կրկին Թագրիրներ են մատուցվում, կրկին բողոքներ են բարձրանում. բայց բոլորը կամ առանց հետեւանքի են թողնում, կամ “բաթթալ„ են անում, այսինքն ոչնչացնում են։

4. Մուշ գաւառի Բերնաշէն, Խութ, Սասուն եւ Շատախ կոչուած երկրների քուրդ հարստահարիչների

մասին պատրիարքարանից Թագրիր է գրվում, բայց մնում է ապարդիւն։

5. Խարբերդի գաւառում Մադէն ճանապարհների ուղղութեան համար, շինութիւնների պաշտօնատարներն հայ գիւղացիներին տարապարհակ վարելով (ձրի աշխատացնելով) գործաւորների օրական վարձը չեն վճարում։ Բողոք է բարձրանում, բայց արդիւնքը յայտնի չէ։

6. Տիգրանակերտի գաւառում Սէվէրէկ աւանի հայերից զինուորական տուրքի՝ կառավարութեան հրամանով պակասացրած՝ քառորդ մասի զեղչը գործ չը դրուելուց յետոյ, ամբողջութեամբ են առնում, բացի դրանից մեռնող եւ անյայտ եղած անձանց զինուորական տուրքը մնացողներից են պահանջում։ Նաեւ կառավարութեան պաշտօնեաներն կալուածների արժէքը խիստ բարձր գնահատելով, չափազանց կալուածական տուրքերով ծանրաբեռնում են ժողովուրդը։ Այլ եւ ճանապարհների շինութեանց մէջ ժողովրդին օրէնքով սահմանուած օրերից աւելի են աշխատացնում։ Բողոք մատուցուած է, բայց արդիւնքը յայտնի չէ։

7. Վանայ կողմերի Հոգւոց վանքը քուրդերն կողոպտում են, եղած-չեղածը տանում են։ Պատրիարքարանը այդ մասին բողոքում է, բայց Թագրիրն մնում է առանց պատասխանի։

8. Մուշի գաւառում Մօտկան երկրի հայոց գիւղերն քրդերից անդադար հարստահարվում են, որոնց մի տարուայ կողոպուտը ներկայացնում է հետեւեալ թուանշանները. 799 ոչխար, 53.850 ղուրուշ փող (3167 ռուբլի). 1972 բաթման ուտեստ եւ արմտիք, 121 կտոր հագուստ, 261 թօփ կարմիր կտաւ։ Թագրիր է գրվում, յիշեալ ցուցակը ներկայացնելով բարձր կառավարութեան, բայց գործը մնում է ապարդիւն։

9. *Բիթլիսի (Բաղէշի) գաւառում* Մահմէտ-Բէկ *անունով բռնակալն իւր 12 որդիների եւ ազգականների հետ՝ նոյն գաւառի 32 գիւղում ամեն տեսակ հարստահարութիւններ են գործում։ Ժողովրդեան բողոքը տեղային կառավարութեան կողմից անուշադիր մնալով, եւ մահմետականներն ու հայերն միանալով, առանձին բողոքագրով դիմում են Կ. Պոլսի հայոց պատրիարքարանին։ Այս մասին բարձր կառավարութիւնից հրամանագիր է ուղարկուած, բայց արդիւնքը յայտնի չէ։*

10. *Սասունցի քրդերն Մուշի Աղբիւրիկ վանքից իւրաքանչիւր տարի որպէս տուրք բռնութեամբ առնում են՝ 400 ղուրուշ փող. 4 կով, 20 ոչխար, 4 բաթման ծխախոտ, 4 բաթման իւղ, 5 գրիւ ցորեան։ Եթէ վանքը այս բաները չը տայ, միաբանների կեանքը միշտ վտանգի մէջ է։ Թագրիր գրուած է. Բ. Դռնից հրամանագիր ուղարկուած է. արդիւնքը յայտնի չէ։*

11. *Տիգրանակերտի նահանգում մի քանի բռնակալ* դէրէբէյլէր *սոսկալի հարստահարութիւններ են գործում։ Բարձ. կառավարութիւնը ժողովրդի եւ պատրիարքարանի բողոքների համեմատ առանձին քննիչ է ուղարկում։ Բռնակալ դէրէբէկիների յանցանքներն ստուգուելով, նրանք Տիգրանակերտ են բերվում եւ նոյն քաղաքում մշտապէս մնալու որոշում է լինում։ Բայց կառավարութեան քննիչը հեռացածին պէս, բռնակալներն իրանց տեղն են դառնում եւ աւելի կատաղութեամբ սկսում են առաջուայ չարագործութիւնները շարունակել։ Այդ մասին կրկին բողոքներ են բարձրանում, բայց չարագործներն միշտ մնում են անպատիժ։*

12. *Մարաշի մութասարրիֆ (փաշայի փոխանորդ) Սայիդ-փաշայի անիրաւութիւնների դէմ ժողովրդից գան-*

գատներ լինելով, եւ պատրիարքարանի Թագրիրների հիման վրայ, բարձ· կառավարութիւնը հրամանագիր է ուղարկում տեղային կառավարութեան վրայ գործը քննելու համար։ Բայց տեղային կառավարութիւնն փոխանակ քննելու, աշխատում է Սայիդին արդարացնել է հայերին զրպարտիչ ցոյց տալ։ Այս մտքով նա մի վկայական (մազբաթայ) է պատրաստել տալիս, եւ մինչեւ անգամ տեղային առաջնորդական փոխանորդին բռնութեամբ ստիպում է, որ նոյն վկայականը ստորագրէ, որն Սայիդի արդարութեան համար էր վկայում։ Այս բռնութեան դէմ բողոքում է պատրիարքարանը· արդիւնքը յայտնի չէ։

13· Ագշէհիր քաղաքի հայոց տուրքերը պատկանածից աւել նշանակելով, ժողովուրդը ծանրաբեռնում են անտանելի վճարներով։ Այդ մասին պատրիարքարանը Թագրիր է գրում եւ անպատասխան է մնում։

14· Կարսի հարստահարիչ քրդերի եւ Մադէնի քուրդ բէկերի հայերին հասուցած վնասների մասին պատրիարքարանը Թագրիր է գրում եւ անպատասխան է մնում։

15· Վանայ ոստիկանութեան հազարապետ Տիլավէր աղայի եւ նրա ազգականների անիրաւութեանց դէմ Թագրիր է գրվում, մնում է առանց պատասխանի։

16· Ջինուորական տուրքի անկանոն բաշխման վրայ եւ հայերից առաւելութեամբ առնելու մասին Թագրիր է գրվում, արդիւնքը յայտնի չէ։

17· Սեբաստիոյ կուսակալութեան ներքոյ Սարմուսակլը գիւղի հայերն հարստավարվում են մահմետականներից· վերջինների անգթութիւնը մինչ այն աստիճան է հասնում, որ մի հայ կին բռնութեամբ սարը տանելով, եւ իրանց գազանական կիրքը յագեցնելուց յետոյ, սպանում են եւ դիակը գետն են գցում։ Այդ մասին Թա-

գրիր է գրվում, Բ. Դռնից հրաման է գնում բայց արդիւքն յայտնի չէ։

18. Ուրֆայի քաղաքական ատեանում, դատարանի Նայիբ-էֆէնտին ներկայացող քրիստոնեայ վկաները մերժում է, հակառակ դատավարութեան օրինաց։ Թագրիր գրուած է, բայց արդիւնքը յայտնի չէ։

Հողային կամ կալուածական խնդիրներ:

Տիգրանակերտի Սաթը գիւղի Հայոց բոլոր արտերը մի մահմետական կին անիրաւութեամբ սեփականելով, հայ գիւղացիներին պարտաւորեցնում է իրանց մշակութեան բերքերից բաժին հանել իրան որպէս կալուածատիրոջ։ Այդ մասին մի քանի անգամ Թագրիրներ են գրուած, որն անպատասխան մնացած է, որն ապարդիւն։

20. Մուշ գաւառի Մօնրիկ գիւղի հողերը մի մահմետական հոգեւորական (մուֆթի) բռնութեամբ տիրում է։ Նոյն միջոցում Արզրումի կուսակալը անձամբ այն կողմերը գալով, եւ որովհետեւ Մուշն էլ իւր կառավարութեան տակն էր, գիւղացիների բողոքը յիշեալ հողերի մասին լսելով, մուֆթիի տիրապետելը անիրաւացի է համարում, եւ գիւղացիներին նոր հաստատուած կալուածագրեր է տալիս։ Գիւղացիք այսպէսով կրկին տէր են լինում իրանց 40—50 տարի հերկած արտերին։ Բայց Արզրումի կուսակալը փոխուելով, նրա կարգադրութիւնն էլ յիշեալ հողերի մասին փոխվում է։ Մուֆթին գիւղացիներից մի քանի հոգի բերել տալով Մուշ քաղաքը, տեղային կառավարութեան ժողովի մէջ բռնութեամբ եւ սպառնալիքով վկայութիւն է առնում, թէ հողերն պատկանում են մուֆթիին եւ ոչ գիւղացիներին։ Եւ այսպէսով նա միւս անգամ հողերը իւր ձեռքն է գցում։ Գիւղացիք այնու-

հետեւ սկսում են բողոքել, թէ վկայութիւն տուող միայն երկու գիւղացիներն չեն կարող ամբողջ բնակիչների ներկայացուցիչ համարուիլ, թէ նրանք իրաւունք չունէին բոլոր գիւղացոց կողմից մի բան խօսելու, եւ այլն։ Բայց մուֆթին ազդեցութեան տէր մէկն լինելով, գիւղացոց բողոքը իրանց երկրում լսելի չէ լինում։ Խեղճերն այնուհետեւ իրանց կողմից երկու պատգամաւոր Կ. Պոլիս են ուղարկում, նրանց տալով նաեւ իրանց կալուածագրերը եւ ուրիշ գրաւոր ապացոյցները։ Կ. Պոլսում գործը նորից քննվում է, բայց վճիռը յօգուտ մուֆթիին է վերջանում։ Պատրիարքարանը կրկին թագրիր է գրում, հետեւանքը յայտնի չէ։

21. Խարբերդի նահանգի Չարսանջակ գաւառի բոլոր հայոց գիւղերի ամբողջ տները, խանութները, պարտէզները, այգիները եւ արտերը Իսակ-բէկ անունով մէկը եւ մի քանի մահմետական աղաներ բռնութեամբ տիրելով, գիւղացիների վրայ որպէս կալուածատէր հարկ են նշանակում։ Գիւղացիների բողոքների եւ պատրիարքարանի թագրիրների հիման վրայ Բարձր. կառավարութիւնը առանձին մասնաժողով է ուղարկում Չարսանջակի գաւառը այս գործը քննելու համար։ Մասնաժողովը գիւղացիների բողոքը իրաւացի գտնելով եւ Իսակ-բէկի ու միւսների իրաւունքը համարելով, իւր տեղեկութիւնները հաղորդում է տեղային կառավարութեանը աղաների միջամտութիւնը արգելել եւ գիւղացիներին յիշեալ կալուածների տէր ճանաչել, այլ եւ նրանց կալուածագրերը նորից հաստատել։ Բայց կայսերական էրատէյով (հրովարտակ) հաստատուած այս որոշումը տեղական կառավարութիւնից անգործադրելի մնալով, Իսակ-բէկը եւ միւս մահմետական բռնակալներն զանազան խարդախ միջոցներով դարձեալ

*մնում են Զարսանջի գիւղօրէից տէր։ Այս խնդրի մասին այնուհետեւ մի քանի թագրիրներ են գրվում, բոլորն մնում են ապարդիւն։*

22. *Սեբաստիոյ գաւառի Եար-Հիսար գիւղի հայերին պատկանող մշակութեան դաշտերի եւ արտերի մէջ տեղային միւդիրը (գաւառապետ) չէրքեզներ է բնակեցնում եւ հայ գիւղացիները զրկվում են իրանց հողերից։ Այդ մասին պատրիարքարանից մի քանի անգամ թագրիր է գրվում, բայց Դրան կողմից "բաթալ„ է լինում, այսինքն՝ առանց հետեւանքի է մնում։*

23. *Էսկիշէհրի մէջ մահմետականները քրիստոնեաներին արգելում են նոր կալուածք գնելու, բնակութիւն հաստատելու եւ եկեղեցի շինելու։ Թագրիրներ գրուած են, Բ. Դռնից մի քանի անգամ հրամաններ ուղարկուած են քրիստոնեաներին նպաստելու նպատակով, բայց արդիւնքն յայտնի չէ։*

24. *Տիգրանակերտի նահանգում Սպակերայ աւանի գիւղերը հարստահարող քրդերի գլխաւորներից մէկը՝ Արդի-բէկ, Ծո–ղէրո–Բէան պաշտօն վարելով, սկսում է ժողովուրդը ամէն կերպով կեղեքել։ Այս բռնակալը յափշտակում է հայերից նրանց արտերը, հողերը եւ անասունները, այլեւ Հուսպ գիւղի հայոց գերեզմանատունը գրաւելով, միջի գտնուած եկեղեցին քանդում է եւ իւր համար տուն է շինել տալիս։ Նմանապէս մի քանի ուրիշ քուրդ բէկեր (անունները գրուած են) Էրուն աւանի գիւղերը հարստահարում են։ Թագրիր գրուած է, հրամանագիր ուղարկուած է, արդիւնքը յայտնի չէ։*

25. *Վանայ Շատախ գաւառում քուրդ բէկերն, որպէս երկրի անիշխանութեան ժամանակ. սկսում են իրանց վաղեմի բարբարոսութիւնները գործ դնել։ Նրանք հայերին սոսկալի կերպով տանջում են, ստիպեցնելով որ*

իրանց տուրք վճարեն, եկեղեցիները քանդում են, պղծութիւններ են գործում, մշակութիւնները այրում են եւ շատ նշանաւոր Հայեր սպանում են (անունները գրուած են)։ Բացի դրանցից Տատախու գաւառի վեց գիւղերի (անունները գրուած են) Հայ բնակիչներին դուրս քշելով, քուրդերը իրանք են նրանց մէջ բնակում եւ նրանց հողերը ամբողջապէս իրանց են սեփականացնում։ Թողեալ այդ, ուրիշ 12 գիւղերի արտերը Հայերի ձեռքից խլում են քուրդերը։ Հայ ժողովուրդը բողոքելով տեղային կառավարութեան, նա իւր կողմից Աղայ-բէկ եւ Բարսեղեան Մկրտիչ անունով անձինքը քննիչ է ուղարկում։ Քննիչները ստուգելով քրդերի անիրաւութիւնը, Հայերի իրաւունքը հաստատում են յիշեալ Հայերի հողերի վերաբերութեամբ։ Բայց հետեւեալ տարին Ռէշիդ-էֆէնդի անունով մէկը Թափուի օրինաց գործադրութեանը համար Տատախու գաւառն ուղարկուած լինելով, Հայերին պատկանող նոյն հողերը գաղտնի կերպով քուրդ բէկերի անունով Թափու է անում[1]։ Այս խարդախութեան համար գիւղացիներից մինչեւ 200 հոգի դիմում են Վան քաղաքը եւ բողոքում են տեղային կառավարութեանը, եւ պատրիարքարանը իւր կողմից առանձին թագրիրով յայտնում է Բարձ. Դրանը, բայց պատասխան չէ ստանում։

26. Չնքուշի վանքի արտերը կառավարութիւնը իբրեւ մահլուլ[2] ճանաչելով, ծախել է տալիս։ Այդ մասին թագրիր է գրվում, արդիւնքը յայտնի չէ։

---

[1] Տաճկաց կառավարութիւնը անմշակ հողերը մի որոշեալ գնով ժողովրդի վրայ ծախում է կամ աւելի ճիշդ կը լինի ասել կապալով է տալիս, եւ իւր կողմից կալուածագիր է տալիս, դա ասվում է Թափու անել։ Բայց Թափու լինում են այն հողերը միայն, որոնք տէր չունին եւ անմշակ են մնացած։

[2] Տաճկաց կառավարութիւնը վանքային կամ եկեղեցական կալուածք

27. Արզրումի մէջ Ռահրէր Էմրաէ (կալուածական արձանագրութիւն) կատարուելու միջոցին, երբ կարգը ազգային դպրոցների եւ եկեղեցիների կալուածներին է հասնում, տէրութեան պաշտօնեայն չէ ուզում նրանց իբրեւ ազգային կալուածք արձանագրել, ասելով, թէ այսպէս անելու հրահանգ չունի, այլ իւր պարտաւորութիւնն է իւրաքանչիւր կալուածքի կենդանի տէրը գտնել, եւ նրա սեփականութեան իրաւունքը ստուգելէն յետոյ, նրա անունով արձանագրել: Իսկ երբ մի կալուածք անձնաւորեալ տէր չունի. պէտք է իբրեւ մահլուլ նկատել[1]: Այդ մասին պատրիարքարանից թագրիր գրուած է. Բ. Դուռը հրաւագրել է, որ յիշեալ կալուածները ազգի անունով արձանագրուին, բայց արդիւնքը յայտնի չէ:

28. Տրապիզոնի Ս. Փրկիչ վանքի արտերի մէկ մասը Ալի էֆէնդի անունով մէկը կամենում է սեփականել: Թագրիր գրուած է այդ մասին. պատասխան առնուած չէ:

29. Մադէն քաղաքի Ջերմուկ գիւղի հայոց թաղի մէջ եկեղեցի շինելու արգելք են լինում մահմետականներն, պատճառելով, թէ հայոց թաղի մօտ մզկիթ կայ: Թագրիր գրուած է, հրամանագիր ուղարկուած է, արդիւնքն յայտնի չէ:

---

չէ ճանաչում. որովհետեւ կալուածատէր կարող են լինել միայն անձնաւորութիւն ունեցող անհատներ, իսկ վանքը եւ եկեղեցին նրա կարծիքով իրաւաբանական անձնաւորութիւն չէ, ուրեմն եւ կալուածատէր լինել կարող չէ.... Այս պատճառով վանքային կալուածները համարվում են որպէս մահլուլ, այսինքն որոշ տէր չունեցող: Այսպիսի կալուածների տէրն ինքն պետութիւնն է լինելու:

[1] Այստեղ դարձեալ նոյն խնդիրն է. ինչ որ էր վանքային կալուածների վերաբերութեամբ: Մեզ շատ յայտնի չեն Թիւրքիայի կալուածական օրէնքները (եթէ ունի նա օրէնքներ) բայց չենք կարողանում հասկանալ թէ ի՞նչու մահմետական մզկիթը եւ մադրասան կարող են կալուածք (վակֆ) ունենալ, բայց հայոց եկեղեցին, վանքը եւ դպրոցն չեն կարող ունենալ:

*Ոճրագործութիւններ:*

30. *Հալէպի հեռագրատան պաշտօնեայ Ասատուր անուն հայազգին հեռագրատան մէջ սպանվում է: Կառավարութիւնն հեռագրատան տեսչից պահանջում է ոճրագործին: Եւ նա Ահմատ անունով հեռագրատան սոոր ծառայներից մէկին ցոյց տալով, յայտնում է, թէ նա է սպանողը: Բայց միւս կողմից տեղական կառավարութիւնը ձեւացեալ մարդասպանին առանց քննութեան. "Խենթ„ է ասելով հիւանդանոցն է ուղարկում. . . . : Թագրիր գրուած է հրամանագիր ուղարկուած է, արդիւնքը յայտնի չէ:*

31. *Վանայ Նարեկայ վանքի ջրաղացը քուրդերն կողոպտելով, ջրաղացպանին սպանում են: Թագրիր գրուած է, Բարձ. Դուռն պատասխան չէ տուած:*

32. **Մուլազիմ** *(յիսնապետ) Հասանը Աղթամարայ վանքը մտնելով, միաբաններից Յակոբ վարդապետին սպանում է: Մի քանի քուրդեր էլ Մինդան գիւղի Տէր-Յովհաննէս քահանային են սպանում: Եւ Աբդուլ-Փաթթահ եղեռնագործը նոյն կողմերում բոլոր հայերը կոտորելու սպառնալիք է անում: Թագրիր գրուած է, Բ. Դռնից հրամանագիր է ուղարկուած եւ հեռագիր է զարկուած, արդիւնքը յայտնի չէ:*

33. *Մարաշի մէջ Մէնգերեան Յարութիւնին եւ Զամչիկեան Ղազարոսին տեղային մահմետականներն սպանում են: Նաեւ Զէյթունի կայմաղամ Դաւուդ աղան Յարութիւն անունով հայ ոստիկանին սպանել է տալիս: Թագրիր գրուած է, Բ. Դռնից հեռագիր զարկուած է, բայց արդիւնքն յայտնի չէ:*

34. *Մալաթիոյ Մուստաֆայ-բէկի դէպի հայերն ունեցած մոլեռանդական վարմունքի դէմ եւ մահմետական*

տրիկաների շան վզից խաչ կախելով քաղաքի փողոցներում եւ շուկաներում ման ածելու համար՝ Թագրիր գրուած է, Բ. Դունից պատասխան առնուած չէ։

## Կրօնափոխութիւններ:

35. Բայբուրդ քաղաքի Ռումէլի գիւղացի Մարթա անուն աղջիկը առեւանգվում է Սաֆար անունով մի Թուրքից։ Հայերի բողոքելով աղջիկը տեղային կառավարութեան ատեանում ներկայացնում են հարցափորձի համար։ Այնտեղ լինում են Բայբուրդի հայոց երեւելիներն, մի քանի յոյներ եւ մահմետականների գլխաւորներն։ Փոխանակ աղջկան թոյլ տալու, որ խոստովանուի, արդեօք նա իւր հաճութեամբն է ընդունել մահմետականութիւնը, յանկարծ մահմետականների մոլեռանդ բազմութիւնը ներս է թափվում, եւ սկսում են գոռալ. “Աղջիկն արդէն մահմետականութիւնը ընդունած է, կրկին հարցնելու հարկ չը կայ, եւ եթէ նա՝ մահմետական չեմ՝ ասէ, եւ դէպի քրիստոնէութիւն վերադառնայ, շարիաթի օրէնքով նրան գլխատել պէտք է։„ Կատաղի ամբոխը այսպիսի եւ դրա նման շատ սպառնալիքներ կարդալով, եւ մօրը թոյլ չը տալով, որ աղջկան մօտենայ, խեղճ Մարթային ստիպեցնում են խոստովանել, թէ ինքն հաճութեամբ է ընդունել մահմետականութիւնը, եւ բռնի կերպով նրան ամուսնացնում են Թուրք Սաֆարի հետ։

Բայց Մարթան չը կարողանալով մահմետականի հետ կենակցել, գիշերով փախչում է եւ իւր տունն է գալիս։ Այս բաւական էր քաղաքի մահմետականութիւնը կատաղութեան չափ վրդովմունքի մէջ գցել։ Մօլլաներն քաղաքի մէջ մունետիկ են տալիս, եւ մոլեռանդ բազմութիւնը

հաւաքում են մադրասայների մէջ, եւ նրանց գրգռում, ասելով, թէ քրիստոնեաներն մահմետականութիւն ընդունող աղջիկը փախցրել են։ Իսկոյն երկու հազարի չափ կատաղիներ զէնքերով հայոց տների եւ խանութների վրայ են յարձակվում, մեծ մասը կողոպտում են, քանդում են, եւ 30 հոգի հայերից չարաչար վիրաւորում են։ Տեղական կառավարութիւնը Կարնոյ կուսակալին վտանգը հեռագրով իսկոյն իմացնում է տալիս։ Կուսակալը զօրքով այնտեղ հասնում, խռովութիւնը դադարեցնում է, եւ ստուգելով, թէ աղջիկն ամենեւին քրիստոնէից կողմից փախցրած չէ եղել, մի քանի մարդիկ Կարին տանելով բանտարկում է։ Բայց գլխաւոր խռովարարներն մնում են անպատիժ եւ կողոպտուած ժողովրդի վնասներին ոչինչ հատուցում չէ լինում։ Այդ մասին մի քանի անգամ թագրիրներ են գրուած, բայց ամենեւին Բարձ. Դռնից պատասխան չէ ստացուած։

36. Սեբաստիոյ մէջ մի հայ մահմետականութիւն է ընդունում եւ իւր աղջիկը հետն է տանում։ Բայց աղջիկն որովհետեւ չափահաս էր, հօր մօտից փախչում է եւ ապաստանում է հայոց վանքը։ Մահմետականներն պնդելով, թէ աղջիկն հօր մօտ պէտք է մնայ, յարձակվում են վանքի վրայ, եւ աղջկան բռնութեամբ դուրս են քարշում։ Պատրիարքարանը անդադար թագրիրներ է գրում, որ աղջիկը քրիստոնեայ մնացած մօրը յանձնուի, քանի որ նա հօր կրօնքը ընդունելու միտք չունի։ Բարձ. Դուռը հրաման է գրում, որ աղջիկը նախ թուրքացած հօրը յանձնուի եւ ապա քննութիւն լինի։ Պատրիարքարանը իւր թագրիրները կրկնում է։ Վերջապէս երեք տարուց յետոյ աղջկան քրիստոնեայ մօրն են յանձնում քննելու համար, երբ նա ամեն բանով փոխուած էր։

37րդ խնդիրը Քղիի եւ Երզնկայի գաւառների երեւելի չարագործ Շահ-Յուսէյնին է վերաբերում, որի մասին արդէն խօսեցինք։ Այս չարագործի հարցը տեղեկագրքի մէջ շատ տեղ է բռնում։

38րդ խնդիրը վերաբերում է զինուորական տուրքին, որի մասին փոքր ի շատէ տեղեկութիւն տուեցինք մեր ծանօթութեան մէջ։

39րդ խնդիրը վերաբերում է հողային հարցերի, որոնց մասին առանձին պէտք է խօսենք, որովհետեւ այս ամենագլխաւոր հարցը, որպէս նկատվում է Տեղեկագրքից, շատ փոքր գրաւեր է պատրիարքարանի ուշադրութիւնը...։

Որպէս տեսանք, թէ առաջին եւ թէ երկրորդ տեղեկագրի մէջ պարունակուած խնդիրը, եթէ իրանց տեսակին համեմատ դասաւորելու լինինք, կը ստանանք հետեւեալ թուանշանները. — Ամբողջ 58 խնդիրներից 36ն վերաբերում են զանազան տեսակ հարստահարութիւնների, 12ն հողային եւ կալուածական խնդիրների, 5ն ոճրագործութեան կամ քրէական յանցանքների, իսկ 4ն կրօնափոխութեան, կամ կանանց բռնաբարութիւնների։ Յիշեալ թուանշաններից դուրս է մնում 263 հայոց գիւղերի եւ 21 վանքերի հողերի քրդերից եւ թուրքերից յափշտակուելու խնդիրը, որոնց մասին տեղեկագրքի մէջ միայն մէկ ընդհանուր բողոքագիր է երեւում, պատրիարքարանի կողմից Բարձ. Դրան մատուցուած։ Հողային հարցը, որ հայերի կենսական հարցն է, շատ ուշադրութեան չէ առնուել, կարծես այդ խնդիրը չէ հետաքրքրել պատրիարքարանին։

Ինչ եւ իցէ, խօսենք 58 խնդիրների մասին։ Պատրիարքարանը դրանց համար ամբողջ 25 տարուայ ընթացքում անդադար թագրիրներ է մատուցել Բարձ. Դրան։

Բայց ի՞նչ արդիւնք են ունեցել պատրիարքարանի պաշտօնական Թագրիրները։ — Ուրաքանչիւր Թագրիրի ներքոյ կարդացվում են այսպիսի մակագրութիւններ. — “Անպատասխան մնացած է։„ — “Ապարդիւն մնացած է։„ — “Սոյն Թագրիրը ճաւաբսըզ (առանց հետեւանքի մնացած է։„ — “Բարձ. Դռնէն հրամանագիր ղրկուած է, ինչ արդիւնք ունեցած ըլլալն յայտնի չէ։„ — Եւ այսպէս Թագրիրներից եւ ոչ մէկը չենք գտնում, որ իւր նպատակին եւ իւր նշանակութեանը հասած լինի։ Կը նշանակէ, ամբողջ 25 տարուայ ընթացքում Բարձ. Դուռը պատրիարքարանի խնդիրներին բաւականութիւն տուած չէ։ Դա շատ ցաւալի մի երեւոյթ է, մի երեւոյթ, որ ցոյց է տալիս, թէ սուլթանի կառավարութիւնը որքան նուազ պաշտպանում է արդարութիւնը եւ իրաւունքը, եւ որքան սակաւ հոգս է տանում նա ոչ-մահմեդական ազգերի հանգստութեանը եւ բարօրութեանը։

Արդարեւ, խնդիրների կարգում տեսնվում են մի ֆանիսը, որոնք Դրան բարձրագոյն ուշադրութիւնը իրանց վրայ դարձնելով, արժանացել են բարձրագոյն հրամանագիրների։ Բայց Շահ-Ցուսէյն չարագործի հարցը բաւական է ցոյց տալու համար, թէ բարձրագոյն հրամանագրերն ինչ նշանակութիւն ունեին գաւառական հարստահարութիւնները բառնալու համար։ Ընթերցողն արդէն տեսաւ որ հինգ մեծամեծ սադրազամներ եւ վէզիրներ, որպէս էին Ալի-փաշան, Միտհադը, Ցուսէֆին Անին եւ այլն. իրանց հրամանագրներով չը կարողացան Շահ-Ցուսէյնի նման մի աւազակապետ հեռացնել իւր հարստահարութեանց ասպարէզից։ Եւ ուրիշ կերպ լինել կարող չէր, քանի որ Տաճկաստանի արտակենդրոնական կառավարութեան մէջ մեծ դեր է խաղում դոչաբէկլէօ-Ըն-Նը, այսինքն՝ անձնիշ-

խանութիւնը մի պաշտօնակալի, որն, որքան հեռանում է կենդրոնից՝ Կ. Պոլսից, այնքան կամայական եւ այնքան ապստամբ է դառնում։

Գուցէ Սուլթանի Դուռը շատ անգամ ցանկանում է իւր ոչ մահմետական հպատակներին հանգստութիւն, կեանքի, կայքի եւ պատուի ապահովութիւն շնորհել. եւ աշխատում է բառնալ անիրաւութիւնը. պատժել հարստահարիչներին։ Բայց ի՛նչ օգուտ ունին բարի ցանկութիւններն, երբ որ գործադրութիւն չեն գտնում. երբ որ նահանգական եւ գաւառական պաշտօնակալների կամայականութեամբ բոլորն մնում են անգործադրելի։ Սուլթանի Դրան բարձրագոյն ֆերմաններն նոյն նշանակութիւնը ունին հարստահարուած ժողովրդի բարօրութեան համար, ինչ նշանակութիւն որ ունի տէր-բաբայի գրած թալիսմանը մի հիւանդ երեխայի առողջութեան մասին, որը խորին ջերմեռանդութեամբ առնում է մայրն եւ խնամքով դնում է որդու բարձի տակին, որ նա չը մեռնի . . .

Տաճկաստանի գործերի այսպիսի անկարգ եւ այլանդակ դրութիւնը մեզ բնաւ չէ զարմացնում, որովհետեւ նա շատ յատկանիշ է, եւ ծագում է իրերի բնական կարգից։ Որքան էլ աշխատէր, որքան էլ ճգնէր Դուռը, եւ որքան էլ յաճախ իւր ֆերմաններով ազատ իրաւունք եւ արդարութիւն տեղար ժողովրդի վրայ, — բոլորն անօգուտ է։ Որովհետեւ մենք համոզուած ենք. թէ վէրչէ–էյ միայն հրաշքներ կարող են գործուել, բայց մի երկրի բարեկարգութիւնը պէտք է սկսուի ուրմաքէց։ Ոչինչ ցանք բուսնել չէ կարող, քանի որ հողը պատրաստուած չէ։ Այնպէս էլ հազարաւոր ֆերմաններ միշտ կը մնան որպէս մեռած տառ, քանի որ ամբոխն իւր կրթութեամբ չէ համապատասխանում բարձրագոյն նպատակին։

Թողնենք փիլիսոփայութիւնը։

Անկարելի է, որ բոլոր նահանգական եւ գաւառական բարձր եւ ստոր պաշտօնականներն լինէին անիրաւ մարդիկ։ Որպէս պատրիարքարանի Տեղեկագրքից եւս երեւում է նրանց մէջ կան եւ այնպիսիքը, որ աշխատում են գործ դնել բարձրագոյն հրամանը, աշխատում են հարստահարիչներին զսպել, բայց եւ նրանց աշխատութիւնը մնում է ապարդիւն։ Որովհետեւ այսպիսիներն շատ անգամ իրանց դէմ են յուզում մոլեռանդ մահմետականութեան կատաղութիւնը եւ այսպիսով չեն կարողանում պահպանել իրանց դիրքը։ Հարստահարիչների գլխաւորներն ամեն տեղում երկրի նշանաւոր եւ ազդեցութեան տէր մարդիկն են, եւ նրանցից է կախուած մի փաշայի կամ մի կուսակալի վիճակը։ Եւ մահմետական ժողովուրդը իւր շահերով կապուած է գլխաւոր հարստահարիչների հետ։ Այսպիսի հանգամանքներում ի՞նչ կարող է անել մի թոյլ եւ անզօր տէրութեան նոյնպէս անզօր պաշտօնականը, նա եւս ստիպուած է գնալ ընդհանուր հոսանքի հետ։ Որովհետեւ պաշտպանել հարստահարուած հային հարստահարող մահմետականի դէմ՝ նոյն է, որպէս զրկել վերջինը իւր անիրաւ շահերից, որը մինչեւ անգամ կրօնքով նրան թոյլ տրուած է, որը նրա բնաւորութեան մէջ պատմականաբար արմատացած է....

Մահմետականութեան գաղափարը կից է հարստահարութեան գաղափարի հետ, որն կրօնից տարրացել է ամբոխի մէջ։ Ամեն կրօն նոյն ազդեցութիւնն է անում, երբ նրա մէջ եղած օրէնքներն եւ վարդապետութիւններն ընդհանուր մարդասիրական նշանակութիւն չունին. այսինքն՝ երբ նա խտրութիւններ է դնում իւր հաւատացեալների եւ օտարների մէջ։ Օրինակ, այն որ արգելուած

է մահմետականի դէմ գործելու, շատ անգամ թոյլ է տրուած գործել, երբ դա վերաբերում է մի այլադաւանի։ Մենք կարող ենք հարիւրաւոր փաստեր բերել, բայց բաւական է յիշել մէկը։ Մահմետական օրէնքով վկայութիւնը նոյն ուժը եւ զօրութիւնը ունի, որպէս գրաւոր ապացոյցը։ Բայց ոչ-մահմետական ազգերի վկայութիւնը մահմետականի վերաբերութեամբ չէ ընդունվում։ Ահա օրէնքի այս խտրութեան տակ կարող են ծածկուել ամեն տեսակ չարագործութիւններ։ Մահմետականը մի հայ սպանել է. մի հայ աղջիկ բռնաբարել է. միւսի այս ինչ բանը գողացել է եւ այս բոլորն պատահել են հայոց շրջանում, ի հարկէ, վկաներն նոյնպէս հայ կը լինեն. բայց նրանց վկայութիւններն չընդունուելով, յանցանքը մնում է անպատիժ։ Ոչ-մահմետական վկայութիւնը այն ժամանակ միայն կարող է ընդունուած լինել, երբ տուած կը լինի մահմետականի օգտին։ Եւ այսպէս մահմետական կրօնը՝ գլխաւոր արգելառիթներից մէկն է Տաճկաստանում արդարութիւն եւ քաղաքացիութեան հաւասարութիւն մտցնելու։ Աստեղից հասկանալի է, թէ ինչու Բարձր կառավարութեան, շատ անգամ բոլորովին անկեղծօրէն առաջարկուած, բարենորոգումներն քրիստոնեաների վերաբերութեամբ մնում են անկատար։

Եթէ պատրիարքարանի “Տեղեկագիրքը„ ընդունենք որպէս ասիական Տաճկաստանում հայերի վերաբերութեամբ կատարուած յանցանքների վիճակագրական արձանագրութիւն, այն ժամանակ դուրս բերուած թուանշաններն մեզ շատ տխուր եզրակացութիւնների կը հասցնեն։ Խօսենք իւրաքանչիւրի վրայ առանձին-առանձին։

Քսանեւհինգ տարուայ միջոցում կատարուած կրօնափոխութիւնների թիւը (2 հոգի միայն) ամենափոքր տեղն

է բռնում պատրիարքարանի արձանագրութեանց մէջ։ Դա ինչի՞ց է։ Գուցէ ոմանք կը մտածեն, թէ կրօնափոխութիւններ սակաւ են պատահում եւ պատրիարքարանին այդ մասին չեն զբաղեցնում։ Ո՛չ, պատահում են, եւ աւելի մեծ թուով եւ եթէ պատրիարքարանը այդ մասին ունեցել է երկու խնդիրներ միայն, դա ունի առանձին պատճառները։

Կրօնափոխութիւնները Ասիական Տաճկաստանում համոզմունքով չեն կատարվում, որովհետեւ մահմետականութիւնը այն առաւելութիւնը չունի, որ քրիստոնեայ հայը ցանկանար իւր կրօնը փոխել. այդ մասին բաւական է ի նկատի ունենալ անբախտ Մարթայի անցքը։ Կրօնափոխութիւնները պատահում են ըստ մեծի մասին աղջիկների եւ կնիկների մէջ հետեւեալ պատճառներով։ Ասիական Տաճկաստանում շատ փոքր է այն գիւղերի թիւը, որոնք ամբողջապէս բնակեցրած լինէին հայերով. շատերն խառն են քրդերի եւ տաճիկների հետ։ Եւ եթէ կան բոլորովին հայաբնակ գիւղեր, նրանց մերձակայքում դրած են մահմետականներինը, իսկ քաղաքներում միշտ խառն են բնակվում։ Եւ այսպէս, հայերի եւ մահմետականների յարաբերութիւններն անջատուած չեն։ Որպիսի հետեւանքներ են առաջ գալիս այսպիսի սերտ յարակցութիւնից։ — “Լաւ բան է, բայց ափսո՜ս, որ գաւուրին (անհաւատին) է պատկանում„ — դա մի առած է մահմետականի լեզւում։ Մահմետականը միշտ աչք ունի հային պատկանող այն ամեն բանի վրայ, ինչ որ գեղեցիկ է, ինչ որ թանկագին է։ Եւ հայի գեղեցիկ կինը ու աղջիկը չէին կարող չը գրաւել նրա հրապուրանքը։

Տաճիկը, մանաւանդ քուրդը ամեն ինչ աւելի ախորժակով է վայելում երբ նա գողացուած էր։ Գողանալ

իւր ամուսինը քուրդի համար ոչ միայն պարծանք է համարվում, այլ եւ քաջութիւն։ Եւ այդ հերոսութեանը զոհվում են մեծ մասամբ հայոց գեղուհիները։ Մի երկրորդ աւելի զօրեղ շարժառիթ պատճառ է տալիս նրանց յափշտակութեանը, այն է կրօնական մոլեռանդութիւնը, — գողանալ քրիստոնեայ կինը եւ աղջիկը, եւ նրանց դէպի մահմետականութիւն դարձնել, նա հոգեւոր վարձատրութիւն եւս ունի։

Մի անգամ խլուեցաւ աղջիկը հայրենական տնակից, այլ եւս նրան վերադառնալու յոյս չը կայ։ Մահմետականութիւնը սարսափելի օրէնքներ ունէ մի անգամ նրա ծոցը մտնող (եթէ բռնութեամբ եւս լինէր) եւ կրկին դէպի հայրենական կրօնը վերադարձող անձի համար։ Հանդիպող մահմետականը իրաւունք ունի սպանելու նրան։ Եւ երկիւղը փակում է նրա վերադարձի ճանապարհը։

Իսկ մի երկրորդ մոլեռանդութիւն նոյն իսկ հայերի կողմից ոչ սակաւ պակաս է քան մահմետականինը, որ եւ առաւելապէս պատճառ է դառնում թշուառ զոհերի կորչելուն։ Մի անգամ մահմետականի ձեռքը ընկած աղջիկը եւ կինը համարվում է որպէս պղծուած մարմին։ Նրանք կորցնում են ազգայինների մէջ իրանց համարումը եւ պատիւը. եւ այնուհետեւ դժուար թէ մի հայ տղամարդ կը ցանկանար այնպիսի մի կնոջ եւ աղջկայ հետ ամուսնական կապ ունենալ։ Այդ գիտեն թշուառ զոհերը . . . եւ եթէ նրանք այնքան քաջութիւն ունէին, որ կամենում են ազատուիլ իրանց յափշտակողների ձեռքից, այլ եւս չեն վերադառնում դէպի իրանց ազգայինները, այլ իրանց նախատինքը ծածկելու համար շատ անգամ անձնասպան են լինում, եւ կամ յուսահատութիւնից ստիպուած, ակամայ կերպով խոնարհվում են բռնութեան առաջ . . . . Եւ այս-

պէս, կրօնափոխութիւնները կանանց վերաբերութեամբ կապուած են առեւանգութեան եւ բռնաբարութեան հետ:

Այստեղից յայտնի է, թէ ինչու կրօնափոխութիւնների մասին եղած խնդիրներն շատ փոքր տեղ են բռնում պատրիարքարանի արձանագրութեանց մէջ: Որովհետեւ պատրիարքարանը ինքնակամ գանգատ սկսել չէ կարող, քանի որ ժողովրդի կողմից բողոք չէ լսում, եւ ժողովուրդը վերոյիշեալ երկու պատճառներով շատ անգամ լռում է դէպքերի մասին: Եւ եթէ Մարթայի դժբախտ անցքը չը սպառնար Բայբուրդի ամբողջ հայերի կոտորածին, հազիւ թէ նա պատրիարքարանի եւ Արզրումի կուսակալի ուշադրութեանը կարժանանար:

Մեր դիտողութիւններն կանացի սեռի մասին են, բայց կրօնափոխութիւններն տղամարդերի մէջ կատարվում են բոլորովին ուրիշ շարժառիթներից: Օրինակ շատ անգամ մի հայ մարդ իւր ազգակիցների հետ վէճեր ունի, դատ ունի, կամ որեւիցէ ոխակալութեան համար կամենում է վրէժխնդիր լինել իւր ոսոխից, այսպիսին մահմետականներից պաշտպանութիւն գտնելու համար փոխում է իւր կրօնը, որովհետեւ մահմետականութիւնը աւելի իրաւունք, աւելի դիւրութիւն է տալիս նրան չար կրքերը յագեցնելու, կամ թէ մէկը յանցանք է գործել, փոխելով իւր կրօնը, նա ազատվում է պատժից, եւ կամ ծոյլ ու թշուառ մէկն է, նա իւր օրական հացը գտնում է կրօնափոխութեան մէջ: Եւ այսպէս, տղամարդերից կրօնափոխ լինողներն ըստ մեծի մասին լինում են չար եւ անբարոյական մարդիկ, որոնք մահմետական շրջանի մէջ աւելի յագուրդ են դառնում իրանց մոլորութիւններին:

Ուրիշ պատճառներ մենք չենք ճանաչում կրօնափոխութեան մասին, որովհետեւ գիտենք, որ մահմետակա-

նութիւնը միսսիօնարներ չունի. Նրա հիմքը դրուել է սրով եւ այժմ պահպանվում է մոլեռանդութեան մէջ։

Մնում է մի քանի խօսք ասել մանկահասակ պատանիների կրօնափոխութեան մասին, այդ թշուառներին նոյնն է պատահում, ինչ որ պատահում է մանկահասակ օրիորդների հետ, որովհետեւ երկուսն էլ միեւնոյն նշանակութիւն ունին մահմետական աշխարհում....

Կրօնափոխութիւններից յետոյ պատրիարքարանի արձանագրութեանց մէջ փոքր տեղ են բռնում սպանութիւնները (6 հոգի միայն). դա շատ տխուր մի երեւոյթ է, որով մեկնվում է Տաճկաստանի հայի թշուառ դրութիւնը։ Կրկնում ենք՝ տխուր, այո՛ շատ տխուր, — եւ գուցէ այս ասացուածը կը բարձրացնէ մեր դէմ մի այսպիսի հարց. "մի՞թէ ցանկալի, որ մեծ թւով կոտորէին հայերն Տաճկաստանում։"

Մենք կեանքի եւ բնութեան մէջ կատարուած երեւոյթները թէեւ վերաբերում ենք մի նախասահմանեալ Տեսչութեան, բայց համոզուած ենք, որ ամեն մի երեւոյթ ունի իւր իրական պատճառները։ Եւ այսպէս էլ հայերի մէջ կատարուած սպանութիւնների սակաւութիւնը չենք կարող վերաբերել մահմետականների գթութեանը, թէ նրանք աւելի մարդասիրաբար են վարվում հայերի հետ, մինչդեռ իրանց մէջ աւելի մեծ թւով են կոտորում մինը միւսին։

Պարզենք մեր միտքը.

Մի հասարակութեան մէջ կատարուած յանցանքների թիւը, նրանց բնաւորութիւնը եւ տեսակը ցոյց են տալիս նոյն հասարակութեան նիւթական եւ բարոյական դրութիւնը։ Եւ յանցանքների պատճառներն ու նրանց շարժառիթներն այնքան զանազանվում են, որքան զանա-

զանվում է մի հասարակութեան կրթութեան աստիճանը միւսից եւ նրա տնտեսական դրութիւնը։

Առհասարակ նկատուած է, մի հասարակութեան մէջ աւելի մեծ թւով կատարվում են սպանութիւններ, երբ աշխատութիւնը, արդար վաստակը եւ ապրուստի ապահովութիւնը ընդհանրացած չէ ժողովրդի բոլոր դասակարգերի մէջ, երբ զօրեղը անզօրին ճնշում է եւ խլում է նրա ձեռքի վաստակը։ — Ասիական Տաճկաստանը այդ դրութեան արիւնոտ պատկերն է ներկայացնում։ Այստեղ ոչ միայն մասնաւոր գողեր եւ աւազակներ խլում են օտարի բարիքն, այստեղ ոչ միայն բռնակալ դէրէբէյներ կողոպտում են ժողովուրդը այլ աւազակներից կազմուած ամբողջ խումբեր (որպէս քուրդերի ասպատակներն) արշաւանք են գործում երկրի մի կողմից դէպի միւսը, յափշտակում են եւ ամեն տեղ տարածում են աւերմունք եւ աղքատութիւն։ — Մի փոքր ընդդիմադրութիւն յափշտակուողի կողմից վերջ է տալիս նրա կեանքին, եւ այստեղից առաջ են գալիս սպանութիւններն։

Սպանութիւնները այստեղ պատահում են կայքի յափշտակութեան եւ նրա պահպանութեան համար գործ դրուած երկու հակառակ ուժերի մէջ, եւ որքան սաստիկ է լինում ընդդիմադրութիւնը, այնքան աճում է սպանութիւնների թիւը։

Բայց քննելով պատրիարքարանի արձանագրութեանց թուանշանները, մենք բոլորովին հակառակ եզրակացութեան ենք հասնում։ Նրանցում հարստահարութիւնների թիւը հարիւրապատիկ աւել է քան սպանութիւնները։ Ի՞նչ է պատճառը։

Մենք ուրիշ պատճառ չենք գտնում, բայց միայն այն, որ հայը Տաճկաստանում ամենեւին ընդդիմադրու-

թեան զօրութիւն չէ ցոյց տալիս, նա բոլորովին կրաւորական դեր է խաղում, նա թոյլ է տալիս քրդին, տաճկին յափշտակել իր կինը, իր աղջիկը, իր մանկահասակ որդին, միայն թէ իր անձին չը դիպչեն.... Նա թոյլ է տալիս յափշտակել իր ձեռքի վաստակը, խլել իր պապերից մնացած մի կտոր հողը, միայն իր կեանքին խնայել.... Այսպիսի ստոր եւ ցած վարմունքի մէջ բնականաբար շատ փոքր թուով կը պատահէին սպանութիւններ, որովհետեւ հայը իր ընտանիքը, իր կայքը, իր պատիւը եւ ամեն ինչ որ սուրբ է իր համար՝ զոհում է միայն իր կեանքը պահպանելու համար։ Բայց նա կեանքը զոհելու եւ իրաւունքը պահպանելու քաջութիւն չունի....

Բայց սպանութիւնները մահմեդականների մէջ աւելի մեծ թուով են պատահում, որովհետեւ մահմեդականը այնպէս չէ վարվում որպէս հայը, նա գիտէ չարին չարով պատասխանել....

Գուցէ ոմանք կը նկատեն, թէ ի՞նչ կարող է անել ողորմելի հայը, երբ թուրքը եւ քուրդը սուր ունեն, բայց հայը չունի, նա ի՞նչով կարող է ընդդիմանալ իր զինուորուած թշնամուն։ Նա պէտք է խոնարհուի բռնութեան դէմ եւ թոյլ տայ, որ կողոպտեն իրան, որպէս զի իր անձը կենդանի պահէ։ — Այս բոլորը միամիտ մարդիկների կարծիքն է, որոնք նայում են առաչեօք անարդար երեւոյթների, որպէս Վերին Տեսչութիւնից սահմանուած օրէնքների վրայ։ Բայց մենք այս բանին չենք հաւատում, որ Աստուած տաճկի եւ քրդի ձեռքում սուր տուած լինէր հային կողոպտելու համար, եւ ոչ էլ մտածում ենք, թէ դա ժողովրդի մեղքի համար է, որ Աստուած պատժում է նրանց.....։ Հայի ստրկութեան եւ նրա այժմեան թուլասրտութեան պատճառներն այնքան բազմա-

դիտալ են, որ պէտք էր մեր ամբողջ պատմութիւնը քրքրել այս հարցը բացատրելու համար, բայց դա դուրս է մեր յօդուածի նպատակից։ Այսքանը միայն կասենք եթէ մի հայ, որ իւր գրպանում ունէ մի քանի ոսկի, փոխանակ այն գումարը տալու եւ մթերք գնելու, որ կրկին շահէ, եթէ նրա մի մասը տայ եւ մի զէնք գնէ իւր մթերքը եւ իւր գլուխը պահպանելու համար, իմ կարծիքով, ոչ ոք նրան չի արգելի։ Եւ եթէ նա այդ չէ անում, այլ հրէայի նման միշտ շահասիրութեան ետեւից է ընկած, ո՞վ է մեղաւոր, որ նրան կողոպտում են։

Այն ուրիշ բան է երբ մի կառավարութիւն ինքն է պահում զէնքը իւր ձեռքում, իրան միայն է սեփականում նրա գործածութեան իրաւունքը, եւ հետեւապէս ինքն հսկում է հպատակների հանգստութեան եւ ապահովութեան վրայ, — բայց քանի որ Տաճկաստանը այդ անելու զօրութիւն չունի, այն ժամանակ հպատակների վրայ է մնում անձնապաշտպանութեան հոգսը ինչ կերպով եւ լինէր։

“Թող ուրիշն փրթէ, ես խրփշտեմ„ ասում է հայկական առածը. — դա մի ծոյլ ազգի առած է, որի մէջ բովանդակվում է նրա կեանքի ամբողջ վարդապետութիւնը . . . . ։ Հայը դեռ սպասում է . . . . Հրէայի համբերութեամբ սպասում է . . . . եթէ ուրիշի արեան գնով քրիստոնեաներին հանգստութիւն կը բաշխուէր, գուցէ իրան էլ մի պատառ կը գցէին։ Լաւ երազ է, եթէ ի բարին կատարուի . . . . ։

Հայը իւր ամբողջ կեանքում այսպէս է վարուել. — “Թող ուրիշը փրթէ, ես խրփշտեմ„ եւ իւր ստրկութիւնն այս քաղաքականութեանը հետեւելու արդիւնքն է։ Նա այսպէս է վարուել ոչ միայն իւր քաղաքական կեանքում,

այլ եւ գիտութեան, արհեստի, ճարտարութեան մէջ նոյնն է եղել. — Նա ոչինչ չէ արդիւնաբերել, ոչինչ չէ տուել մարդկութեանը, այլ միշտ "խլփշտել է ուրիշի փրթածը . . . . ։„ Մենք շատ խիստ լեզու չենք գործածի հայի այս վարմունքի դէմ, միայն կասենք, որ մուրացկանութիւնը ծոյլերի յատկանիշն է . . . . եւ մուրացկանի փորին շատ անգամ չի աջողուի կշտանալ օտարի փշրանքով . . . . ։

Դառնանք դէպի մեր խօսքը.

Ասացինք, թէ հայերի վերաբերութեամբ կատարուած սպանութիւնների փոքր թուանշանները, պատրիարքարանի արձանագրութեանց համեմատ, ապացոյց են նոյն իսկ հայերի թուլութեանը եւ նրանց ստրկային հոգու ցածութեանը։ Այս հարցը աւելի պարզելու համար հարկաւոր ենք համարում փոքր ինչ երկար խօսել հարստահարութիւնների եւ կալուածական խնդիրների մասին, որոնք պատրիարքարանի արձանագրութեանց մէջ համեմատաբար աւելի մեծ տեղ են բռնում։

* * *

Հարստահարութիւններն կատարվում են ըստ մեծի մասին տաճկական Հայաստանի հիւսիս արեւելեան մասնում, եւ կենտրոնը որպէս երեւում է պատրիարքարանի արձանագրութիւններից, համարելու է Վանայ ծովակի շուրջը դրուած երկիրները։ Այս երկիրներն են՝ Արզրումի նահանգը իւր գաւառներով, Տիգրանակերտի նահանգը իւր գաւառներով եւ Վասպուրականի երկիրը իւր գաւառներով։ Դրանք այն երկիրներն են, որոնք աւելի խիտ բնակեցրած են հայերով, եւ աւելի հեռու դրուած են Կ. Պոլսից։

Հարստահարութիւնները կարելի է երեք տեսակի բաժանել հարստահարութիւններ, որ կատարվում են կա-

ռամկարութեան պաշտօնակալների կողմից, հարստահարու-թիւններ, որ կատարվում են քուրդ դէրէբէյիների (բռնա-կալ, ապստամբ) եւ թուրք ազդեցութեան տէր անձինքների կողմից, հարստահարութիւններ, որ կատարվում են մահ-մետական հասարակ ժողովրդի կողմից։

Կառավարութեան պաշտօնակալների կողմից եղած հարստահարութիւններն ըստ մեծի մասին վերաբերում են տէրութեան տուրքերին եւ հարկահանների անգթու-թեանը։ Տուրքերի տեսակներն եւ նրանց վճարման ձեւերն այնքան զանազան են, որ անկարելի է այդ մասին մի որոշ տեղեկութիւն տալ։ Որովհետեւ իւրաքանչիւր երկրում միեւնոյն տուրքը թէ իւր քանակութեան մէջ եւ թէ նիւթի հաւաքման մէջ տարբերվում է, աւելի կախումն ունենալով հարկահանների բարոյական յատկութիւնից, քան թէ օրէնքի տրամադրութիւնից։ Բայց ժողովրդի գան-գատներն գլխաւորապէս վերաբերում են տուրքերի անար-դար բաշխման, որով մահմետականների հարկերի ծանրու-թիւնը ընկնում է հայերի վրայ։ Հայը դիւրընտել եւ հլու բեռնակիր է, նա եզի համբերութեամբ կրում է իւր ծանրութիւնը, որքան եւ անտանելի լինէր նա . . . . ։ Իսկ տաճիկը կարող է ըմբոստանալ, կարող է թօթափել իրանից բռնութեան ձեռքից դրած բեռը . . . ։

Զինուորական տուրքը հայերի վերաբերութեամբ այն պարտաւորութիւնների կարգիցն է, որ իւր հետ արտօնու-թիւններ չունի։ Հայը, որպէս մեր նկատողութեան մէջ յայտնեցինք, զինուորի փոխարէն փող վճարելով, չէ վայե-լում այն բացառիկ իրաւունքները, որ շնորհվում է զինուոր տուող մահմետականին։ Հայի զինուորական տուրքը հա-մարեա մի կերպ տուգանք է, որ նրան տուժել են տալիս, օգուտ քաղելով նրա տխմար ներողամտութիւնից . . . . ։

Երբ առաջին անգամ բարձրացաւ Տաճկաստանի զինուորագրութեան հարցը, մեր պարբերական թերթերը դրա վրայ երկար վիճեցին։ Ես դեռ յիշում եմ այն յիմար վիճաբանութիւնները։ Համարեա մեծ մասի խօսքերը յանգում էր այս ասացուածի մէջ. “Հայը թող զինուորի փոխարէն փող տայ. նա փողը միշտ կարող է աշխատել բայց հայի համար թանգ է իւր արիւնը։„

Որքան վախենում է այդ ազգը արիւնից, ամենեւին չը մտածելով, թէ փրկութիւնը արեան մէջն է . . . . ։

Մեր ազգի պատմութիւնը մեզ ուսուցանում է, երբ հայերն պարսիկների, մօղոլների, արաբների եւ այլ տիրապետող ազգերի զօրքին մէջ զինուորներ ունէին, նրանք քիչ չէին պաշտպանում իրանց հայրենիքը նոյն ազգերի բարբարոսութիւններից, որոնց ծառայութեան մէջն էին։ Այսպէս էլ, հայը Տաճկաստանի զինուորութեան մէջ, եթէ ուրիշ օգուտ չը տայ իւր հայրենիքին, գոնէ այնքանը կը սովորէր, թէ բացի ստրկական խոնարհութիւնից կայ եւ մի ուրիշ բան անձնապաշտպանութեան համար՝ — զէնքը։

Բայց մենք համոզուած ենք, եթէ հայերն թուրքաց զօրքերի մէջ զինուորներ ունենային, այժմ ասիական Տաճկաստանի հարստահարութիւններն մեծ մասամբ բարձուած կը լինէին։ Այս խօսքը երկար բացատրութիւնների կարօտ չէ։ Ով որ ճանաչում է Տաճկաստանը, ով որ գիտէ, թէ ինչ աղբիւրներից են ծագում հարստահարութիւնները, նա եւս մեզ հետ կը համոզուի, թէ զինեալ քրդի դէմ միայն զինեալ մարդը կարող է պաշտպանել իւր կայքը, իւր ընտանիքը, իւր պատիւը եւայլն. — եթէ ոչ քրդին արքունի ֆերմաններով կարգ-կանոնի մէջ պահել անկարելի է։

Մեր խօսքը կառավարութեան պաշտօնականների հարստահարութեանց մասին էր: Պատրիարքարանի արձանագրութեանց մէջ զինուորական տուրքից յետոյ աւելի աչքի է զարկում տասանորդէ տուրքը, որ ստացվում է մշակութեան բերքերից: Այստեղ մշակ մարդու թշուառութիւնը հասնում է վերջին աստիճանի անկարեկցութեան: Գիւղացին ստիպուած է երկու տեսակ տուրք վճարել այն հողի համար, որը մշակում է, մինը՝ կալուածական տուրք կամ հողային հարկ, միւսը՝ մշակած բերքի տասանորդը: Դա այն ժամանակ է լինում երբ հողը միմիայն մշակի սեփականութիւնն է: Բայց որպէս երեւում է պատրիարքարանի արձանագրութիւններից, հայերի սեփականութիւն եղած հողերը մեծ մասամբ թուրք եւ քուրդ դէրէբէյլէրը բռնութեամբ յափշտակել են: Այս դէպքում հայը դարձել է դէրէբէյլի կամ իւր նոր աղայի չէատոճ-ծորդ: Այժմ նա իւր մշակած հողի համար պարտաւոր է վճարել չորս տեսակ տուրքեր, որովհետեւ երկու աղայ ունի, մինը՝ կառավարութիւնը, միւսը՝ իւր նոր կալուածատէրը: Նա վճարում է կառավարութեանը կալուածական տուրքը եւ տասանորդը առանձին, բացի դրանից վճարում է կալուածատիրոջը միեւնոյն հողի համար առանձին կալուածական տուրք եւ բերքի տասանորդ: Երեւակայեցէք մշակ մարդու դրութիւնը, եւ այն ժամանակ հասկանալի կը լինի, թէ ինչու նա թողնում է իւր արօրը, թողնում է հայրենի երկիրը եւ գաղթում է օտար երկրներում բախտ որոնելու . . . .

Ցիշեալ տուրքերի վճարման ձեւերը աւելի եւս սաստկացնում են մշակի անբախտութիւնը: Կառավարութեան պաշտօնականները տասանորդի տուրքը տալիս են կապալով իրանց մերձաւորներին, եւ գաղտնի կերպով նրանց հետ

ընկեր են դառնում։ Կապալառուն, վարձկանը (մուլթէզիմը) աւազակի չափ անգութ կը լինի եւ յափշտակող, մանաւանդ երբ իւր գործունէութեանը եւ իւր շահերուն ընկերակից է։ Պատրիարքարանի արձանագրութիւնները բաւականին ապացոյցներ ունին, թէ որպէս են կողոպտում կապալառուները։ Նրանք բացի սովորական տասանորդից առնում են շահնալըգ եւ օլչէք հագգը կոչուած արգելուած տուրքերը. Նրանք, երբ բերքը գին չէ բերում, թողնում են, մշակի հունձքը փտում է, ոչնչանում է կալի մէջ, եւ այնուհետեւ տասանորդի փոխարէն պահանջում են արծաթ փող։ Իսկ երբ որ մշակը փող չունի վճարելու, ծախել են տալիս նրա երկրագործական անհրաժեշտ պարագայքը եւ նրա անասունները։ Ահա գլխաւոր պատճառը, թէ ինչու հողագործութիւնը յառաջ չէ գնում ասիական Տաճկաստանում եւ ի՞նչու, սովը յաճախ կրկնվում է այս երկրում։ Ի՞նչ անէ մշակը, երբ ինքն կառավարութիւնը ուղղակի եւ անուղղակի կերպով նրա ձեռքի վաստակը յափշտակում է, եւ եթէ մի բան էլ մնացել էր, այն եւս բռնութեամբ տիրացած կալուածատէրն է տանում։

Մեր յօդուածի համառօտութիւնը չէ ներում ուրիշ մանրամասնութիւնների մէջ մտնել այսքանը միայն կասենք, որ նոյն երկրում, միեւնոյն հողի վրայ բնակւող մահմետական մշակի հետ այս բաները չեն պատահում։

Կառավարութեան պաշտօնակալների դատաստանական խտրութիւնները մահմետականների եւ ոչ-մահմետականների վերաբերութեամբ ոչ սակաւ զրկում են հայերին արդար իրաւունքներից, եւ նրանց մասին կատարուած անիրաւութիւններն միշտ մնում են անպատիժ։ Այս հանգամանքներում հայը մի ճար միայն ունի

դատաւորի արդարութիւնը իւր կողմը գրաւելու․ այն է՝ իւր արծաթով ամոքել նրա կաշառասէր սիրտը։ Իսկ դա խիստ հազիւ է յաջողվում նրան, որովհետեւ շատ անգամ իւր արծաթով դատաւորի քսակը լցնելէն յետոյ, նա դարձեալ կորցնում է իւր իրաւունքը։ Դատաւորն միշտ դէպի այն կողմն է թեքվում, ուր ուժ կայ, բայց Տաճկաստանում ուժ եւ զօրութիւն ունի միայն մահմետականը, վայելում է օրինական առանձնաշնորհութիւններ, որից զուրկ է քրիստոնեան։ Օրինակ, նա կարող է անթիւ վկաներով իրան արդարացնել բայց հայի վկայութիւնը չէ ընդունվում։ Եւ վկայութիւնը մահմետական օրէնսգրութեան մէջ դեր է խաղում։ Շատ ժամանակ չէ, որ Կ․ Պոլսի լրագիրներում կարդացինք մի դէպք, որ պատահել էր Վանայ կողմերում։ Մի մահմետական, առանց գրաւոր ապացոյցի, միայն սուտ վկաներով մի հայի իրան պարտական էր արել, եւ բանտ դնել տալով, փողը ստացաւ։ Այսպէս ամեն մահմետական կարող է ցանկացած հային կողոպտել․ վկաներ նրա համար պակաս չեն լինի․ եւ ինքն դատաւորը կը նպաստէ նրա չարագործութեանը, որովհետեւ ստացած արծաթի մի մասն էլ իրան է պատկանում․ ․ ․ ․ ։

Մահմետականը ամեն մի հայի ճակատի վրայ կարդում է այս խօսքերը՝ “գաւուր եւ ռայեայ„ — եւ այս խօսքերի մէջն է բովանդակվում նրա համոզմունքի ամբողջ վարդապետութիւնը, թէ հայը ուրիշ ոչինչ է, բայց միայն Աստուծուց իրան շնորհուած մի որս, որին նա իրաւունք ունի ամեն կերպով իւր պիտոյքներին ծառայեցնելու․ ․ ․ ․ ։ Եւ մահմետականը չէ սխալվում իւր կարծիքի մէջ, քանի որ հայը իւր կրաւորականութեամբ արդարացնում է նրա կարծիքը․ ․ ․ ․ ։

Այսքանը բաւական է կառավարութեան պաշտօնակալների մասին, այժմ դառնանք այն հարստահարութիւններին, որ կատարվում են մասնաւոր բռնակալների (դէրէբէկների) եւ հասարակ ժողովրդի կողմից։

Պատրիարքարանի արձանագրութեանց մէջ աւելի մանրամասն տեղեկութիւններ կան այդ մասին, եւ պատրիարքարանի Բարձ. Դրան մատուցած բողոքագրերի մեծագոյն մասը նուիրուած են գաւառական հարստահարութիւններին։ Ընթերցողը արդէն բաւական գաղափար ստացած է, թէ ինչ տեսակ հարստահարութիւններ են կատարվում, եւ մենք դրա վրայ երկար խօսելու նպատակ չունինք, միայն կամենում ենք մասնաւորապէս ցոյց տալ այն աղբիւրները, որտեղից ծագում են հարստահարութիւնները։

Տաճկական Հայաստանի ժողովրդաբնակութեան մէջ հայերից յետոյ բազմութիւն են կազմում քրդերը, մի ազգ, որ մինչեւ այսօր ապրում է նախնական կեանքով, մի ազգ, որ արհեստ եւ երկրագործութիւն չունի, այլ աւազակութիւնը համարում է արդար վաստակ եւ սպանութիւնը՝ քաջութիւն։ Քրդերի մեծ մասը վարում են չուական կեանք եւ իրանց անասուններով թափառում են հայոց լեռներում, իսկ շատ փոքր մասը կիսահաստատաբնակ դրութիւն ունի։

Տաճկական կառավարութեան թոյլ զօրութիւններն անօգուտ եղան վայրենի քրդերը նուաճելու, եւ Բանդէ-ձանը իւր բոլոր մարդասիրական տրամադրութեամբ չը կարողացաւ մեղմացնել այս բարբարոսների՝ քրիստոնեաների վերաբերութեամբ կատարած անգթութիւնները։ Քուրդ էշիրաթնէրը միշտ մնացին անզուսպ եւ մինչեւ այսօր շարունակում են իրանց աւազակութիւնները[1]։ Այս այսպէս

[1] Մինչեւ այսօր ասիական Տաճկաստանում, առաւելապէս Հայաս-

լինելուց յետոյ կառավարութիւնը աւելացրեց քուրդերի վրայ նաեւ չէրքէզները, Կովկասի լեռների գազան որդիքը, որոնք իրանց կեանքի ձեւերով շատ չեն զանազանվում քուրդերից . . . . :

Քուրդերի հարստահարութիւնների մէջ յափշտակութիւնները, մանր գողութիւնները եւ աւազակութիւնները այնքան սովորական են դարձել, որ կարծես թէ, ժողովուրդը ընտելացել է նրանց եւ արտաքոյ կարգի բան չէ համարում: Այս պատճառով, հազիւ թէ մէկը վստահանում է բողոք բարձրացնել . . . "Ի՞նչ, քուրդ է, նրա գործն այս է" ասելով, ինքն իրան մխիթարում է: Եւ ուրիշ ճար չունի ողորմելին, նա ստիպուած է լռել, եթէ ձայն բարձրացնէ, այն քուրդը, որ այսօր գողացաւ նրա ոչխարը կամ եզը, միւս օրը կը կտրէ տիրոջ գլուխը:

Բայց քուրդը իւր արհեստի մէջ ծոյլ չէ, նա միշտ չէ բաւականանում մանր գողութիւններով: Շատ անգամ բոլորովին կազմակերպուած խումբեր, որոնք բաղկանում են հարիւրաւոր ձիաւորներից, արշաւանքներ են գործում եւ ասպատակում են մի կողմի ամբողջ գիւղօրայքը, աւար են առնում ոչխարների հօտեր եւ այլ անասուններ, եւ զրկում են գիւղացիներին բոլոր ունեցածից: Այսպիսի դէպքերում, որպէս սովորաբար ասում են, "դանակը

---

տանի կողմերում դեռ եւս գտնվում են այնպիսի երկրներ, օրինակ. Բուլանըխ, ուր քուրդերն բոլորովին անկախ եւ ազատամբ դիրք են պահպանում: Բուլանըխի Զուրըկոյ կոչուած քուրդ ցեղի հետ խառն բնակվում են նաեւ հայեր, որոնք միեւնոյն վայրենութեան մէջ են որպէս եւ իրանց բնաւորութեամբ շատ չեն զանազանվում: Այստեղ հայերն էլ քուրդերի հետ աւազակութիւններ են անում, դէպի զանազան կողմեր արշաւանքներ են գործում, եւ մինչեւ անգամ չեն խնայում, եթէ պատահելիս լինեն իրանց կրօնակիցներին: Իսկ Տաճկաստանի եւ Պարսկաստանի սահմանի գծի վրայ բնակուած քուրդերն համարեա. — բոլորն ազատամբ եւ անզուսպ են, եւ անդադար անցնում են սահմանի գիծը որ կողմից որ փոքր ինչ նեղվում են:

ոսկորին է հասնում„ եւ ժողովուրդը ստիպուած է բողոք բարձրացնել։ Բայց ո՞ւմ, ո՞վ նրա ձայնը լսողը։ — Խղճալի ձայնը միշտ մնում է իւր կուրծքի մէջ խեղդուած . . . .

Պատրիարքարանի արձանագրութիւններից երեւում է, որ գաւառներից եկած բողոքներն առ հասարակ վերաբերում են այն տեղերին, որոնք աւելի մօտ են դրուած քաղաքներին, որպիսի են Վանը, Մուշը, Բաղէշը, Տիգրանակերտը, Արզրումը եւայլն։ Այդ այն պատճառով չէ, որ մեծ քաղաքների մօտ աւելի շատ են պատահում հարստահարութիւններ, այլ ընդհակառակն, հարստահարութիւններն որքան մօտենում են մեծ քաղաքներին այնքան նուազում են։ Բայց մեծ քաղաքներում հայոց առաջնորդներ կան, նահանգապետ փաշաներ կան, եւ ժողովուրդը առաջնորդարանի միջնորդութեամբ կամ ուղղակի կարողանում է իւր բողոքները հասցնել Կ. Պոլիս։ Բայց անկիւններում, այսինքն կենդրոնական քաղաքներից հեռու գտնուած տեղերում աւելի շատ եւ աւելի անգութ կերպով են կատարվում հարստահարութիւններն, բայց բոլորն կորչում են անյայտութեան մէջ։ Որովհետեւ այն կողմերի թշուառ ժողովուրդը մինչեւ անգամ չը գիտէ, թէ Կ. Պօլսում պատրիարքարան կայ, սահմանադրութիւն կայ եւ ինքն կարող է այնտեղ դիմել։

Կ. Պոլսի պատրիարքարանը իւր թոյլ սահմանադրական վարչութեամբ մինչեւ այսօր չէ կարողացել իւր պաշտօնէութիւնը այնքան տարածել, որ կարողանայ ասիական Տաճկաստանի բոլոր հայ ժողովրդաբնակութեան վրայ ազդել։ Եւ այս պատճառով ժողովրդի եւ ազգային վարչութեան կենդրոնի մէջ փոխադարձ յարաբերութեան կապեր չեն կազմուել։ Ես անձամբ առիթ եմ ունեցել լսել թշուառ հայի գանգատները իւր դրութեան վրայ. երբ

նրան ասում ես, թէ ինչու չես բողոքում. սովորական պատասխանը լինում է՝ «Ո՞ւմը բողոքեմ. . . .» Թշուառականը չը գիտէ մինչեւ անգամ, թէ յանցաւորների համար դատարաններ կան. Նա ճանաչում է մի դատարան միայն, այն է՝ երկինքը . . . . :

Եւ ինչ հարկ կայ բողոքելու, քանի որ ժողովուրդը փորձուած է եւ գիտէ, որ իւր գանգատներով աւելի վատթարացնում է իւր վիճակը: Որովհետեւ բողոքներն թէ պատրիարքարանի եւ թէ Բարձ. Դրան կողմից որեւիցէ բաւականութիւն չը գտնելով, այսպիսով աւելի դրգռվում է բռնակալի վրէժխնդրութիւնը, եւ եթէ նա առաջ փոքր ի շատէ երկիւղ ունէր դատաստանից, այնուհետեւ բոլորովին միամտանում է, եւ աւելի վստահութեամբ սկսում է տանջել իւր զոհերը: Այս դրութեան մէջ հային մի ելք է մնում, այն է խոնարհուիլ իւր թշնամու անգթութիւնների առջեւ եւ բոլորովին անձնատուր լինել նրա կամքին . . . . :

Ահա այստեղից է յառաջ գալիս այն դրութիւնը, որ նկատվում է պատրիարքարանի արձանագրութիւններից. ամբողջ հայոց գիւղօրայք եւ մինչեւ անգամ վանքերը ու եկեղեցիները քուրդ դէրէբէյներին, թուրք բռնակալներին, եւ ազդեցութիւն ունեցող խօջաներին ու շէյխերին հարկատու են դառնում: Դա մի ակամայ հարկատուութիւն է, որ ժողովուրդը ճարահատեալ վճարում է իւր հարստահարողին, որպէս զի իրան հանգիստ թողնէ: Այսպէսով ժողովրդի վրայ ծանրանում է երկու տեսակ հարկատուութիւն, մինը՝ տաճկաց կառավարութեանը, միւսը քուրդ կամ թուրք դէրէբէյներին եւ ինքնիշխան բռնակալներին: — Այս վիճակին ենթարկվում է ոչ միայն մի ամբողջ հասարակութիւն, այլ եւ մասնաւոր անձինք (մանաւանդ

երբ փոքր ի շատէ ունեւոր են) մնում են այս եւ այն ազդեցութիւն ունեցող Թուրքի եւ քուրդի հովանաւորութեան ներքոյ, որպէս զի ուրիշներն նրանց չը վնասեն։ Բայց այս պաշտպանութիւնը շատ թանգ է նստում, պաշտպանեալը թէ իւր կայքով եւ թէ իւր պատւով դառնում է իւր աղայի գերին։ Դա մի կամաւոր ստրկութիւն է, որով անզօրը հպատակում է հզօրին եւ դառնում է նրա կամքի բոլորովին կրաւորական առարկայ.... Դա Ֆէոդալական սկիզբն է, որի տխուր օրինակները տեսնվում են նաեւ պատրիարքարանի արձանագրութեանց մէջ։ Մոգաց կողմերում Տինիս աւանի քուրդերն տեղային հայ գիւղացիներին որպէս ճորտ եւ գերի իրանց մէջ վաճառում են....։

* * *

Տաճկաստանի բարձր կառավարութիւնը նկատելով, որ քուրդերի եւ ուրիշ վայրենի ցեղերի բարբարոսութիւններն յառաջ են գալիս նրանց թափառական կեանքի բնաւորութիւնից, վերջին ժամանակներում սկսեց աշխատել, որ նրանք թողնեն չուական կեանքը, թողնեն խաշնարածութիւնը եւ հաստատ բնակութիւններ ունենան, եւ սկսեն պարապուել հողագործութեամբ։ Կառավարութիւնը այս դրութեան մէջ մտածում էր զսպել քուրդերին եւ ուրիշ վայրենի ցեղերին։ Նպատակը վատ չէր, բայց նա սխալուեցաւ գործադրութեան մէջ։ Որովհետեւ փոխանակ քուրդերին Հայաստանի լեռներից հաւաքելու եւ նրանց Տաճկաստանի մի անբնակ կողմում (որպէս են Միջագետի եւ Ասորեստանի անապատներն) գաղթեցնելու, կառավարութիւնն նրանց թոյլ տուաւ հէնց Հայաստանում իրանց համար բնակութեան եւ մշակութեան տեղեր բռնել։ Բայց որպէս։

Հողերն հայերի ձեռքումն էին գտնվում, պապերից եւ հայրերից մնացել էին նրանց որպէս ժառանգութիւն։ Քուրդին դժուար էր փողով հայից հող գնել. որովհետեւ նա սովորած էր ամեն ինչ բռնութեամբ խլել հայից, ինչ որ իրան պէտք էր։ Այսպէս էլ արեց։ — Այստեղից յառաջ եկաւ հարստահարութեան մի նոր խնդիր, այն է՝ հողային կամ կալուածական խնդիրը։

Պատրիարքարանի առաջին Տեղեկագրի արձանագրու-թեանց մէջ, այսինքն մինչեւ 1872 թուականը, հողային կամ կալուածական խնդիրների մասին ամենեւին յիշա-տակութիւններ չը կան։ Կը նշանակէ, մինչեւ վերոյիշեալ թուականը հայերն իրանց հողերի եւ այլ կալուածների տէրն էին։ Դա այն ժամանակին է վերաբերում, երբ քուրդերն բոլորովին չուական կեանք էին վարում եւ տա-կաւին հողի հետ գործ չունէին։ Բայց երբ կառավարու-թեան հրամանով նրանք սկսեցին փոքր առ փոքր հաստատ կացութիւն հիմնել, շատ բնական էր, որ պէտք է ծագեր հողային խնդիրը։

Այս խնդիրը, որպէս ասեցինք, երեւան է գալիս 1872 թուականից յետոյ եւ պատրիարքարանի երկրորդ Տեղեկագրի արձանագրութեանց մէջ մենք գտնում ենք նրա յիշատակութիւնը։ Մինչեւ այն օր հայերի միայն շարժական կայքը յափշտակող քուրդերն եւ այլ վայրենի ցեղերն, այնուհետեւ սկսում են ձեռնամերձ լինել նրանց անշարժ կայքերին։ Նրանք զանազան գաւառներում հայերից յափշտակում են մինչեւ 363 գիւղօրայք իրանց պատկանած հողերով։ Գաւառների եւ գիւղերի, նաեւ յափշտակող-ների անունները մի ըստ միոջէ գրուած են Տեղեկագրի մէջ։ Յիշեալ գիւղերից շատերի հայ բնակիչներին քուր-դերն բոլորովին արտաքսում են եւ կալուածները սեփա-

կանում են իրանց։ Բայց գիւղերի մէկ մասի հայ բնակիչ-ներին իրանց տեղն են թողնում, միայն հողերը նրանց ձեռքից խլելով, իրանք դառնում են կալուածատէր։ Եւ այսպէս հայերին հպատակեցնելով, քուրդերն նրանց հայ-րենական հողը իրանց մշակել են տալիս, տուրք եւ տա-սանորդ են առնում, եւ մինչեւ անգամ բերքի կէս մասը իրանք են տանում։ Բացի յիշեալ 363 գիւղերից եւ աւաններից քուրդերի ձեռքն են անցնում Սղերտի գաւառի, Զարանջակի գաւառի եւ Զարջամբայի գաւառի բազմաթիւ հայաբնակ գիւղերի կալուածներն, որոնց անուններն նշա-նակուած չեն։

Քուրդերն չեն բաւականանում հայերի միայն անձնա-կան կալուածներով. նրանք սկսում են տիրել նաեւ վան-քային կալուածները. եւ 21 վանքերի ընդարձակ հողերն զոհ են դառնում նրանց յափշտակութեանը։ Նաեւ վան-քերից շատերը քարուքանդ են անում, եւ բոլորովին ջնջում են նրանց յիշատակը....

Պէտք է ի նկատի ունենալ, որ յիշատակութիւնների մէջ խառն են՝ ոչ միայն քուրդերի հասարակ ժողովուրդը, այլ գլխաւորապէս նրանց **բէկերը**, հոգեւոր **շէյխերը** ու **մօ—ֆրիները**, եւ թուրք **աղաները**, բացի դրանցից եւ զա-նազան պաշտօնականներ, որոնք իրանց բռնակալութեան հետ միացրած ունին եւ ապահովութիւն կառավարու-թեան կողմից։

Բարձր կառավարութիւնը փոխանակ յիշեալ յափշտա-կութիւնների առաջն առնելու, փոխանակ հայ ժողովրդի բողոքները լսելու, խիստ անտարբեր կերպով է նայում այս անիրաւութիւնների վրայ։ Կարծես թէ, նա աւելի ուրախ էր, որ այդ այդպէս էր լինում։ Նա մտածում էր, թէ հայը իմ հլու հպատակն է, նա եթէ հող էլ չունենայ,

դարձեալ իւր գլուխը կը պահէ, բայց ապստամբ քուրդին պէտք է մի կերպով կապել երկրի հետ, որ նա չը շարժուի . . . .

Այս կարծիքը առանց ապացոյցի չէ, քանի որ տեսնում ենք, որ հայերին պատկանող կալուածների մեծ մասը ինքն կառավարութիւնը յափշտակելով, տալիս է մահմետականներին[1]։ Եւ որպէս զի իւր անիրաւութեանը մի օրինական ձեւ տայ, նա հնարում է Ռաֆոֆ խաբէական օրէնքը։ Այս օրէնքի հիման վրայ ամեն հող, որ մնացել էր մի քանի տարի անմշակ, նա համարվում է մահլուլ, այսինքն անտէր եւ կառավարութեանը պատկանող։ Այսպիսի հողերը ինքը կառավարութիւնը գրաւելով, շատ չնչին գնով արձանագրում է մահմետականների վրայ եւ նրանց անունով արքունի կալուածագիր է տալիս։ Այսպէսով հայերն կարող էին զրկուիլ իրանց կալուածների մեծ մասից, ահա պատճառը։

Ընթերցողն գուցէ յիշում է, որ հայերը հարկահանների եւ տասանորդի կապալառուների հարստահարութիւններից ստիպուած, շատ անգամ իրանց հողերը անմշակ թողնելով, գաղթում են դէպի Կ. Պոլիս, կամ մի այլ քաղաք, համալութիւնով եւ ուրիշ տաժանական աշխատութիւնով հաց վաստակելու։ Հողը մնում է անտէր, թէեւ գաղթականի կամ պանդուխտի ընտանիքը մնացել էր հայրենիքում նոյն հողի մօտ. բայց նա կառավարութեան հայեացքով անտէր է համարվում, քանի որ

[1] Կառավարութեան յափշտակած հողերն բոլորովին տարբեր են այն գիւղօրայքից, որոնց մասին յիշուեցաւ։ Եւ Ռաֆոֆ օրէնքը այնքան խառնիճաղանճ մի բան է, որ ամբողջ յօդուածներ պէտք են բացատրելու այս խորամանկ կալուածական օրէնքի տրամադրութիւնները, որով հողը անունով միայն պատկանում է այս եւ այն մարդուն, բայց իսկապէս նա տէրութեան սեփականութիւն է։

մշակող չունի։ Ի նկատի ունենալով Ասիական Տաճկաստանի այնքան բազմաթիւ հայ գաղթականները, որոնցից միայն 45 հազար հոգի Կ. Պոլսում է գտնվում, շատ հասկանալի էր, թէ որքան հայերին պատկանող հողեր մնացած կը լինեն անտէր եւ անմշակ։ Այսպիսի հողերը տէրութիւնը մահլուլ համարելով, տալիս է մահմետականներին, եւ թշուառ հայը պանդխտութիւնից վերադառնալով, գտնում է իրան զրկուած այն միակ հայրական ժառանգութիւնից, որ նրա վերջին յոյսն էր։

Տաճկաց կառավարութիւնը չէ խնայում մինչեւ անգամ վանքային եւ եկեղեցական կալուածներին. վանքը եւ եկեղեցին նրա օրէնքով մի վերացական անձնաւորութիւն է, նա չէ կարող կալուածատէր լինել։ Եւ հայ բարեպաշտների երկար դարերից հետէ իրանց նուիրական տեղերին ընծայած հողերը, որոնցով ապահովուած էր վանքերի գոյութիւնը, ընկնում են մահմետականների ձեռքը։ Պէտք է գիտենալ հայոց վանքերի այն բազմաթիւ քանակութիւնը Ասիական Տաճկաստանում, պէտք է գիտենալ թէ որքան ընդարձակ տարածութեամբ տեղեր պատկանում էին վանքերին, որպէս զի հասկանալի լինի ազգային հարըստութեան այս մեծ կորուստը։

Հայը Հայաստանում հազարաւոր թշուառութիւններ կրելով, եւ ամէն տեսակ հարստահարութիւնների համբերելով, մի բանով միայն մխիթարւում էր իրան, թէ նա իւր հայրերի քրտինքով սրբուած հողի տէրն է։ Բայց այս մխիթարութիւնից եւս զրկուեցաւ նա։ Մի կողմից քրդերն բռնութեամբ խլեցին նրա ձեռքի հողը, միւս կողմից, ինքը կառավարութիւնը յափշտակելով, յանձնեց մահմետականներին, էլ ի՞նչ մնաց։

— Հայի ապագան Տաճկաստանումն է, ասում են կարճատեսները։ Մենք չենք հասկանում, թէ ի՞նչ ապագայ

կարող է լինել մի երկրում, ուր կեանքի եւ կայքի ապահովութիւն չը կայ: «Յետոյ լաւ կը լինի . . .» երեւակայում են կարճատեսները . . . .

Ով որ չէ խոստովանում մահմետականութեան կլանող եւ ոչնչացնող բնաւորութիւնը, նա ուրանում է պատմութիւնը. բայց ուրանալ պատմութիւնը, նշանակում է, ուրանալ ճշմարտութիւնը:

Որ եւ իցէ ժողովրդի համար ոչինչ բախտաւոր ապագայ գուշակել չէ կարելի, քանի որ նրա ապրուստի պահանջներն հաստատուն հիմքերի վրայ կայացած չեն, քանի որ նա թէ նիւթապէս եւ թէ բարոյապէս մաշվում է եւ կլանվում է մի ուրիշ եւ աւելի զօրեղ տարրից: Ասիական Տաճկաստանի հայը ապահովուած դրութիւն չունի եւ դրա մեծ ապացոյցն այն է, որ նա իւր տան մէջ ապրուստ ճարել չէ կարողանում, եւ ինչ որ էլ վաստակում է, նրա ձեռքից խլում են, եւ նա միշտ մնում է աղքատ ու սոված, եւ միշտ ստիպուած է պանդխտութեան մէջ հաց որոնել: Տաճկաստանի հայը երերեալ եւ տատանեալ վիճակի մէջ է ապրում: Այսպիսի տունկը արմատ ձգել կարող չէ եւ շուտով կը չորանայ . . . .

Մենք ունենք Ասիական Տաճկաստանում ժողովրդի երկու դասեր՝ վաճառականներ եւ հողագործ մշակներ. վերջինը թէ իւր բազմութեամբ եւ թէ իւր բարձր նշանակութեամբ կազմում է այն, որ կոչում ենք **ազգ**: Վաճառականը իւր տանը հանգիստ չէ. նա միշտ թափառում է իւր շահերի ետեւից. նա այնտեղ է, ուր նրա շահերն են գտանվում: Վաճառականը հայրենիք չունի, նրա հայրենիքն այնտեղ է, ուր արծաթ կայ: Վաճառականը հասարակաց շահերի համար չէ մտածում, նա եսական է: Մնում է մշակ դասը, որ հասարակութեան

գլխաւոր ուժն է կազմում. Նա իւր հայրենի երկրում հանգստութիւն եւ ապրուստ չը գտանելով, իւր կեանքը նոյնպէս պանդխտութեան մէջ է անցկացնում, եւ նրա ամուր ձեռքերը, որ հայրենի հողը պէտք է մշակէին, մեծ քաղաքներում զբաղվում են ստոր եւ ծառայական պարապմունքներով: Եւ մշակը, արդար երկրագործը, ժողովրդի պարէնը հայթայթողը դառնում է համալ, բեռնակիր, դրաստ . . . .

Եւ այսպէս Ասիական Տաճկաստանի ժողովրդաբնակութեան մեծ մասը գաղթականութեան մէջ է ապրում: Մի դաս միայն մինչեւ այսօր մնում է անշարժ. դրանք էին վանքային աբեղաներն: Բայց երբ վանքերն ենթարկուեցան նոյն վիճակին, որպէս ժողովուրդը, երբ նրանք էլ զրկուեցան կալուածներից՝ իրանց գլխաւոր հարստութիւնից, այն ժամանակ վանքային միաբանութիւններն նոյնպէս ցրուիլ սկսան, եւ Հայոց նուիրական տեղերն մնացին ամայի:

Հողային կամ կալուածական խնդիրը Ասիական Տաճկաստանի Հայոց հարստահարութիւնների մէջ ամենագլխաւոր խնդիրն է: Այս խնդրի նշանակութիւնը այնքան բարձրանում է, որքան մենք մտածում ենք, թէ տաճկաբնակ Հայերի մէջ գաղթականութիւնը դադարեցնելու եւ ժողովրդին հայրենի հողի վրայ ապահով կեանք վարելու միակ միջոցը հանգիստ երկրագործութիւնն է: Բայց ցաւում ենք, նկատելով, որ այս խնդիրը խիստ աննշան տեղ է բռնում պատրիարքարանի Տեղեկագրքի մէջ, եւ պատրիարքարանը իւր տասն եւ եօթամեայ սահմանադրական վարչութեամբ շատ փոքր ուշադրութիւն է դարձրել դրա վրայ, եւ համարեա զանցառութեան է տուել կալուածական խնդիրը, այն խնդիրը, որ հայի կեանքի եւ

մաՀու խնդիրն է։ Այս խօսքերը զրպարտութիւն չեն, քանի որ մենք աչքի առջեւ ունինք պատրիարքարանի արձանագրութիւնները։ Ամբողջ Տեղեկագիրը, որպէս յիշած ենք, պարունակում է իւր մէջ պատրիարքարանի 25 տարուայ գործունէութեան շրջանը, այս 25 տարուայ մէջ կալուածական Հարստահարութիւնների մասին պատրիարքարանի կողմից, մենք տեսնում ենք, միմիայն մէկ Հատ բողոքագիր որ 1875 թուին յունվարի 3ին մատուցուած է Բարձ. Դրան, այն եւս բաւականութիւն չէ գտել, եւ պատրիարքարանը լռել է այնուՀետեւ[1] . . . . ։ Որով ընդՀակառակն, տեսնում ենք, Կիրակոսի աղջիկը մաՀմետականները առեւանգել են, կամ Մարտիրոսի ոչխարները գողացել են եւ կամ այս ինչ եկեղեցու խաչը թուրքերը շան վզից քարշ տալով, փողոցները ման են ածել, — «կոնդակները» տալիններով պատրիարքարանի եւ Բարձ. Դրան մէջ բանակցութեան նիւթ են դարձել . . . . ։ Մենք չենք ասում, թէ դրանց մասին պէտք էր լռել, բայց եւ ոչ պէտք էր այնքան կարեւորութիւն տալ։ ՈրովՀետեւ այսպիսի մասնաւոր դէպքերն պատաՀական են, այսօր կարող են լինել, իսկ վաղը ոչ։ Բայց երբ մաՀմետականները գաւառների ամբողջ Հայ գիւղօրայք իրանց են սեփականացնում, — դա է գլխաւոր կենսական Հարցը, որովՀետեւ դրանով մի ամբողջ Հասարակութիւն թէ նիւթապէս եւ թէ բարոյապէս մաՀանում է, եւ սերունդից

[1] Պատրիարքարանի ձեւքով վերջին անգամ որպէս Տաճկաստանի Հայ ժողովրդեան կողմից մեծ եպարքոսին (սադրէզամին) մատուցուած խնդիրների կարգում դարձեալ ընդՀանուր Հողային խնդիրը մատուցուած էր, այնտեղ յիշուած էր միայն եկեղեցական եւ վանքային կալուածների Հարըստահարութեան մասին։ Մենք զարմանում ենք, եթէ ՇաՀ-Յուսէֆի նման մի մասնաւոր անձի պաշտօնանկութիւնը եւ նրա իւր Հայրենիքից տարագրուիլը կարող է Հասարակական Հարց դառնալ, որքան առաւել Հողային խնդիրը պէտք էր գրաւէր Ս. Պատրիարքի ուշադրութիւնը։

սերունդ զրկվում է հացից եւ հետեւապէս կեանքից....
Բայց պատրիարքարանի ուշադրութիւնը չէ գրաւում այս հարցը....

Այս նկատողութիւններից յետոյ, մենք հասնում ենք այն տխուր եզրակացութեանը, թէ Կ. Պոլսի պատրիարքարանը եւ այն, որ կոչվում է ազգային սահմանադրութիւն, որքան դատարկ բաներով են զբաղուած եղել, եւ որքան սակաւ հասկացել են ազգի եւ ժողովրդի իրական պէտքերը.....: Պօղոս վարդապետի գործը, Սսի եւ Աղթամարայ կաթողիկոսների խնդիրները Կ. Պոլսի ազգային սահմանադրութիւնը իւր գոյութեան ամբողջ ընթացքում ծամծմեց, կզկզեց, եւ համարեա իւր ժամանակի ամենամեծ մասը այսպիսի աննպատակ վէճմունքների մէջ անցկացրեց, — բայց մի բան էլ չը մտածեց, թէ Կ. Պոլսի բէքեարխաներում պառկող 45 հազար վանեցի, մշեցի եւ այլ գաւառական համալները ինչու համար են թողել իրանց հայրենիքը:

Թէեւ մեզ յայտնի էին Պոլսեցոց թեթեւամտութիւնները, թէեւ մենք գիտէինք, որ նրանք երեւակայութեամբ են ապրում եւ ամենեւին իրական կէտի կանգնած չեն, այնու ամենայնիւ, Կ. Պոլսի պատրիարքարանի եւ նրա սահմանադրական վարչութեան մասին մինչ այս աստիճան աննպաստաւոր կարծիք չունէինք: Բայց պատրիարքարանի Տեղեկագիրքը երեւան հանեց նրա բոլոր ոչնչութիւնը: Եթէ Տաճկաստանի այժմեան հանգամանքներն առիթ չը տային, գուցէ մենք երբէք չը պիտի տեսնէինք այս Տեղեկագիրքը. գուցէ պատրիարքարանը մինչեւ յաւիտեան պիտի ծածկէր իւր խայտառակութիւնը, միշտ ինքն իրան խաբելով եւ միշտ ազգին ցոյց տալով, թէ մեծ գործ է շինում....

Շատ ժամանակ չէ, որ հրատարակուեցաւ այն մեծ խաբէյութիւնը՝ — պատրիարքարանի երեւելի շրջաբերականը, որի մէջ մօտ 4 միլիոն ժողովրդի ներկայացուցիչը յայտնում էր, թէ նա գոհ է "բարեխնամ կառավարութիւնից։" Եւ այդ գոհութիւնը յայտնում էր 25 տարուայ ընթացքում հազարաւոր անիրաւութեանց դէմ միշտ բողոքող եւ ոչինչ բաւականութիւն չը ստացող ժողովրդի հոգեւոր գլուխը։ Զարմանալի՛ աչքակապութիւն.....։

Արդէն ընթերցողը տեսաւ, որ պատրիարքարանի կողմից գաւառական հարստահարութեանց մասին Բարձ. Դրան մատուցած խնդիրները (թագրիրները) համարեա ոչ մէկը իւր նշանակութեանը չէ հասել, կամ մնացել է առանց պատասխանի, կամ թողնուել է առանց հետեւանքի, կամ եթէ Դռնից հրամանագիր է ստացուել, այն էլ գաւառների պաշտօնականներն գործի չեն դրել. այսպէս անցել են ապարդիւն.....։ Այստեղից հասկացվում է, թէ ինչ նշանակութիւն ունի հայոց պատրիարքարանը Բարձ. Դրան առջեւ եւ ո՛ր չափով Դուռը հոգս է տանում ոչ-մահմետական ազգերի ապահովութեան մասին։

Այս այսպէս լինելուց յետոյ մենք պատրիարքարանին հրաշքներ գործել տալու իրաւունք չունինք։ Բայց մեզ զարմացնում է մէկ բան. արդեօք ինչով էր պարծենում Կ. Պոլսի ազգային սահմանադրութիւնը իւր 17 տարուայ գոռում-գոչումներով, իւր ուրախ կեցցէներով.....։

Այժմ հասկացանք.....։

Կ. Պոլսի ազգային սահմանադրութիւնն ուրիշ ոչինչ չէ եղել, բայց միայն մի մանկական խաղալիկ, որ խորամանկ դայեակը տալիս է երեխայի ձեռքում, որ նա հանգիստ մնայ, որ նրանով զբաղուի, չարութիւն չը գործէ....։ Եւ Կ. Պոլսի տղայամիտ էֆէնտիներն շատ գոհ եւ ուրախ

էին այս խաղալիկով, եւ ամեն տարի Բոսֆորի ափերի մօտ տօնում էին իրանց ողորմելի պատրանքը . . . . ։

Տաճկաց կառավարութիւնը շատ լաւ է ճանաչել իւր հպատակ ազգերի բնաւորութիւնը, նա գիտէ, թէ ամեն մէկին որպէս պէտք է խաբել։ Այժմ պատրաստել է նա մի աւելի վիթխարի խաղալիկ իւր հպատակների ձեռքը տալու համար՝ — իւր պետութեան մէջ ընդհանուր սահմանադրական վարչութիւն։ — Երկու խօսքով կը յայտնենք մեր կարծիքը. "օձը իւր շապիկը կը փոխէ, բայց խասիաթը էլի այն կը մնայ . . .,,։

---

Յօղուածս վերջացնելու վրայ էի, ստացայ մի նամակ, որ վերաբերում էր Վանայ հրդեհին. Նամակագիրը վանեցի ծանօթներիցս մէկն էր, որ անձամբ ականատես է եղել անցքին։ Թէեւ Կ. Պոլսի եւ Թիֆլիզի լրագրներում հրատարակութիւններ եղան այդ մասին, բայց տեղեկութիւնները թերի լինելով, հարկաւոր համարեցինք այս կտորը որպէս յաւելուած կցել մեր յօղուածի հետ։

Վանայ հայերի մեծ մասը բնակվում են Այգեստան կոչուած արուարձանում, որ հեռու է բերդից, այսինքն բուն քաղաքից մի քանի ժամուայ ճանապարհով։ Այգեստանցիք, թէ վաճառականներ եւ թէ արհեստաւորներ, խանութներ ունին բերդի մէջ, վաղ առաւօտեան գալիս են քաղաքը, մինչեւ երեկոյ զբաղուած են առեւտուրով եւ արեւը մտնելուց յետոյ դառնում են իրանց տները։ Խանութները մնում են պահապանների հսկողութեան ներքոյ։

Հրդեհից մի քանի շաբաթ առաջ քուրդ բէկերից մէկը բարեկամաբար յայտնում է իւր ծանօթ հայերին, թէ այս օրերում մահմետականների կողմից ձեզ սպառնում է մի մեծ վտանգ։

Հայերն առանց այս խօսքը լսելու եւս, ամեն րոպէ սպասում էին, թէ թուրքերը պէտք է կոտորեն նրանց, որովհետեւ Աբդ-իւլ-Փէթթահ բէկ չարագործը Տիգրանակերտից վերադառնալով, դեռ վաղուց բոլոր հայերը կոտորելու հրաւէր կարդացած էր։

Հայը իւր կեանքից առաջ մտածում է իւր հարստութեան մասին, որովհետեւ վերջինը աւելի թանկագին է նրա համար։ Այս սպառնալիքները լսելով, հայերը ոչինչով չեն պատրաստվում գալու վտանգի առաջն առնելու, այլ աշխատում են մի կերպով ազատել իրանց իրեղէնները։ Այգեստանցի հայերը իրանց տներում գտնուած թանկագին իրեղէնները տանում են քաղաքը եւ հաւաքում են իրանց խանութներում, մտածելով, թէ այնտեղ աւելի ապահով կը մնան, որովհետեւ բերդի մէջն է. այնտեղ զինուորներ կան, ոստիկանութիւն կայ եւ այլն։ Եւ այսպէս հայերի բոլոր հարստահարութիւնը կենդրոնանում է շուկայում։

Գիշերով հասասները նկատում են, որ զանազան կողպած խանութներից այստեղ եւ այնտեղ մուխ է դուրս գալիս, հասկանում են, որ կրակ կայ։ Նրանք շտապում են խանութատէրներին իմացում տալու, բայց ոստիկանութիւնը արգելում է։ Նոյն միջոցին բերդի զօրանոցի գլխից լսելի է լինում փողի ձայն. իսկոյն զինուորներով շրջապատվում է շուկան։ Զինուորների մէկ մասը բռնում է փողոցների մուտքը եւ չէ թողնում հայերին, միւս մասը սկսում է կոտրել խանութների դռները, ոչ միայն նրանց, որոնցից կրակի նշոյլներ էին երեւում այլ եւ այն խանութների, որոնք շատ հեռու էին հրդեհից։ Վերջինների մէջ իրանք զինուորները կրակ են ձգում եւ մի քանի ժամուայ մէջ ամբողջ շուկան բոցավառվում է հրդեհի մէջ։

՞Բայց ինչ են լինում ապրանքները։

Մեծ մասը զէնուորների եւ ոստիկանութեանն կողոպտում է։ Եւ դեռ Հրդեհը բոլորովին չը ճարակուած, շուկայում յայտնվում է մի խառնիճաղանճ բազմութիւն — Թուրք, քուրդ եւ այլ գիւղացի մահմետականներ — դրանք, որպէս երեւում է, առաջուց տեղեկութիւն ունէին պատահելու անցքի մասին, եւ շրջակայ գիւղերից հաւաքուելով, ցերեկով թափուած են եղել Թուրքերի տներում, եւ զէնուորներից ու ոստիկաններից մնացած ապրանքը դրանք են յափշտակում։

Մահմետականների առջեւ բաց է լինում կողոպուտի ասպարէզը, մօտ չեն թողնում միայն Հայերին։ Նամակագիրը աւելցնում է, թէ քաղաքի հարուստ հայ վաճառականներից մէկը մինչեւ անգամ առաջարկում է 500 լիրա զէնուորական գլխաւորին, որ իրան թոյլ տան իւր խանութից ազատել միայն հաշուի գրքերը եւ այլ թղթեր, դարձեալ մօտ չեն թողնում։ Այգեստանցի Հայերը Հրդեհի մասին ոչ ինչ չեն հասկանում, որովհետեւ հեռու էին, իսկ այն Հայերը, որ բերդի մէջն են բնակվում, նրանց էլ մօտ չեն թողնում։

Եւ այսպէս, ապրանքներից ինչ որ թանկագին էր, բոլորն յափշտակվում է, բայց ինչ որ անպէտք էր, կրկին ձգվում է կրակի մէջ։ Եւ որպէս զի Հրդեհը յաջող կերպով ճարակուի, աւելացնում են նրա վրայ վառուող նիւթեր, որպիսի են՝ վառօդ, նաւթ եւայլն։ Կողոպտուած ապրանքները մասամբ թաքցնում են Թուրքերի տներում եւ մասամբ կրում են դէպի մօտակայ գիւղերը։ Այն գիշերը Աւանց գիւղի նաւահանգստի մէջ կանգնած են լինում մի քանի նաւակներ, յատկապէս այն նպատակով։ Ընդամենը կողոպտուել են 2000 խանութներ, որոնցից 1300ը կրակից բոլորովին զերծ են մնացած, միայն դռները

խորտակել են, իսկ 700ը այրուել է։ Այս խանութները՝ ըստ մեծի մասին, գտնուած Թուրքերի խանութները՝ Նամակագրի կարծիքով առաջուց դատարկուած են եղել։

Նամակագրի կարծիքով այս անցքը պատահական չէ, այլ առաջուց խորհուած եւ տնօրինուած մի դաւադրութիւն է, որի գաղտնիքը պահուած է եղել զինուորական պաշտօնէութեան եւ տեղային կառավարութեան երեւելի անձինքների մէջ։ Ու գիւղացի կամ քաղաքացի մահմետականներն, դաւադրութեան հոտը առնելով, նշանակեալ գիշերը հաւաքուած են եղել, որ իրանք էլ մասն ունենան ընդհանուր կողոպուտից։ Ու Թուրք բէկի հրդեհից մի քանի շաբաթ յայտնած նախազգուշութիւնն, ուրիշ նպատակ չէ ունեցել, բայց միայն այն, որ հայերը երկիւղ կրելով, նաեւ իրանց տնային հարստութիւնը հաւաքեն շուկայում։ Որովհետեւ հայ հասարակութիւնն թէեւ մահմետական ամբոխից կասկածներ ունէր, բայց նա կառավարութիւնը եւ նրա զինուորական ուժը միշտ իւր պաշտպան էր համարում։ Այս պատճառով շուկան նրա ապահով տեղն էր, դրուած լինելով ոստիկանութեան եւ հասանների հսկողութեան ներքոյ, եւ շատ մօտ էր զինուորանոցին, իւր բերդի մէջը գտնուելովն։

Թէեւ նամակագրի ենթադրութիւնն դեռ եւս չապացուցուած մի կարծիք է, այսուամենայնիւ, մի քանի փաստեր հաստատում են այս կարծիքը, թէ հրդեհը մի հնարած պատրուակ է, յափշտակութեան մեղադրանքը նրանով ծածկելու համար։ Հրդեհից մի քանի օր առաջ զինուորներն գնելիս են եղել մոմպատներ եւ այլ վառուող նիւթեր։ Ու նոյն գիշերուայ երեկոյեան պահուն, երբ պատահել է հրդեհը, զինուորներից շատերն այս եւ այն խանութին մօտենալով, ձեւացրել են, թէ բան են գնում (ճիշտ այն ժամանակ երբ խանութպաններն իրանց կրպակ-

ները կողպելիս են եղել) եւ աննկատելի կերպով խանութներում այրուող բաներ են ձգել։ Նամակագիրը բերում է մի արդէն յայտնուած ապացոյց իւր խօսքերին, իբր թէ մի վաճառական երբ խանութը կողպելու վրայ էր, մօտենում են երկու զինուորներ, նրանցից մէկը խնդրած ապրանքը իւր ձեռքը առածի պէս փախցնում է. խանութպանը նրա ետեւից վազելով, կամենում է բռնել եւ ապրանքը յետ առնել. Նոյն միջոցին միւս զինուորն, որ մնացել էր խանութի մօտ, մի փաթաթած բան ձգում է նրա մէջ եւ հեռանում է։ Վաճառականը վերադառնալով իւր խանութը, գտնում է այնտեղ մի կտաւի կտորի մէջ փաթաթած շեկացրած ածուխի կտորներ, որ արդէն սկսել էր վառել իւր փաթոթը եւ ընկած էր բամբակեայ գործուածների մէջ։

Միւս եւ աւելի կասկածանք յարուցանող փաստն այն է, որ յափշտակութեան գլխաւոր գործիչները, որ եղել են զինուորներն, հրդեհի առաւօտը փոխում են եւ հեռացնում են քաղաքից, նրանց տեղը բերելով նորերին։ Այս փոփոխութիւնը այլ նպատակ չունի, եթէ ոչ, աւազակների հետքը կորցնել եւ Տաճկաստանի այժմեան զինուորական խառնակութեան մէջ թաղցնել չարագործները։

Նամակագրի կարծիքով, այս անցքը առանց նպատակի չէ եղել. իբր թէ տաճկաց կառավարութիւնը իւր այժմեան տագնապի մէջ կասկած է ունեցել Վանայ հայերից, չլինէ թէ ռուսների հետ պատերազմ ծագելու միջոցին նրանք թշնամուն ձեռնտուութիւն անեն, եւ այս պատճառով մտածել է առաջուց նիւթապէս տկարացնել նրանց։ Մեր կարծիքով, այս ենթադրութիւնը անտեղի է, որովհետեւ տաճկաց կառավարութիւնը շատ լաւ է ճանաչում հայերին, նա գիտէ, թէ որքան ընտելացած են հայերն իւր բռնակալութեանը, նա գիտէ, թէ որպիսի

սիրտ են կրում հայերը . . . . ։ Մենք նայում ենք այս անցքի վրայ, որպէս մի խորամանկութեամբ հնարուած յափշտակութեան վրայ, աւելի ոչինչ։

Ընդհանուր վնասի մասին նամակագիրը դժուարանում է հաշիւ տալ, բայց կարծում է, թէ շատ մեծ պէտք է լինի, քանի որ Վանայ վաճառականութիւնը հայերի ձեռքումն է, եւ Վանը իւր շրջակայ գաւառների առեւտրական կենդրոնն է։

Վանայ հրդեհի անցքի մէջ նկատվում է միեւնոյն երեւոյթը, ինչ որ մենք տեսանք գաւառների բոլոր հարստահարութեանց մէջ, ուր սպանութիւնները ամենափոքր թուանշաններ էին կազմում։ Այստեղ եւս ոչ մի սպանութիւն չէ պատահում, երեւում է, որ հայերն իրանց ճակատագրական թուլասրտութեամբ կանգնած, նայելիս են եղել, թէ որպէս կողոպտում են իրանց . . . . ։ Բայց Վանայ մէջ հայերն աւելի բազմաթիւ են քան մահմեդականները . . . . ։ Բայց հայը կեանքի կռուի մէջ ունի իւր առանձին զէնքերը իւր կորուստը դարձնելու համար։ Վանեցի հայերն հեռագրում են իրանց Կ. Պոլսում եղած ընկերներին. "մեզ այստեղ կողոպտեցին, դուք էլ այնտեղ ումից որ ապրանք էք առել, փողը մի տուէք . . .„։

Վանայ հրդեհի մասին դրանից աւելի դատել առայժմ անտեղի է, քանի որ գործը բոլորովին պարզուած չէ։ Կ. Պոլսի լրագրների մէջ արդէն ծանուցուած էր, թէ Բարձ. Դռնից առանձին մասնաժողով նշանակուած է այս անցքը քննելու համար։ Կը սպասենք, մինչեւ մասնաժողովը իւր գործը վերջացնէ, թէեւ հաւատացած ենք, որ ճշմարտութիւնը ոչ բոլորովին պիտի երեւան լինի։

1877 ամի 10 Յունուարի։

## Ի՞ՆՉ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՆ ՊԷՏՔ ՏԱՃԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻՆ

Եթէ ներկան անցեալի շարունակութիւնն է, եթէ ներկան ուղղելու համար պէտք է օգուտ քաղել անցեալից, այդ կէտից նայելով, մենք չենք սխալուիլ, եթէ ասենք՝ թէ Կ. Պոլսի պատրիարքարանի հրատարակած "Տեղեկագիրքը", որ պարունակում է իւր մէջ տաճկական Հայաստանի ամբողջ քառորդ դարի գործերի արձանագրութիւնները, բաւական է առաջնորդ լինելու համար, թէ որպիսի վերանորոգութիւններ պէտք է պահանջէ Կ. Պոլսի Հայոց Պատրիարքը, որպէս զի այսուհետեւ հայերի վիճակն ապահով լինի եւ նրանք ազատուեն մինչեւ այսօր գործած անիրաւութիւններից։

Քննելով պատրիարքարանի հրատարակած "Տեղեկագիրքը", մենք գտնում ենք որ նա բովանդակում է իւր մէջ գլխաւորապէս հետեւեալ չորս կէտերը. ա) անապահովութիւն ապրուստի եւ սեփականութեան, բ) անապահովութիւն կեանքի, գ) անիրաւութիւն դատարանի մէջ եւ կրօնական ոտնահարութիւն, դ) անապահովութիւն ազգային առանձնաշնորհութիւնների։ Ուրեմն Տաճկաստանի հայերի բարւոքելու համար գործ դրուելիք վերանորոգութիւնները այն ժամանակ միայն կարող են նպատակայարմար լինել, երբ լիակատար բաւականութիւն կը տան վերոյիշեալ չորս կէտերի բարւոքմանը։

Խօսենք իւրաքանչիւրի վրայ առանձին։

ա) Մենք **ամբողջովին** եւ **սեփականութեան անապահովութիւն** չենք համարում այն դէպքերը, որ հայերն հարստահարում են, նրա աշխատութեան արդիւնքը ձեռքից խլում, եւ նա մշտապէս ենթարկուած է զանազան բռնաբարութիւնների ու աւազակութիւնների. ոչ, Տաճկաստանում սեփականութեան անապահովութիւնը եւ հետեւապէս **ամբողջովին** դժուարութիւնը կայանում է գլխաւորապէս այն բանի մէջ, որ հայը հող չունի, այս պատճառով նա կեանքի հաստատուն հիմք չունի։ Հողի վերաբերութեամբ մահմետականի օրէնքը բովանդակվում է այս վարդապետութեան մէջ։ “Ամբողջ տիեզերքը Աստծուն է պատկանում, սուլթանը Աստծու խալիֆան կամ ներկայացուցիչն է երկրի վրայ, իսկ հողը նրա սեփականութիւնն է։„ Այստեղից առաջ է գալիս այն ծիծաղելի անհաւատութիւնը, իբր թէ ամեն մի երկիր, որի վրայ ոտք է կոխում իսլամի թագաւորը, պէտք է նրան պատկանի։

Հողի վերաբերութեամբ բոլոր կալուածական օրէնքները բղխում են վերոյիշեալ վարդապետութիւնից. սուլթանը հողի տէրն է, իսկ երկրագործը՝ մշակ դասը նրա վարձականը կամ կապալառուն։ Հայը հող ունենալու համար պէտք է վարձէ կառավարութիւնից, կամ տաճկական ասացուածքով խօսելով՝ պէտք է **թափու** անէ. եւ այն օրից կը դադարի նրա իրաւունքը իւր վարձած հողի վրայ, երբ օրէնքի պահանջած ժամանակներում չնորոգէ իւր կալուածագիրը, կամ չկատարէ այս կամ այն պարտաւորութիւնները. իսկ մի այդպիսի կալուածագիր պայմանագրի զօրութիւն ունի, աւելի ոչինչ։

Այդպէսով ոչինչ չէ կապում երկրագործ դասի երկրի հետ եւ հետեւապէս մշակութեան կամ աշխատութեան

հետ։ Ի նկատի ունենալով նաեւ այն անտանելի պայմանները, որով ծանրաբեռնւում է մշակը մի կտոր հող վարելու համար, շատ հասկանալի է լինում, թէ ինչո՞ւ նա թողնում է հայրենի երկիրը եւ հազարներով գաղթում օտարութեան մէջ ապրուստ որոնելու։ Ուրեմն հային իւր հայրենի երկրի հետ կապելու համար, գաղթականութիւնը դադարեցնելու համար՝ միակ եւ ամենակարեւոր միջոցն է նրան իրաւունք տալ ազատ կալւածատէր լինելու, որ նա որպէս սեպհականութիւն իւր հողն ունենայ եւ նրանից ամեն կերպով օգտուելու իրաւունք ստանայ։ Դրանով կարելի է միայն հնար տալ գիւղացուն իւր աշխատութեամբ իւր ապրուստը հայթայթելու։ Նա չպիտի լինի վարձական, այլ հողը պիտի լինի նրա համար մի հաստատուն ժառանգութիւն, որ անցնում է սերունդից սերունդ, որ նա կարող է գնել, վաճառել, գրաւ դնել, մի խօսքով, վարուել նրա հետ որպէս իրան պատկանող սեպհականութեան հետ։ Այդ պէտք է լինի Հայոց Պատրիարքի պահանջելի գլխաւոր վերանորոգութիւններից մէկը. եւ եթէ նա ցանկանում է, որ հայը արմատ ձգէ Հայաստանի հողի վրայ, պէտք է նրա տէրը լինի, պէտք է նրանից ծծէ իւր սնունդը, ինչպէս մանուկը մօր ստինքներից։ Իսկ ինչ որ վերաբերում է մուլթէզիմների (կապալառուների) հարստահարութիւններին, հարկերի ծանրութեանը, որոնցով կողոպտվում է մշակ դասը, ինչ որ վերաբերում է զանազան բռնակալների եւ դէրէբէգիների կեղեքումներին, մենք համարում ենք այդ բոլորը ժամանակաւոր անկարգութիւններ, որոնցից ազատ չեն մնում նոյն իսկ մահմետականները, եւ որոնք Թիւրքիայի ընդհանուր բարենորոգումների ժամանակ միայն կարող են կարգի եւ օրինաւորութեան մէջ դրուել։

է) Հայերի կեանքի անապահովութիւնը քրդերից, չերքէզներից եւ զանազան վայրենի ցեղերից անդադար կեղեքումը, որպէս Սան-Ստեֆանոյի դաշնադրութեան 16րդ յօդուածի, նոյնպէս եւ Բերլինի վեհաժողովի վճռի 61րդ յօդուածի գլխաւոր հիմունքն է կազմում։ Բայց որքան էլ աշխատէ Թիւրքիայի կառավարութիւնը՝ պահպանել անզէն Հայերին զինեալ մահմետականների բարբարոսութիւններից, անկարելի է, որովհետեւ իւր բոլոր զինուորական ույժը, որով պէտք է զսպի նրանց, նոյն իսկ բարբարոսներից է կազմուած։ Ուրեմն Հայերին պէտք է թոյլ տուած, որ իրանք իրանց պաշտպանեն, եւ այդ՝ այլ կերպ լինել կարող չէ, բայց միայն իրաւունք տալ, որ Հայերը զէնք կրեն, որպէս իրանց դրացի ազգերը, եւ բացի դրանից, Թիւրքիայի զինուորութեան մէջ նրանք էլ մասնակցեն։ Պէտք է Հայը ինքը հնար ունենայ իւր անձը պաշտպանելու, երբ կառավարութիւնն անկարող է։ Ով որ ծանօթ է Թիւրքիայի կազմակերպութեանը, մեզ հետ կը համաձայնի, որ այդ երկրում անկարելի է ապրել եւ իւր գոյութիւնը պահպանել առանց զէնքի։ Թիւրքիան բնակեցրած է այնպիսի ցեղերով, որոնք իրար հետ մշտապէս կռվում են, որոնք միմեանց հետ մրցում են սրով միայն։ Ինչով կարող է ընդդիմադրել նրանց անզէն Հայը։

Գալով Թիւրքիայի զինուորութեան մէջ Հայի մասնակցելուն, դա պէտք է Հայերի գլխաւոր պարտաւորութիւններից մէկը լինի ոչ միայն որպէս Թիւրքիայի հպատակ եւ քաղաքացի, այլ մի այդպիսի ծառայութիւնը կ'ազատէր նրանց պատերազմի ժամանակ արտաքին, իսկ խաղաղութեան ժամանակ ներքին թշնամիներից։ Հայերն առանց դրան էլ զինուորական տուրք են վճարում Թիւրքիայի կառավարութեանը եւ նոյն տուրքով կարող են պահ-

պանել մի ազգային միլլէթ։ — Ինչու՞ անպատճառ միլլէթ։ Ինչու՞ Հայերը չպիտի մասնակցեն Թիւրքիայի ընդհանուր զինուորագրութեան մէջ, կը հարցնեն մեզանից։

Որքան մեզ յայտնի է, Թիւրքիայի մասնաւոր ազգերից եւ ոչ մինը, որպէս են՝ քրդերը, չերքէզները, արաբները եւ այլն, չեն մասնակցում Թիւրքիայի զինուորագրութեանը եւ չեն մտնում նրա կանոնաւոր զօրքերի թւում, այլ կազմում են առանձին միլիցիաներ, որոնք պատերազմից յետոյ վերադառնում են իրանց տները։ Աւելի եւս Հայերին անկարելի է որպէս զինուոր մտնել Թիւրքերի կանոնաւոր զօրքերի մէջ. որովհետեւ զանազան կրօնական խտրութիւններ թոյլ չեն տալիս այդ երկու ազգերին միմեանց հետ խառնուել, միմեանց հետ սերտ յարաբերութիւն ունենալ, եւ մինչեւ անգամ Թիւրք զինուորը չի ցանկանայ իւր մէջ ընդունել ոչ-մահմետականին։

Եթէ Հայերից պահանջուին կանոնաւոր զինուորներ եւ ոչ միլիցիա, այն ժամանակ եւս Հայոց զինուորները պէտք է առանձին գունդեր կազմէին Թիւրքաց բանակի մէջ իրանց Հայ զօրապետներով ու զօրավարներով։ Այսպէս եղել է միշտ։ Արշակունեաց պետութիւնը վերջանալուց յետոյ Հայաստանի ամբողջ մարզպանութեան դարերում պարսիկների, այլեւ արաբացոց ու թաթարների տիրապետութեան ժամանակ, եւ մինչեւ անգամ յոյների ժամանակ, Հայոց զինուորները օտարազգիների բանակի մէջ միշտ առանձին գունդեր էին կազմում իրանց զօրապետներով[1]։ Նրանք

[1] Նորին մեծութեան պարսից Շահի ժամանակ, երբ Հայերից զինուորներ առնուեցան, դարձեալ առանձին գունդեր կազմուեցան Հայ զօրապետների զօրավարութեան ներքոյ։ Նոյն իսկ պարսիկները թոյլ չտուեցին, որ քրիստոնեայ Հայը խառնուէր իրանց հետ։

իրանց հետ ման էին ածում մինչեւ անգամ քահանաներ եւ եկեղեցական խորան։

Հայերին զանազան վայրենի ցեղերից պաշտպանելու համար կառավարութեան կողմից գործ դրուած ամեն հսկողութիւն անօգուտ է. պէտք է հային հնար տալ, որ ինքը իւր գլուխը պահպանէ, եւ դա կը լինի այն ժամանակ, երբ նա զէնք կրելու իրաւունք կ'ունենայ։ Այդ ուրիշ բան է, երբ կառավարութիւնը իւր բոլոր հպատակներին զինաթափ անէ եւ ամեն անհատ նրա հովանաւորութեան ներքոյ պաշտպանութիւն եւ կեանքի ապահովութիւն գտնէ։ Բայց Թիւրքիայի կառավարութիւնը ոչ կարող է եւ ոչ կը ցանկանայ այդպէս անել։ Երբ սրանից մի քանի տարի առաջ խօսք եղաւ քրդերի զինաթափ անելու, այն ժամանակուայ Թիւրքիայի երեւելի պետական մարդկանցից մէկը՝ Ալի-փաշան ասաց. "պէտք չէ, քրդերը միշտ պատրաստի զօրք են մեզ համար։„ — Այո, պատրաստ զօրքից, որ անզէն հպատակների հաշուով են ապրում, կառավարութիւնը պէտք է օգուտ քաղէ, որպէս եւ վերջին պատերազմի ժամանակ երեւաց։

Մեր կողմից աւելորդ կը լինէր խորհուրդ տալը, քանի որ գիտենք, թէ Կ. Պոլսի պատրիարքարանը լաւ հասկացել է հայկական Կիլիկիայի կարեւորութիւնը երկիրը ներքին թշնամիներից պահպանելու համար, եւ Բերլինի վեհաժողովի մատուցած ծրագրի մէջ այդ անցուցած էր նրա խնդիրների կարգում։ Միայն պէտք է այժմ դարձեալ նոյնը պահանջել, որ հայերը փոխանակ զինուորական հարկ վճարելու, նոյն տուրքով պահէին իրանց երկրում միլիցիաներ, որոնք խաղաղութեան ժամանակ պահպանէին երկիրը ներքին յարձակումներից, իսկ պա-

տերազմի ժամանակ օգնէին պետութեանը: Այլ կերպ ապահովութիւն՝ քրդերի, չերքեզների եւ ուրիշ վայրենի ցեղերի բարբարոսութիւններից, մենք չենք ճանաչում:

գ) Թիւրքիայի մէջ ոչ-մահմետականների վերաբերութեամբ իրաւունքի անհաւասարութիւն եւ դատաստանի մէջ անարդարութիւն կը տիրէ միշտ, քանի որ դատավարութեան մէջ տիրէ շարիաթի օրէնքը: Ընթէ մտածենք, թէ ոչ մի օրէնք չէ կարող մշտական լինել, այլ նա պէտք է հետզհետէ փոփոխուի եւ կատարելագործուի, որքան փոփոխվում եւ կատարելագործվում է մարդկային կեանքը, եւ որքան նորանոր ձեւեր են ստանում նրա պէտքերն ու պահանջները, — կարող ենք համարձակ ասել, որ շարիաթի այսքան դարերի ընթացքում հնացած եւ մաշուած օրէնքները անբաւարար եւ անհամապատասխան են ոչ միայն ոչ-մահմետականների համար, այլ նոյն իսկ մահմետականների վերաբերութեամբ, որոնց կեանքի նահապետական պարզ ձեւերը շատ եւ շատ փոխուել են, սկսեալ այն օրից, երբ այդ օրէնքները հրատարակուեցան իսլամի մարգարէի բերանով եւ ամփոփուեցան ղօրանի մէջ: Անփոփոխ եւ մշտական օրէնքներ, որ տրրվում են աստուածպետական ժողովուրդներին, ուրիշ ոչինչ չեն, եթէ ոչ, մի ծանր կապանք, որ կաշկանդում, քարացնում է ազգերը յաւիտենական անշարժութեան մէջ:

Դժուար է պահանջել Թիւրքիայից, որ նա փոխէր շարիաթը, որովհետեւ նա սերտ կապ ունի մահմետական կրօնի հետ. բայց կարելի է պահանջել, որ հայերի եւ առհասարակ ոչ-մահմետականների վերաբերութեամբ նա մնար անգործադրելի: Ուրիշ կերպ անկարելի է, քանի որ այդ օրէնքը

իւր մէջ ունի շատ սկզբունքներ, որ հակառակ են հաւասարութեան գաղափարին, որ խտրութիւն են դնում այն բոլոր ազգերի վերաբերութեամբ, որոնք չեն պատկանում իսլամին։ Եթէ մինչեւ այսօր սուլթանների հրատարակած բոլոր խաթթիները եւ ֆիրմանները մնացել են անգործադրելի, պատճառը շարիաթի զօրեղ ընդդիմադրութիւնն է եւ ոչ այլ ինչ։

Ուրեմն ինչ միջոց կայ շարիաթից ազատուելու։

Ճշմարտութիւնը պահանջում է խոստովանել, որ Թիւրքիայի կառավարութիւնը դեռ շատ առաջ մտածել է, որքան կարելի է, ազատ կացուցանել ոչ-մահմետականներին եւ առաւելապէս հայերին շարիաթի կապանքներից։ Այդ երեւում է այն արտօնութիւնից, որ Թիւրքիան շնորհեց հայերին՝ տալով սահմանադրական ֆերմանը. բացի դրանից գաւառներում կազմուեցան խառն մահմետականներից եւ ոչ-մահմետականներից առանձին մէջլիսներ (ժողովներ) նրանց գործերը քննելու համար, որ այլեւս ոչ-մահմետականները գործ չունենան ուլէմների եւ ղազիների հետ։ Այսու ամենայնիւ թէ սահմանադրութիւնը եւ թէ գաւառական մէջլիսները չկարողացան բաւականութիւն տալ հայերին։ Ինչու։ Որովհետեւ Հայոց Ազգային Սահմանադրութիւնը ունէր աւելի կրօնական բնաւորութիւն, նա չէր անցնում բուն ազգային գործերի սահմանից, որպիսի են դպրոց, եկեղեցի եւ այլն։ Իսկ գաւառական մէջլիսները իրանց անկարգ կազմակերպութեամբ ոչինչ օգուտ չէին բերում։

Մեր կարծիքով հայերին Թիւրքերի կառավարութեան դատաստանական անիրաւութիւնից ազատելու համար նոր բան պահանջել դժուարութիւններ կը յարուցանէր, գուցէ չտային էլ։ Հարկաւոր է պահանջել, որ

լուացնեն, կատարելագործեն այն արտօնութիւնները, ինչ որ մի անգամ շնորհուած է Հայերին, թէեւ անկատար կերպով: Մենք դարձեալ ի նկատի ունինք Ազգային Սահմանադրութիւնը եւ գաւառական Ժողովները:

Եթէ Հայոց Ազգային Սահմանադրութիւնն ընդլայնէ իւր նեղ շրջանը նոր իրաւունքներով, եթէ տրուին նրան եւ քաղաքական իրաւունքներ, եթէ նա Կ. Պոլսի պարիսպներից դուրս գալով, տարածուի բոլոր հայաբնակ գաւառները, այնուհետեւ մի այդպիսի վարչութիւն կարող էր Հայերի թէ եկեղեցական, թէ քաղաքական եւ թէ քրէական բոլոր գործերին բաւականութիւն տալ, եւ Հայերն աւելի պատրաստուած լինելով մի այդպիսի վարչութեան համար, իրանց գործերն իրանց մէջ իրանց ձեռքով կը վճռէին: Բայց այս այսպէս լինելուց յետոյ ծագում է մի հարց. ի՞նչպէս եւ ո՞րտեղ պիտի վճռուին այն գործերը, որ Հայը ունի մահմետականի հետ:

— Գաւառական մէջլիսներում:

Գաւառական մէջլիսների նպատակը, որպէս վերեւում յայտնեցինք, եղել է վճռել զանազան ազգութիւնների գործերը, եւ այս մտքով յիշեալ դատարանների անդամները ընտրվում են խառն մահմետականներից եւ ոչ-մահմետականներից: Բայց եթէ մինչեւ այսօր նրանք իրանց նպատակին չծառայեցին, պատճառն այն է, որ մէջլիսները զուրկ են որեւիցէ որոշ օրէնսդրութիւնից. գրաւոր ոչինչ չկայ, գործերի քննութիւնը լինում է բերանացի կերպով եւ վճիռները կայանում են միայն ձայների վրայ՝ ոչ թէ նրանց բազմութեանը նայելով, այլ թէ ձայն տուողը ո՛րպիսի դիրք է բռնած ժողովի մէջ: Այսպիսի հանգամանքներում, յայտնի բան է, կամայականութիւնը մեծ դեր պիտի խաղայ եւ գործերը պիտի վճռուին այն անձանց

օգտին, որոնք ժողովի մէջ զօրեղ պաշտպաններ ունին, իսկ զօրեղ պաշտպաններ կարող են լինել մահմատական-ները, որովհետեւ ոչ-մահմետականները միայն ձեւի համար են այնտեղ նստած լինում։

Այստեղից երեւում է, որ Թիւրքիայի կառավարութիւնը սկիզբն է դրած այն հիմնարկութիւնների, որ պէտք է բարուոքէին ոչ-մահմետականների վիճակը, բայց որոնք անկարգ եւ անկանոն են։ Նա շնորհել է հայերին Ազգային Սահմանադրութիւն, բայց անկատար. նա հիմնել է զանազան ազգութիւններից խառն մէջլիսներ, բայց առանց օրէնքի։

Այդպիսի՝ խառն մահմետականներից եւ ոչ-մահմետականներից կազմուած մէջլիսները այն ժամանակ միայն կարող են նպատակայարմար լինել, երբ կը հիմնուեն եւրոպական օրէնսդրութեան սկզբունքների վրայ, եւ երբ բոլորովին նոր կազմակերպութիւն կը ստանան։ Այդպիսի մի դատարանի պահանջ կար հայոց պատգամաւորների Բերլինի վեհաժողովին ներկայացրած ծրագրի մէջ, բայց նա բուն հայկական էր։ Մեր կարծիքով, չպէտք է վախեցնել Թիւրքիային, իբր թէ նրանից նոր բան է պահանջվում. հարկաւոր է միայն արդէն եղածների եւ մի անգամ շնորհուածների ձեւը փոխել։ Այս քաղաքականութեանը պէտք է հետեւի Կ. Պոլսի պատրիարքարանը իւր պահանջելի վերանորոգութիւնների մէջ։ — Ընդարձակելով Հայոց Ազգային Սահմանադրութեան սահմանափակ շրջանը նոր իրաւունքներով, եւ տարածելով բոլոր հայաբնակ գաւառները, այդ բաւական կը լինէր հայերին հնար տալ իրանց գործերն իրանց ձեռքով վճռելու. իսկ վերանորոգելով գաւառական մէջլիսները, կը դիւրացնէին նրանց դատաստանական յարաբերութիւնները օտարազգիների հետ։

գ) **Ինքնապահովութեան ազգային առանձնայատկութիւն-ները:** Խօսելով ազգային առանձնայատկութիւնների վրայ, Թիւրքիայի հայի վիճակը մեր առջեւ խիստ տխուր գոյներով է նկարվում: Մինչեւ այսօր մենք սխալ կարծիքի մէջ էինք. մենք այսպէս էինք մտածում. “Հայոց ազգը մի կրօնական ազգ է, նրա հիմքը դրած է իւր եկեղեցու վրայ, իսկ մեր եկեղեցին կարող է աւելի հաստատուն մնալ Թիւրքիայում, ուրեմն այնտեղ կարող է պահպանուել եւ մեր ազգութիւնը:„ — “Եթէ մեր ազգը այսօր գոյութիւն ունի, դրանով մենք պարտական ենք մահմետականութեան,„ — ասում էր մեր երեւելի մտածողներից մէկը:

Մենք թողնում ենք վիճել այդ կարծիքի դէմ, որովհետեւ հայը ամենեւին կրօնական ազգ չէ, թողնում ենք հերքել նաեւ մի այդպիսի դատողութիւն, որովհետեւ լոկ կրօնով մի ազգ մշտապէս պահպանուել չէ կարող, եւ դժուար թէ միայն եկեղեցին ազգութեան գոյութիւնը պահպանել կարողանայ. եւ ընդունենք, որ հայը միայն իւր կրօնով եւ եկեղեցով կարող է միշտ հայ մնալ, բայց հայոց կրօնն ու եկեղեցին ո՞րտեղ են այնքան վտանգի ենթակայ, որքան Թիւրքիայում:

Թէ ինչպէս է կլանում մահմետականութիւնը քրիստոնեայ ժողովրդներին, բաւական է աչքի առաջ ունենալ այն բազմաթիւ մահմետականացած հայոց գիւղօրայքը, որ այժմ կարելի է տեսնել Փոքր-Ասիայի ամեն կողմերում: Բայց Թիւրքիայում կայ մի աւելի սաստիկ վտանգ հայոց եկեղեցուն՝ քրիստոնեայ միսիօնէրներից, որոնք աւելի ճարպիկ են քան մահմետականները, որոնք քարոզներով են կրօնափոխ անում, իսկ Թիւրքը բռնութեամբ: Ոչ մի երկրում կաթոլիկութիւնն ու բողոքականութիւնը այնքան

տարածուած չէ Հայերի մէջ, որքան Տաճկաստանում. Համարեա ամէն տեղ մտել են նրանց քարոզիչները։ Եւ ինչ խելքով ենք մտածում, թէ մեր եկեղեցին Թիւրքիայում ապահով դրութեան մէջ է։ Կրօնափոխութիւնն այսուհետեւ աւելի կը սաստկանայ, երբ անգլիացիները Փոքր-Ասիան իրանց հովանաւորութեան տակ առնելով, կը մտցնեն Հայերի մէջ իրանց միսիօնէրներին[1]։ Մինչեւ այսօր յայտնուած քարոզիչները ամերիկացիք էին, այսուհետեւ կ'աւելանան եւ անգլիացիք. իսկ այդ վերջինները աւելի հեշտ կերպով կարող են որսալ, քանի որ գիտենք, թէ կրօնափոխ եղող Հայերը աւելի մահմետականների հալածանքների դէմ պաշտպանութիւն գտնելու համար են հեռանում մայրենի եկեղեցուց, քան թէ համոզմունքով. իսկ անգլիացիք միշտ կարող են պաշտպանել իրանց նոր հաւատակիցներին։

Թիւրքիայի խորամանկ քաղաքականութիւնը կարծես լաւ էր ըմբռնել, թէ ինչ նշանակութիւն ունի կրօնափոխութիւնը հպատակ քրիստոնեայ ազգութիւնների մէջ։ Նա տեսնելով, օրինակ, Հայերին մի կրօնական ժողովուրդ, որ ուրիշ հիմք չէ ճանաչում իւր ազգութեան համար բացի եկեղեցուց, միշտ աշխատել է զբաղեցնել նրանց կրօնական երկպառակութիւններով, միշտ աշխատել է քանդել նրանց միութիւնը, թոյլ տալով տարածուել Հայերի մէջ կաթոլիկութիւն եւ բողոքականութիւն։ Հին սուլթանները ազգայնութեան աւելի հիմնական արմատին էին զարկում — լեզուին, եւ որի պատճառով յայտնուե-

[1] Դեռ եւս ռուս-թիւրքական պատերազմից առաջ ինձ պատահեց Թաւրիզում խօսել մի անգլիացի քահանայի հետ, որ վերադառնում էր տաճկական Հայաստանից. նա յայտնեց, թէ Լոնդոնում նպատակ կայ քարոզիչների մի առաքելութիւն ուղարկել Հայաստան։ Այդ մարդը ուղարկուել էր հետազօտելու հողը . . . ։

ցան այնքան բազմաթիւ տաճկախօս եւ քրդախօս Հայեր, որ մինչեւ այսօր էլ կան, թէեւ Հայոց եկեղեցուն են պատկանում։ Իսկ վերջին սուլթանների ժամանակ սկսեցին քրիստոնեայ ժողովուրդների ուժերը թուլացնել եւ նրանց ազգային միութիւնը բաժանել կրօնական հերձուածներով։

Թիւրքիայի քաղաքականութիւնը չէր բաւականանում, որ Հայերից նոր եկեղեցիներ էին կազմվում, այլ աշխատում էր այդ վերջինների մէջ եւս հերձուածներ տարածել, որպէս եղաւ Հայ-բողոքականների եւ Հայ-կաթոլիկների մէջ։ Այդ մասին բաւական է յիշել Հասունեանների եւ Հակահասունեանների կռիւը, որ մի քանի տարի տեւեց. եւ եթէ կառավարութիւնը օգնեց Հակահասունեաններին, այդ ոչ թէ նրանց աւելի ազատամիտ ձգտումների համար էր, այլ որ նրանք մի նոր հերձուած էին կազմում Հայ-կաթոլիկների մէջ, մի որոշեալ չափով տկարացնում էին նրանց ուժերը։

Առհասարակ Թիւրքիայի քաղաքագիտութիւնը մենք շատ միամիտ ենք համարում, քան թէ է, չնայելով որ նա իւր մոնղոլեան խաբէութեան վրայ պատուաստել է բիւզանդական խորամանկութիւնը։ Նա գիտէ իւր հպատակ ժողովուրդների մէջ միշտ խռովութիւններ սերմանել, նրանց միութեան կապերը խզել։ Ով որ ուսումնասիրել է Կ. Պոլսի Հայոց լրագրութիւնը, կը յիշէ, որ Երուսաղէմի ս. Յակոբեայ վանքը մի երկպառակութեան խնձոր է Կ. Պոլսի Հայոց եւ յունաց պատրիարքարանների մէջ. ամեն տարի սուրբ Յարութեան տօնին միշտ անկարգութիւններ են պատահում Հայ եւ յոյն աբեղաների մէջ. շատ անգամ այդ կռիւները արիւնհեղութեան են հասնում. բայց այսքան տարիների ընթացքում կառավարութիւնը վերջ չդրեց նրանց վէճերին, թէեւ չնչին բաներին։

Այժմ, կարծեմ, ընթերցողը մեզ հետ կը համաձայնուի, թէ ինչ վտանգ է սպառնում հայոց եկեղեցուն Թիւրքիայում, եւ եթէ դա պէտք է լինի ազգի գոյութիւնը պահպանող հիմունքը, նրա կեանքը խիստ երկբայական է....։ Բերլինի դաշնագրի համեմատ Թիւրքիայի խոստացած "կրօնի ազատութիւնը„ մի նոր ասպարէզ պիտի բաց անէ եւրոպացի քարոզիչների առջեւ, եւ հայերը՝ Փոքր-Ասիայի հովանաւորող անգլիացիներից պաշտպանութիւն գտնելու յուսով պիտի զոհեն իրանց կրօնը. ո՞վ կարող է մրցութիւն անել նրանց հետ. — մեր անհոգ հոգեւորականութի՞ւնը, թէ՞ մեր թեթեւսօլիկ ուսումնականները ... — Ո՛չ ոք, մեր կարծիքով։ Այժմ կը մնայ Թիւրքիայի հայերին թողնել եկեղեցին, թողնել կրօնը անհատների խղճի վրայ եւ ձեռք մեկնել հայ-կաթոլիկներին, հայ-բողոքականներին եւ հայ-մահմետականներին, եւ ասել նրանց. "Մենք եղբայրներ ենք, մենք միասին պէտք է բաժանենք մեր ներկան եւ ապագան, թող եկեղեցին չբաժանէ մեզ, միացնենք մեր ուժերը եւ միասին գործենք։„

Վերջացնելով այս գլուխը, կը համառօտենք մեր կարծիքը այս խօսքերով. այժմ Կ. Պոլսի պատրիարքը՝ որ զբաղուած է Թիւրքիայի հայերին տրուելիք վերանորոգութիւններով, նախ եւ առաջ պէտք է միանայ հայ-կաթոլիկների եւ հայ-բողոքականների ներկայացուցիչների հետ, եւ որպէս ընդհանուր ազգային գործ, գլխաւորապէս պէտք է ի նկատի ունենայ հետեւեալ պահանջները. ա) Երկրագործ գիւղացին սեպհական հող ունենայ եւ նրան ապահովութիւն տրուի ազատ մնալ բռնաւորների, հարստահարիչների աւազակութիւններից։ բ) Հայերն իրաւունք ունենան զէնք կրելու, որպէս իրանց դրացի ազգերը, եւ փոխանակ զինուորական տուրք վճարելու, նոյն վճարով

կազմեն ազգային միլիցիա՝ զանազան վայրենի ցեղերից՝ քրդերից, չերքէզներից իրանց կեանքը եւ կայքը պահպանելու համար։ գ) Հայոց Ազգային Սահմանադրութիւնը, նոր իրաւունքներով եւ արտօնութիւններով կատարելագործելով, տարածուի բոլոր հայաբնակ գաւառներում։ դ) Ազգը եւ ազգային առանձնայատկութիւնները պահպանելու համար այնպիսի կարգադրութիւններ լինին, որ սահման դրուի մահմետականների մոլեռանդութեանը, եւ բռնի հաւատափոխութիւններին, առեւանգութիւններին վերջ դրուի։ Այլեւ վանքերի եւ ազգային դպրոցների առաջադիմութիւնը սահմանափակող Թիւրքիայի գործ դրած խորամանկ միջոցները հեռացուին, որ ուսումն ու կրթութիւնն անարգել ընթացք ստանան։

Ժամանակ է թօթափել հին նախապաշարմունքների փոշին, ժամանակ է ձեռք առնել Դրօշը, որպէս մի նոր կապ մեր եւ մեզանից օտարացած ազգայինների մէջ, որպէս մի նոր աւազան, ուր հայ-կաթոլիկը, հայ-մահմետականը եւ հայ-բողոքականը կը մկրտուեն նոր հոգւով եւ նոր կեանքով, եւ կը դրոշմուին ազգայնո–ընէան անունով. դրանով միայն կարող ենք միացնել մեզ հետ մեր եղբայրներին, որ բաժանեց եկեղեցու աւազանը . . . ։

# ՔՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ

Բերլինի վերջին կոնգրէսի վճիռները Յունաստանի եւ Չերնոգորիայի վերաբերութեամբ կողմնակի կերպով մեր-ժելու եւ եւրոպական պետութիւնների պահանջումների առջեւ դժուարութիւններ յարուցանելու համար Բ. Դուռն ստեղծեց ալբանական միութիւնը։ Իսկ հայկական խնդիրը իւր խանձարուրի մէջ խեղդելու համար նա աշխատում է այժմ կազմել մի քրդական միութիւն։

Դեռ մի քանի ամիս առաջ Կ. Պոլսի Թուրք մամուլը անամօթաբար սկսեց հռչակել քուրդ տարրի քաղա-քակրթական հրաշալիքները, որոնցով հայկական լեռների այդ վայրենի գազաններին աշխատում էր ներկայացնել Եւրոպայի աչքում ոչ միայն իբրեւ արեւելքի, այլեւ իբրեւ արեւմուտքի լուսաւորիչներ։ Մի այդպիսի երե-խայական աչքակապութիւնը՝ Թուրք մամուլի կողմից, ստոր է ամեն կրիտիկայից, այն մամուլի, որ մի ժամանակ պա-հանջում էր քրդերի իսպառ բնաջինջ անելը, նրանց ոչնչացնելը, որպէս անպէտք եւ վնասակար մի տարր, որպէս զի ասիական Թիւրքիայի արեւելեան սահմանագլուխներն ազատուէին այդ աւազակների անընդհատ ասպատակու-թիւններից։

Սուլթան Աբդուլ Մէջիդը յայտնուեցաւ որպէս մի սպառնալի գործիք քրդերին ոչնչացնելու համար եւ նրանց անշուշտ վիճակուած կը լինէր ենիչէրիների կոտորածը,

եթէ այն ժամանակուայ երեւելի դիպլոմատ եւ առաջին վէզիր Ալի փաշան չմեղմէր սուլթանի բարկութիւնը։ Խորամանկ վէզիրը կարողացաւ համոզել խալիֆների դիւրահաւան գահակալին, յայտնելով այն միտքը, թէ քուրդերը թէեւ աւազակ, բայց միեւնոյն ժամանակ պատրաստի զինուորներ են Թիւրքիայի համար, եւ կառավարութիւնը պէտք է փոքր ի շատէ զիջանի նրանց անկարգութիւններին, որպէս զի նրանք միջոցներ ունենային ապրելու եւ հարկաւորած ժամանակ ծառայէին որպէս քաջ պատերազմողներ։

Իսկ այդ զիջողութիւնը խիստ թանգ էր նստում կառավարութեան։ Ամայացնելով սահմանագլխի ամբողջ գաւառները, վերջին չքաւորութեան մէջ ձգելով ժողովուրդին, խանգարելով երկրագործութիւնը եւ վաճառականութիւնը, քրդերը ոչ միայն իրանք հարկ չէին վճարում, բայց միեւնոյն ժամանակ զրկում էին տէրութեան գանձարանը որեւիցէ եկամուտ ստանալու այն երկրներից, որ այդ վայրենիները դարձրել էին իրանց յափշտակութիւնների ասպարէզ։

Սուլթան Աբդուլ Ազիզի կառավարութիւնը քրդերին զսպելու համար այն եզրակացութեան հասաւ, թէ պէտք է նրանց զինաթափ անել, թէ պէտք է նրանց հեռացնել վրանաբնակ հովուի թափառաշրջիկ կեանքից եւ ընտելացնել երկրագործի հաստատաբնակ կեանքին։ Ամեն աշխատութիւններ ապարդիւն անցան եւ քրդերը մնացին միշտ աստանդական հովիւներ եւ իրանց անասունների հօտերով ամառը թափառում են Հայաստանի հովասուն լեռների վրայ, իսկ ձմեռը իջնում Տիգրիսի հովտի ջերմ տափարակների վրայ։ Իսկ ինչ որ վերաբերում է նրանց զինաթափ անելուն, այդ նոյնպէս մնաց անկատար, չնայելով որ

Վանի փաշաներից մէկը հնարեց մի ծիծաղելի տուրք, որով քրդերը պարտաւորւում էին վճարել մի նշանակեալ հարկ, եթէ շարունակէին զէնք կրել։

Այդ միջոցներում սկսուեցան կառավարութեան ճնշումները քուրդ ցեղապետների վրայ։ Բադրխան-բէկին աքսորելը եւ նրա ազգատոհմի մեծ մասը՝ սրից անցկացնելը պէտք է համարել այն սաստիկ հարուածներից մէկը, որ թուրք կառավարութիւնը որեւիցէ ժամանակ հասցրել է քրդերին։ Դրանից յետոյ քուրդ ցեղապետները դարձան կառավարութեան ներկայացուցիչների ձեռքում մի տեսակ արդիւնքի աղբիւր։ Նրանց բանտարկում էին, տանջում, աքսորում, եւ այդ բոլորը կատարւում էր ոչ այնքան երկիրը խաղաղացնելու նպատակով, որքան օգուտ էր բերում փաշաներին, որոնք կաշառքներ ընդունելով, կրկին բաց էին թողնում կալանաւորներին։ Կարգ եւ կանոն պահպանելու այդ ձեւը առիթ էր տալիս քուրդ աւազակներին աւելի եւս եռանդով յարատեւել իրանց յափշտակութիւնների մէջ՝ կապիտալ ձեռք բերելու համար, որպէս զի նրանով կարողանային ազատուել, եթէ միւս անգամ պատահէր նրանց կալանաւորուած լինել։

Այդ, քրդերի հասկացողութեամբ, անիրաւացի ճնշումները, այդ անդադար հալածանքները սնուցին քրդերի մէջ մի սաստիկ թշնամութիւն դէպի թուրք կառավարութիւնը մասնաւորապէս եւ դէպի առհասարակ թուրքերն ընդհանրապէս։ Խանգարում էին նրանց սովորական կեանքի եղանակը, զրկում էին նրանց ապրուստի միջոցներից՝ աւազակութիւնից, որ քրդերի ցեղային եւ աւանդական սովորութեամբ. համարւում է ոչ բոլորովին անբարոյական մի պարապմունք։

Այդ ատելութիւնը դէպի թուրքերը առիթ տուեց

քրդերին աւելի մօտենալ հայերին եւ աւելի մտերմանալ նրանց հետ։

Քրդերի ամբողջ ժողովուրդը, բաժանուած լինելով բազմաթիւ տարբեր եւ միմեանց հետ թշնամի ցեղերի, անկարելի էր, որ նրանց մէջ կազմուէր միութիւն, որով կարողանային ընդդիմանալ կառավարութեան ճնշումներին։ Պատսպարուած լինելով հայկական լեռների մէջ, նրանք իրանց վրէժխնդրութիւնը լցնում էին նրանով, որ կողոպտելով երկրի մի մասը, հեղեղի նման անցնում էին մի ուրիշ երկիր, եւ տեղային վարչութիւնները իրանց անզօր ուժերով երբէք չէին կարողանում վերջ դնել քրդերի անընդհատ արշաւանքներին։

Իսկ այդ ցեղերի մէջ կային եւ այնպիսիները, որոնք համեմատաբար աւելի հանգիստ էին բնաւորութեամբ, որոնք, որպէս միամիտ հովիւներ, ապրում էին նահապետական պարզ կեանքով։ Այդ վերջինների ցեղապետները ոչ սակաւ անգամ դիմում էին հայ էֆէնդիների եւ հայոց հոգեւոր առաջնորդների օգնութեանը՝ թուրք կառավարիչների կամայականութիւնից պաշտպանութիւն գտնելու համար։ Հայ էֆէնդիները եւ հայոց հոգեւոր առաջնորդները, որոնք աւելի նշանակութիւն ունէին կառավարութեան առջեւ, որպէս երկրի գլխաւոր եւ մեծամասնութիւն կազմող ազգաբնակութեան ներկայացուցիչներ, չէին խնայում իրանց պաշտպանութիւնը, թէեւ այդ պաշտպանութիւնը շատ հաճելի չէր կարող լինել հայ ժողովրդին, որ պատմական ատելութիւն ունէր դէպի քրդերի առհասարակ բոլոր ցեղերը։ Այդ էր պատճառը, որ Վանի առաջնորդ Պողոս վարդապետը յարուց իւր դէմ մի ահագին կուսակցութիւն այդ պատճառով միայն, որ նա պաշտպանում էր քուրդ ցեղապետներին, նրանց հետ բարեկա-

մութիւն էր պահպանում, եւ պատահած ժամանակ, իւր սեպհական ծախքերով, ազատում էր նրանց բանտերից։ Շարունակ տասն տարի Վանի հայերը բաժանուած էին երկու կուսակցութեան, որոնցից մէկն աշխատում էր պաշտօնից հեռացնել քրդասէր առաջնորդին, իսկ միւսն աշխատում էր պահպանել նրան։ Այդ կռիւները երկար զբաղեցրին Կ. Պոլսի հայոց մամուլին եւ ոչ սակաւ հոգսեր պատճառեցին պատրիարքարանին։

Հայ առաջնորդների եւ հայ էֆէնդիների քրդերի խաղաղասէր ցեղերին պաշտպանելը մի ուրիշ նպատակ չունէր, բացի նրանից, որ վաճառականները, այդ ցեղերի հետ առեւտրական յարաբերութիւններ ունէին, մատակարարում էին նրանց կենսական անհրաժեշտ պիտոյքներ եւ փոխարէնն ստանում էին նրանց հովուական արդիւնաբերութիւնը, որպէս էին իւղ, պանիր, բուրդ եւ անասուններ։ Շատ պարզ է, որ քրդերի կողոպուտը թուրք կառավարութեան պաշտօնատարներից վնասում էր հայ վաճառականների, հայ կապիտալիստների շահերին, որովհետեւ քրդերը միշտ նրանց փողի պարտականութիւն ունէին։

Այդ յարաբերութիւններն ստեղծեցին հայերի եւ քրդերի մի քանի ցեղերի մէջ սերտ հաւատարմութիւն, որ աւելի բարեկամական կերպարանք էր ստանում, որքան թուրքերը նեղացնում էին նրանց։ Բայց կային հայերին եւ թշնամի ցեղեր։ Այս վերջինները նոյնքան թշնամի էին հայերի հետ, որքան իրանց հարազատ ազգակիցների հետ։ Սակաւ չէր պատահում, որ քրդի մի ցեղ յարձակվում էր միւսի վրայ եւ կողոպտում էր նրան. եւ այսպիսով կռիւը, կոտորածը, անհաշտութիւնը նրանց մէջ մնում էր որպէս ժառանգութիւն եւ անցնում էր սերունդից սերունդ։

Այդ կռիւների մէջ խառնվում էին եւ հայեր։ Աղբակայ, Շատախի, Բուլանըխի, Մոկաց երկրի եւ Սասունի հայերը ունէին իրանց դաշնակից քուրդ ցեղեր, որոնց հետ միացած շատ անգամ կռվում էին ընդհանուր թշնամու հետ։ Ոչ-մահմետական, այլ "եզդի„ աղանդին պատկանող քրդերը, միշտ հալածուած լինելով իրանց մահմետական ցեղակիցներից, հայերի հետ պահպանում էին բարեկամական յարաբերութիւններ։ Հայերն այն աստիճան համատարմութիւն ունէին դէպի այդ ցեղը, որ իրանց անասունները յանձնում էին դրանց հովիւներին պահելու, հայերի տան սպասաւորները, աղախինները, երկրագործական մշակները մեծ մասամբ եզդիներ էին։ Դրանք կատարում էին հայերի մի քանի կրօնական արարողութիւնները, պահում էին ս. Սարգսի, ս. Գէորգի պասերը, զոհ էին մատուցանում հայոց նշանաւոր ուխտատեղիներում, եւ ս. Գրիգոր Լուսաւորչին ու Դաւիթ մարգարէին համարում էին Աստուծոյ ընտրեալների ամենագլխաւորը։ Եզդիները համարեա բոլորը գիտէին հայերէն խօսել եւ մեր վարդապետներից մէկը միայն (որ հայ կղերից ծաղրական մտքով ստացաւ "հրաշագործ„ տիտղոսը) մտածեց եզդիների մէջ տարածել Լուսաւորչական կրօնը եւ գրագիտութիւն հայոց այբ-բենարանով։

Քրդերի եւ հայերի յարաբերութիւնները այս դրութեան մէջ էին մինչեւ վերջին ռուս-թրքական պատերազմի ծագելը։

Պատերազմի ժամանակ Թուրքաց կառավարութիւնը, նրան բոլորովին կրօնական բնաւորութիւն տալով, շէյխերի, մուֆթիների եւ ղազիների ձեռքով կարողացաւ վառել քրդերի ֆանատիկոսութիւնը։ Եւ այն բոլոր քուրդ հրոսակները, որ հազարներով դիմում էին Տէր-Ղուկասովի

գունդերի դէմ, — բոլորը կռւում էին իրանց հոգեւորականների առաջնորդութեամբ, որպիսիներն էին՝ Շէյխ-Ջելալէդդինը եւ Շէյխ-Իբադուլլահը։

Թէեւ պատերազմի ժամանակ քուրդ հրոսակները մի նշանաւոր օգուտ չկարողացան բերել, թէեւ նրանք կողոպտում էին, այրում էին եւ աւերակ էին դարձնում բուն Թուրքաց երկրները, որոնք դեռ գրաւուած չէին ռուսներից, այնուամենայնիւ այդ բարբարոսութիւնները դարձրին քրդերի վրայ անգլիական ագէնտների ուշադրութիւնը, որոնք Հայաստանում տարածուած էին Թուրքաց բանակների մէջ։ Անգլիացիք գտան Հայաստանում երկու գլխաւոր ցեղեր, որոնցից մէկը, քրդերը՝ ատում էին „գեաւուրներին" եւ խառնուեցան Թիւրքաց զօրքերի հետ, իսկ միւսը, հայերը՝ համակրում էին „գեաւուրներին" եւ ամեն հնարքներ գործ էին դնում հեշտացնելու ռուսաց յաղթութիւնները։ Քրդերի հակակրութիւնը եւ հայերի համակրութիւնը դէպի ռուսները, — այդ երկու հակառակ արտայայտութիւնները բաւական էին մի սխալ գաղափար տալու անգլիացիներին, յօրինելու այն պլանը, որ նրանք նպատակ ունէին կազմել Հայաստանի վերաբերմամբ։

Բայց Անգլիացիք չուզեցին մտածել, որ եթէ Թուրքաց հայերը համակրութեամբ էին վերաբերվում դէպի ռուսները. այդ ունէր իւր բնական պատճառները. Նրանք տեսնում էին իրանց ազգակիցներին ռուսական Հայաստանում աւելի բարեբախտ վիճակի մէջ, մինչդեռ իրանք օրըստօրէ մաշվում եւ ոչնչանում էին մի անկարգ եւ նենգամիտ կառավարութեան բարբարոսութիւնից։ Եթէ այդ կառավարութիւնը փոխուէր դէպի լաւը, անտարակոյս, հայերը կը հաշտուէին նրա հետ։

Բայց հայերի վիճակը շատ չէր հետաքրքրում անգլիացիներին. Նրանց մի ուրիշ բան էր հարկաւոր։ — Նրանց հարկաւոր էր մի զօրաւոր պատնէշ, որ կանգնեցնէին ռուսների առջեւ, փակէին նրանց ապագայ աշխարհակալութիւնների ճանապարհը դէպի Հայաստան, թոյլ չտալով նրանց մօտենալ Եփրատի հովտին, որով իրանց Հնդկաստանի շահերը պահպանած էին համարվում։ Եւ այդ պատնէշը, անգլիացիների կարծիքով, կարելի էր կառուցանել միմիայն քրդերից, որովհետեւ հայերին հաւատալ եւ հայերի վրայ յոյս դնել նրանք չէին կարող, մանաւանդ որ քրդերին աւելի ընդունակ էին գտնում իրանց նպատակների համար. քրդերը իրանց ձեռքում զէնք ունէին, իսկ հայերը ոչ։

Այդ էր պատճառը, որ երբ պատերազմի ժամանակ զանազան հայկական քաղաքներում նշանակուեցան անգլիական կոնսուլներ, Բիկոնսֆիլդի մինիստրութեան եւ նրա Կ. Պոլսի ներկայացուցչի՝ Լէարդի առաջին հոգսը եղաւ Հայաստանը Քրդստան անունով մկրտել եւ քրդական միութեան սկիզբը դնել։

Պատերազմից յետոյ անգլիական կոնսուլներն սկսեցին առանձին ուշադրութիւն դարձնել քուրդ տարրի վրայ, երեւակայական միութիւնը նրանց մէջ կազմելու մտքով։ Սկսեցին նրանց առաջ քաշել, հայերին յետ մղել. սկսեցին նրանց ցեղապետների եւ շէյխերի հետ բարեկամութիւն հաստատել եւ ամեն միջոցներ գործ դնել, որ քրդերի անջատուած եւ միմեանց հետ թշնամական յարաբերութիւն ունեցող ցեղերի ընդհանուր ուժերը միացնեն մի ամբողջութեան մէջ։ Դա ոչ միայն դժուարին, այլ եւ անհնարին էր։ Դարերով կազմուած ժառանգական անհաշտութիւնը քրդերի հարիւրաւոր ցեղերի մէջ չէր կարելի

անգլիական քաղաքագիտութեան հրաշքով միանգամից անհետացնել, մանաւանդ որ վայրենի քուրդը քաղաքագիտական նրբութեան հետ շուտով ընտելանալ չէր կարող: Այդ բոլոր ջանքերի հետեւանքն այն եղաւ, որ քրդերը, տեսնելով որ իրանց վրայ ուշադրութիւն են դարձնում, աւելի երես առան, աւելի յանդուգն դարձան, եւ հէնց այն ժամանակ, երբ ռուսաց բանակը կանգնած էր Սան-Ստեֆանոյի մէջ, — Մուսի կողմերում քրդերն սկսեցին կոտորել հայերին, իսկ Աղբակայ Բաշկալէի կողմերում Շէյխ-Իբադուլլահը ոչնչացրեց աւելի քան յիսուն հայոց գիւղեր, եւ արժանացաւ Վանի անգլիական կօնսուլի սիրալիր այցելութեանը:

Բիկօնսֆիլդի մինիստրութեան ընկնելուց յետոյ յիշեալ երեւակայական պատնէշը — այդ արհեստական խարխուլ շէնքն ինքն իրան քայքայուեցաւ: Պրոտեկտորական Միութեան գաղափարը օդի մէջ ցնդուեցաւ, բայց Պրոտեկտորատ անունը մնաց. Անգլիացիք չկարողացան իրանց Թքածը յետ լիզել:

Երբ Բերլինի վերջին կօնգրէսի սեղանի վրայ դրուեցան Յունաստանի եւ Չերնօգօրիայի խնդիրները, եւ երբ Կ. Պոլսի եւրոպական դեսպանները ներկայացրին Բ. Դրանը իրանց միաբան գրութիւնը Հայաստանի վերանորոգութիւնների մասին, այն ժամանակ Թուրքաց կառավարութիւնը ակամայից յիշեց Պրոտեկտորական Միութիւնը, որ Բիկօնսֆիլդի մինիստրութեան ծնունդն էր: Ասում ենք ակամայից, որովհետեւ Թուրքաց կառավարութեանը շատ հաճելի չէր կարող լինել այդ Միութիւնը, որի բաժանման մասին ինքը շատ տարիներով աշխատած էր, արհեստական կերպով անհաշտութիւն սերմանելով քուրդ ցեղերի մէջ, որպէս զի նրանց միաբանութիւնը խանգարէ, նրանց ուժերը Թուլացնէ եւ այդպիսով հպատակ եւ հարկատու ժողովուրդ դարձնէ:

Բայց պէտք էր հաշտուել հանգամանքների հետ, քաղաքականութիւնն այդ պահանջում էր․ պէտք էր Եւրոպային մի խրտուիլակ ցոյց տալ։

Այդ ժամանակ, որպէս սկզբում յիշեցինք, Թուրք մամուլը մի կողմից սկսեց վառել քրդերի խաւար ֆանատիկոսութիւնը, միւս կողմից հռչակել նրանց քաղաքակրթական արժանաւորութիւնները, նրանց գրականութիւնը, դպրոցները, արհեստը եւ այլն, որոնց բոլորը միայն "Հակիկաթի" եւ "Ակիբեթի" երեւակայութեան մէջ գոյութիւն ունէին։ Թուրք մամուլն սկսեց նաեւ դատապարտել "վայրենի" հայերին, որոնք "բարբարոսաբար" հալածում էին "խեղճ" քրդերին, այլ խօսքով, — սկսեց բողոքել գառների դէմ, որ գիշատում էին գայլերին . . .

Դեռ Բ. Դուռը չէր տուած դեսպանների միաբան գրութեան պատասխանը Հայաստանի վերանորոգութիւնների մասին, յանկարծ Կ. Պոլսում յայտնուեցան քուրդ պատուիրակներ, իբր Շէյխ-Ոբադուլլահի[1] կողմից ուղարկուած (բայց իսկապէս Թիւրքաց մայրաքաղաքի մէջ սարքուած), որոնք ներկայանալով Աբէդին-փաշային, պահանջում էին քրդերի եւ Քրդստանի (անունը փոխած Հայաստանի) համար ինքնավարութիւն։

[1] Շէյխ-Իբադուլլահը, Թիւրքիայի քրդերի այդ կեղծ ներկայացուցիչը, իսկապէս պարսից հպատակ մի քուրդ ցեղի շէխն է, այսինքն մօլլան կամ հոգեւորականը։ Նա ինքը եւ իւր ցեղը թափառում են պարսից՝ երբեմն Ուրմիի, երբեմն Թար-գաւառի եւ երբեմն Մար-գաւառի կողմերում։ Ռուս-թիւրքական պատերազմի ժամանակ Բայազէտի վրայ յարձակուող քուրդ հրոսակներից մէկի առաջնորդն էր նա։ Այստեղ նշանակութիւն ստացաւ եւ Թուրքաց կառավարութեան ուշադրութիւնը դարձրեց իւր վրայ։ Այն ժամանակ, երբ Կ. Պոլսում յայտնուեցան իբր նրա կողմից պատուիրակներ, նա Պարսկաստանումն էր եւ գուցէ ամենեւին տեղեկութիւն չունէր, որ իւր անունով բանակցութիւններ են լինում Բ. Դրան հետ։ Յետոյ տեսնում ենք, որ Շէյխ-Իբադուլլահը Պարսկաստանի Սօվուղ-Բուլաղ գաւառումն է սկսել իւր անկարգութիւնները։

Ի՞նչ էր նշանակում այդ աչքակապութիւնը։

Հարցը շատ պարզ է։ Խօսքը Հայաստանի (Թիւրքերի Հայեացքով Քրդստանի) ինքնավարութեան եւ նրա վերա-նորոգութիւնների վրայ էր։ Եթէ պէտք էր տալ այդ երկրին ինքնավարութիւն, ինչո՞ւ չտալ քրդերի անունով, որոնք այդ երկրի տէրն էին, որոնք այդ երկրի նախկին բնիկներն էին եւ որոնք իրանց կուլտուրայով (?!) բարձր էին միւս բոլոր ազգաբնակութիւններից, առաւելապէս Հայերից...։

Եւրոպական դեսպանները, ի Հարկէ, ուշադրութիւն չդարձրին Աբէդին-փաշայի այդ ֆօկուսների վրայ եւ քուրդ պատգամաւորութիւնը ոչինչ Հետեւանքի չՀասաւ։

Դրանից յետոյ ալբանական միութեան Հեղինակը՝ Աբէդին-փաշան, սկսեց թրքական միութեան վրայ երազել։ Այդ միջոցին Թուրք մամուլը, Հետեւաբար, իւր խօսքը փոխել սկսեց։ Այժմ քրդերին մի կուլտուրական, զար-գացած, խաղաղասէր եւ բարոյական ժողովուրդ ներկայաց-նելը շատ ձեռնտու չէր կարող լինել։ Նոյնպէս ձեռնտու չէր ասել, թէ քրդերն այն աստիճան բարի, առաքինի եւ խեղճ են, որ Հարստահարվում են "վայրենի" Հայերից։ Պէտք էր ներկայացնել նրանց որպէս անգութ գազաններ, որպէս բարբարոս ֆանատիկոսներ, որոնք պատրաստ են մի րոպէում ոչնչացնել բոլոր Հայերին, եթէ նրանց ինքնա-վարութեան վրայ խօսք լինէր։

Այդ բոլորի մէջ այն միտքը կար, որ Եւրոպային ցոյց տային, թէ Բ. Դուռը Հակառակ չէ Հայաստանում վերա-նորոգութիւններ մտցնելու առաջարկութեանը, եւ նա ինքը շատ է ցանկանում կատարել այդ, բայց նա ունի իւր առջեւ մի մեծ դժուարութիւն եւ այդ դժուարութիւնը կայանում է քրդերի եւ առՀասարակ մաՀմետական ամբոխի մոլեռանդութեան մէջ, որոնց կրօնին եւ սովորութիւն..

ներին հակառակ է ամեն մի վերանորոգութիւն։ Կամենում էին ցոյց տալ, որ եթէ կառավարութիւնը մահմետական ժողովրդի կամքի հակառակ գնար, կարող էր պատճառ տալ մի մեծ կոտորածի քրիստոնէից դէմ, որի համար Բ. Դուռը դժուարանում էր իրան պատասխանատու համարել։

Թէ որքան խաբէական էին այդ ենթադրութիւնները, կարող է հասկանալ ամեն մի մարդ, որ փոքր ի շատէ տեղեկութիւն ունի ասիական Թիւրքիայի դրութեան վրայ։ Մահմետականներն այդտեղ նոյնքան ճնշուած են, նոյնքան հարստահարուած անկարգ կառավարութիւնից, որքան քրիստոնեաները։ Մահմետականներն աւելի եւս ցանկանում են մի բարւոք կառավարութիւն, եւ դրան ապացոյց կարող է լինել դեռ չզսպուած Մունթէֆիկ արաբների ապստամբութիւնը, Ղօզան Դաղլիների ապստամբութիւնը եւ այն վերանորոգութիւնները, որ պահանջում էր Միդհատ-փաշան Սիրիայի համար, եւ որ յամառութեամբ մերժուեցաւ Բ. Դռնից։

Մահմետական մոլեռանդութիւնը մի խրտուիլակ է, որով Բ. Դուռն աշխատում է միշտ վախեցնել Եւրոպային։ Այնքան խօսվում է Հայաստանի վերանորոգութիւնների, Հայաստանի ինքնավարութեան մասին, այնքան բացատրութիւններ են տրվում Բ. Դրան կողմից, բայց որքան հայկական լեռների գայլերը տեղեկութիւն ունին այդ բոլոր բանակցութիւնների մասին, նոյնքան տեղեկութիւն ունի քուրդ ժողովուրդը։ Այդ բոլորը խօսվում, շինվում, սարքվում են Կ. Պոլսում։ Քուրդին ի՞նչով կարող են հետաքրքրել Հայաստանի ինքնավարութիւնը կամ այնտեղ մտցնելիք վերանորոգութիւնները։ Նա ոչ լրագիր է կարդում եւ ոչ գիտէ, թէ ինչ է կատարվում իւր բնակած լեռների միւս կողմում։

Այսու ամենայնիւ Բ. Դրանը նպաստաւոր էր ցոյց տալ մի [illegible] [illegible]. եթէ նա գոյութիւն չունէր, պէտք էր յայտնել, թէ կարող է կազմուել, որպէս այդ ենթադրում է "Օսմանլի" լրագիրը:

Արդեօք կարո՞ղ է կազմուել. ահա այդ հարցը պարզելու համար մենք հարկաւոր ենք համարում մի փոքրիկ գաղափար տալ, թէ ինչ տեսակ ժողովուրդ է քուրդը:

Նախնական ժողովուրդներից, որոնք մնացել են արեւելքում, չկայ մէկը, որ քրդերի նման պահպանած լինի կենցաղավարութեան այն ձեւերը, որով ապրում էին հովիւներն իրանց նահապետական դարերում: Եւ արեւելքում չկայ մի ժողովուրդ, որ քրդերի նման բաժանուած լինի այնքան բազմաթիւ ցեղերի: Միայն Վասպուրականի մէջ կարելի է հաշուել միմիայն 120 միմեանցից տարբեր ցեղեր, որոնք զանազանվում են բարբառներով, սովորութիւններով եւ մինչեւ անգամ կրօնով: Այդ ցեղերը ընդհանուր ոչինչ չունին, նրանց չէ միացնում որեւիցէ հասարակական կապ, ամեն մի ցեղ առանձնացած է իւր մէջ, ապրում է իւր նեղ, սահմանափակ կեանքով: Մի ցեղի շահերը շօշափելով միւսին, պատճառ է տալիս նրանց մէջ անհաշտ թշնամութեան. ոխակալութիւնը, արեան վրէժխնդրութիւնն անցնում է նրանց մէջ սերունդից սերունդ:

Որպէս խաշնարած եւ հովիւ ժողովուրդ, քրդերը մինչեւ այսօր չսովորեցան հաստատաբնակ կեանքին: Նրանց հայրենիքն այնտեղ է, որտեղ նրանց անասունների համար արօտ կայ: Այդ պատճառով ամբողջ տարի գաղթում են մի երկրից դէպի միւսը:

Գարունը, ամառը եւ աշունը անց են կացնում հայկական լեռների վրայ, իսկ ձմեռը գաղթում են դէպի

աւելի տաք երկիրներ, որպիսի են Գարմեանի, Հեքարիի գաւառները, Տիգրիսի արեւելեան ափունքի դաշտավայրերը, կամ Միջագետքի անապատի տափարակները։ Կան այնպիսի ցեղեր, որոնք ձմեռը մնում են Հայաստանում, տարածվում են Հայոց գիւղերում եւ Հայոց տների մէջ հիւրասիրութիւն են գտնում։ Բուն քրդական գիւղերը, որոնք խիստ սակաւաթիւ են Հայաստանում, ներկայացնում են մի կարգ գետնափոր խրճիթներ, եւ տարուայ երեք եղանակներում դատարկ են լինում։ Միայն ձմեռը կարելի է նրանց մէջ բնակիչներ գտնել, որոնք իրանց անասունների հետ խլուրդների նման պատսպարվում են մթին, գետնափոր խորշերում եւ անհամբերութեամբ սպասում են գարնանը, որ դուրս գան իրանց որջերից։

Ամբողջ Հայաստանում չէ կարելի ցոյց տալ մի քաղաք, որ գոնէ մի հատ քուրդ բնակիչ ունենայ։ Ի՞նչ պէտք է անէ քուրդը քաղաքում. նա արհեստ չգիտէ, վաճառականութեամբ չէ պարապում, խանութ չունի, ծառայութեան մէջ չէ մտնում։ Քուրդը հովիւ է, նրա բնակութեան տեղը՝ լեռները, ձորերը եւ անապատներն են։

Թուրք կառավարութեան բոլոր ջանքերը, քրդերին հաստատաբնակ անելու մասին, անցան ապարդիւն։ Թուրք կառավարութիւնը ամեն հնար գործ է դնում, որ քրդերը կալուածատէր լինեին, պարապեն երկրագործութեամբ։ Բայց քուրդը հող չէ սիրում. հողը կարող է կապել նրան երկրի հետ. մինչդեռ նա ցանկանում է ազատ լինել, գաղթել եւ անդադար գաղթել։ Աւազակը մէկ տեղում երկար կանգնել չէ կարող։

Քրդերի գիւղերը, ինչպէս ասացինք, Հայաստանում շատ փոքրաթիւ են, այն եւս ձմեռուայ բնակութեան համար։ Այդ գիւղերը, ինչպէս որ շուտով հիմնում են

նրանք, այնպէս էլ շուտով քանդում են եւ թողնում են աւերակ։ Քրդերի գիւղերը եւ նրանց շարժական "օբաները" ոչնչով չեն զանազանվում միմեանցից։ Տեսնում ես քրդերի մի խումբ իւր "ալաչուղները" (տաղաւարները) կազմում է մի ձորի մէջ, մնում է այնտեղ, որքան ժամանակ անասունների համար ճարակ կայ, հէնց որ վերջացաւ, հաւաքում է "ալաչուղները" եւ տեղափոխվում է մի ուրիշ ձոր։ Այսպէս էլ նա հիմնում է իւր "ղշլաղները" (ձմեռանոց)․ փորում է գետինը, ծածկում է թուփերով եւ մացառներով, եւ ահա նրա խրճիթը պատրաստ է․ միւս ձմեռ քուրդը թողնում է նրան եւ մի այլ տեղ է շինում նրա նման մի բան։

Քրդերը Հայաստանում (մասնաւոր բացառութեամբ) կալուածքներ, անշարժ սեփականութիւն չունին։ Եթէ նրանք ունին մի կտոր հող, տալիս են հայերին մշակելու համար։ Հանգամանքները երբեմն ստիպում են նրանց թողնել բնակած երկիրը․ այնուհետեւ նրանք այնքան հեշտութեամբ մոռանում են իրանց հողերը, որքան հեշտութեամբ ձեռք էին բերել նրանց։

Այս բոլորից պարզ երեւում է, որ քրդերը հայրենիք չունին․ նրանք ոչնչով կապուած չեն Հայաստանի հետ։ Դրանով պէտք է բացատրել քրդերի անդադար գաղթականութիւնը Պարսկաստանից դէպի Թիւրքիա, եւ Թիւրքիայից դէպի Պարսկաստան։

Քրդերը երբէք չեն եղել բարեկամ թուրքերին եւ լինել եւս կարող չեն։ Վերջին ռուս-թուրքական պատերազմի ժամանակ թէեւ աւարառութեան նպատակով քրդերից մի քանի խմբեր խառնուեցան թուրքաց բաշիբուզուկների հետ, բայց հէնց որ թուրքերը յաղթվում էին, քրդերը առաջինն էին լինում, որ սկսում էին կողոպ-

տել նրանց բանակը։ Թուրք զինուորների ամենաընտիր զէնքերը, որ ստացել էին անգլիացոց շնորհիւ, մեծ քանակութեամբ անցել էին քրդերի ձեռքը եւ վաճառվում էին Պարսկաստանում ամենաչնչին գներով։

Սխալ է եւ այն կարծիքը, որ առհասարակ տարածուած է քրդերի մասին, իբր թէ նրանք մի քաջ ժողովուրդ են։ Քրդերը, ինչպէս միւս վայրենի ցեղերը, այն քաջութիւնը չունին, ինչ որ հասկացվում է այդ բառի բուն նշանակութեամբ։ Իսկապէս քաջ լինելու համար պէտք է գիտակցաբար ոգեւորուած լինել որեւիցէ գաղափարով։ Բայց քուրդը իդէալ չունի։ Ի՞նչը կարող է դրդել նրան արիւն թափելու, բացի յափշտակասիրութեան ըղձից։ Իսկ մի այդպիսի քաջութիւն՝ գազանի քաջութիւն է, երբ որսի ետեւից է ընկնում։ Եթէ մի անգամ յաղթվում է քուրդը, մի անգամ ջարդ է ուտում, այնուհետեւ նա կորցնում է իւր բոլոր արիութիւնը։

Այսքան դարերի ընթացքում քրդերը Հայաստանում չկարողացան մի հասարակութիւն ստեղծել, հաստատ հիմք դնել եւ իրանց շահերով կապուած լինել այդ երկրի հետ։ Քրդերը Հայաստանի քաղաքացի չեն։ Նրանք նոյնպիսի թափառական խմբեր են, որպէս այդ երկրի բօշաները, գազաները, թուրքմէնները, չերքէզները եւ այլ վայրենի ցեղերը, որոնք այսօր այստեղ են, իսկ միւս օրը նրանց հետքն անգամ չէ երեւում։ Այս բոլորից շատ պարզ է, թէ որքան իրագործելի է այն գաղափարը, որ կոչվում է Քրդական Միութիւն։

Քրդական Միութիւն Հայաստանում կազմել անկարելի է. բայց մի բան կարող է պատահել. Թուրք կառավարութեան ներկայացուցիչները կարող են գրգռել քրդերի զանազան ցեղապետներին, այս եւ այն շէյխին, որ կողոպ-

տեն Հայոց գիւղերը։ Քրդերն այդ յանձն կառնեն, երբ նրանց թոյլ է տրվում անպատիժ աւազակութիւն գործել։ Նրանք կը սկսեն Հայաստանում կողոպտել, այրել, սպանել, եւ այդ բոլոր բարբարոսութիւններին Կ. Պոլսում կը տան քաղաքական կերպարանք։ Դեռ անցեալ տարուայ (1879) աշնան ժամանակ Շէյխ-Իբադուլլահն անցնելով Պարսկաստանի սահմանից Թուրքաց հողի վրայ, Աղբակայ եւ Բաշ-Կալէի գաւառում կրկին ոչնչացրեց մինչեւ քսան Հայոց գիւղ։ Այդ մի պարզ ասպատակութիւն էր, որ համարեա ամեն տարի պատահում է Հայաստանում, բայց Կ. Պոլսում նրան տուին քաղաքական բնաւորութիւն։

Նոյնը կարող է պատահել եւ այսուհետեւ։ Թուրքաց կառավարութեան ներկայացուցիչները գաղտնի կերպով կը գրգռեն քրդերին հայերի դէմ, կոտորած կը սկսուի. իսկ Կ. Պոլսում թէ Բ. Դուռը եւ թէ Թուրք մամուլը կը սկսեն գոչել՝ ահա ֆըշըռակոն ձըռընըմը. տեսա՞ք, այդ բոլոր կոտորածը Հայաստանին ինքնավարութիւն եւ հայերի համար արտօնութիւններ պահանջելու համար է։ Մինչդեռ քրդերն ինքնավարութեան եւ Հայաստանի վերանորոգութիւնների մասին ոչինչ գաղափար չունին, եւ հասկանալ անգամ չեն կարող, թէ ինչ բան է վերանորոգութիւնը։ Նրանք կը կատարեն իրանց բարբարոսութիւնները՝ ինչպէս միշտ, լոկ յափշտակութեան նպատակով, բայց Թուրքաց կառավարութիւնը կը տայ նրանց քաղաքական նպատակ։

Թէ այսպէս եւ թէ այնպէս, զանազանութիւնը մեծ չէ. — քուրդն արդեօք գիտակցաբա՞ր կը գործէ, թէ մեքենաբար, բոլորը միեւնոյն հետեւանքին կը հասնեն, որ Հայաստանում կոտորած տեղի կ՚ունենայ։ Փաստեր արդէն կան։ Երէկ մի հեռագիր կար, որով Վանի անգլիական

կօնսուլը իմացում է տալիս Կ. Պոլիս, թէ քրդերը ոչնչացրին Հայոց 13 գիւղ։

Հարցնում ենք, ի՞նչ պէտք է անեն այդ դէպքերում Հայերը։ Մինչեւ հիմա երբ քրդերը կողոպտում էին, այրում էին, սպանում էին, Հայերը դիմում էին Թուրքաց կառավարութեանը եւ դատաստան էին պահանջում։ Բայց հիմա, երբ կառավարութեան ներկայացուցիչներն իրանք են դրդում քրդերին բարբարոսութիւններ գործել, էլ ո՞ւմ կարող են դիմել Հայերը։ Մեզ կը պատասխանեն, թէ Եւրոպային, որ յանձն է առել հսկել Հայաստանի բարեկարգութիւնների վրայ։ Բայց մինչեւ Եւրոպան կը քննէ, կը տեղեկանայ Հայաստանում գործուածները, մինչեւ օգնութեան ձեռքը կը հասցնէ (կը հասցնէ՞ արդեօք), ինչպէս ասում են՝ “Ջուրը կը գայ, ջրաղացը կը տանէ„...։

Հայերն այժմ լաւ են հասկացել այդ։ Հասկացել են, որ հասել է մի վճռական րոպէ, երբ կամ պէտք է յանձն առնել ստրկաբար ոչնչանալ, կամ եթէ ցանկանում են իրանց գոյութիւնը պահպանել, հարկաւոր է միացած ուժերով ընդդիմադրել քրդերի վայրենի յարձակումներին։ Ուրիշ ճար չկայ։ Այդ իսկ պատճառով կազմուեցան Հայերից զինեալ խմբեր, որոնց նպատակն է ոչ թէ ապստամբութիւն, ոչ թէ պատերազմել Թուրքաց կառավարութեան դէմ, այլ պատժել քրդերին, եթէ նրանք յանդգնեն խռովել երկրի խաղաղութիւնը եւ կողոպտել անզէն հայ գիւղացիներին։ Այդ զինեալ խմբերը, որոնց թիւը փոքր չէ, շրջում են հայկական լեռների վրայ, դիտում են շարժումը եւ ամեն տեղ վրէժխնդիր են լինում, երբ նկատում են քրդերի կողմից որեւիցէ անզթութիւն։

Հայոց զինեալ խմբերը մինչեւ անգամ պաշտպանում են քրդերի խաղաղասէր ցեղերին, երբ պատահում է այս

վերջիններին ենթարկուել իրանց ցեղակիցների բարբարոսութեանը։ Այդ իսկ պատճառով քրդերից շատերը միացած են հայերի հետ եւ աւելի բարւոք են համարում կռուել ընդհանուր թշնամու դէմ, քան թէ վնասել հայերին, որոնցից միշտ օգնութիւն եւ հաւատարմութիւն են վայելած։

Հայոց զինեալ խմբերի հետ միացել են երեւելի Մար-Շիմոնի քաջ ասորիները։ Մար-Շիմոնը, Ջօլամերիկի լեռների այդ հզօր իշխանը եւ պատրիարքը չէր կարող մոռանալ այն հին եւ սոսկալի հարուածը, որ նախորդ Մար-Շիմոնի[1] ժամանակ Բօտանի բռնակալ Բադիր-խան-բէկ անունով քուրդ ասպատակը հասցրեց պատրիարքի տանը՝ իսպառ կողոպտելով նրան եւ կոտորելով մինչեւ տասն հազար ասորի։ Այն օրից քրդերի եւ Մար-Շիմոնի ցեղի մէջ շարունակվում է մի անընդհատ թշնամութիւն, որ շատ անգամ պատճառ է տալիս արիւնահեղ կռիւների։ Դեռ երկու տարի առաջ, երբ քրդերը ասպատակեցին Ջօլամերիկի մի քանի գիւղերը եւ այստեղ աւարի առան պատրիարքի ջորիների երամակը, ասորիները այդ ժամանակ սաստիկ ջարդ տալով քրդերին՝ յետ խլեցին կողոպուտը։ Ունենալով անդադար ընդհարումներ քրդերի հետ, Մար-Շիմոնը հէնց խաղաղութեան ժամանակներում միշտ պատրաստ ունի մինչեւ 30—40 հազար զինեալ մարդ. իսկ այժմ ամբողջ Ջօլամերիկի թէ հայերը եւ թէ ասորիները զինուած են։

Անցեալ ձմեռուայ սովը, իւր սարսափելի հետեւանքների հետ, միեւնոյն ժամանակ սաստիկ նպաստեց հայերի այժմեան շարժմանը։ Սովի ժամանակ հայերը պարզապէս

[1] Նեստորական ասորիների պատրիարքական աթոռը ժառանգական է. բոլոր պատրիարքները յաջորդաբար ընտրվում են միեւնոյն տանից եւ կոչվում են Մար-Շիմոն, որ նշանակում է Տէր-Սիմոն։

տեսան Թուրք պաշտօնատարների չարամտութիւնը, որոնք ամեն նենգաւոր միջոց գործ էին դնում, որքան կարելի է բազմացնել հայ սովամահների թիւը։ Այդ ժամանակից հայերը աւելի խորին կերպով համոզուեցան, որ Թուրքիան նպատակ ունի իսպառ բնաջինջ անել հայկական տարրը։ Այդ ժամանակից ծագեց հայերի մէջ անձնապաշտպանութեան զգացմունքը։

Սովը ունեցաւ իւր եւ ուրիշ օգուտները. նա կապեց բարոյապէս ամբողջ հայ ազգի սրտերը, որոնք աշխարհի ամենահեռաւոր անկիւններից սկսեցին թափել այնտեղ իրանց առատ նուէրները։ Սովը հաշտեցրեց հայերի հետ մի քանի քուրդ ցեղեր, որոնք հաւասար օժանդակութիւն էին ստանում հայոց մասնաժողովներից, որոնք Հայաստանի բոլոր քաղաքներում կազմուած էին սովատանջներին օգնելու նպատակով։ Վերջապէս սովի պատճառով ներկայ տարուայ գարնանը մշակների ահագին բազմութիւն՝ Վանի, Մուշի, Բաղէշի եւ Հին-Բայազիտի կողմերից անցան դէպի Ռուսաստան եւ տարածուեցան Անդրկովկասի բոլոր գաւառներում։ Այդ մշակները՝ այժմ լսելով Հայաստանի վտանգը, խմբերով վերադառնում են դէպի իրանց հայրենիքը։

Թուրքաց հայերի այժմեան շարժումն իրական փաստ է. նա դարեւոր տխուր հալածանքների մի ազդու հետեւանք է. նա պատմական անհրաժեշտութիւնների մի սոսկալի արտայայտութիւն է։ Թիւրքիան կարող է զսպել այդ շարժումը նրանով միայն, երբ կատարէ հայերի իրաւացի պահանջը։ Բայց քանի որ՝ **հայկական խնդիրը** մեռցնելու նպատակով, Թուրքիան կ'աշխատէ **քրդական միջոցներ** հնարել, դրանով աւելի եւս կը բորբոքէ հայերի արդար կատաղութիւնը . . . ։

## ՔՈՒՐԴԸ ԵՒ ԹՈՒՐՔԸ

Տարօնն ու Վասպուրականը թէեւ Տաճկաստանի մի մասն են կազմում, բայց քրդերի զանազան ցեղերը, օգուտ քաղելով սուլթանի պետութեան թուլութիւնից, տիրում են Հայաստանի այդ երկու ամենամեծ նահանգներին՝ սկսեալ Սեւ ծովի հարաւ-արեւելեան եզերքից, Եփրատ գետից, մինչեւ Միջագետքի եւ Պարսկաստանի սահմանները։

Յիշեալ նահանգները պարունակում են իրանց մէջ հետեւեալ գաւառները՝ Հաքարի, Բայազիդ, Հաղբակ, Վան, Բաղէշ (Բիթլիս), Մուշ, Շատախ, Սասուն, Խիզան, Մոգաց երկիր, Զարանջակ, Քեղու եւ այլն, որոնց տիրում են քրդերը։

Մնացեալ ազգաբնակութիւնները, բացի քրդերից, են՝ հայեր, ասորիներ, հրեաներ, թուրքեր, եզդիներ, եւ զանազան թափառաշրջիկ ցեղեր։ Հայերը իրանց թւով բազմութիւն են կազմում, եւ համարեա, բաղկացնում են ամբողջ ազգաբնակութեան կէսից աւելի մասը։

Որպէս զի գիտենանք, թէ ինչ դրութեան մէջ են այդտեղ հայերը, պէտք է նախ ծանօթանալ տիրող ազգի՝ քրդերի բնաւորութեան եւ նրանց քաղաքական կազմակերպութեան հետ։

Քրդերը բաժանուած են զանազան ցեղերի, որոնց գլխաւորներն են՝ Մուքուրի, Թակուրի, Միլացնի, Հայ-

տարանլի, Շաւի, Ջալալի, Ռուվանդ, Բիլբասս, Մամըքանի, Հարթօշի, Շիկակ, Հարքի, Ծազիդի։ Դրանք շատ քիչ են զանազանվում յատկութիւններով եւ սովորութիւններով. խօսում են մեդական լեզուով, որ իւրաքանչիւր ցեղի մէջ որոշվում է բարբառների առանձնյատկութեամբ։ Կրօնով մահմետական են՝ սուննի աղանդից։ Միայն եզիդիները բաժանուած են կրօնով, որոնք պաշտում են չար եւ բարի ոգիները, երկրպագութիւն են տալիս տնային օջախին։ Դրանք գուցէ մնացորդներ են Արամազդի եւ Արհմնի հին երկրպագուներից, որոնց մէջ մինչեւ այսօր երեւում են մոգական ծէսեր։

Քրդերը չունին գիր եւ գրականութիւն. շէյխերը (դենպետները) միայն գիտեն արաբերէն կարդալ, որով աւանդում են ժողովրդին իրանց կրօնի հրահանգները, որոնք բովանդակվում են մի քանի՝ պարզ եւ թեթեւ, արտաքին ծիսակատարութիւնների մէջ։ Միակ բանը, որ գիտէ ամեն քուրդ իւր հաւատքի հանգանակից, է նամազը, որ նա մեքենաբար եւ ճիշտ կերպով կատարում է նշանակեալ ժամերում, առանց հասկանալու, թէ ինչ են նշանակում իւր՝ այնքան ջերմեռանդութեամբ արտասանած արաբական բառերը։ Բացի դրանից, քուրդը գիտէ մեծ մարգարէի — Մուհամմէդի անունը, եւ նրա նախկին խալիֆաների՝ Օմարի, Օսմանի, Աբու-Բաքէրի անունները, եւ աւելի ոչինչ։

Բայց ժողովրդական անգիր բանաստեղծութիւնը կենդանի է քրդերի մէջ. նա ծագելով ամբոխի իսկական կեանքից, ունի նոյն բնաւորութիւնը եւ ոգին, որով ապրում է ինքն ամբոխը։ Հովուերգութիւնը եւ քաջազնական հազներգութիւնը գլխաւոր տեղն են բռնում նրանց բանաստեղծութեան մէջ՝ առաջինը որպէս մի խաշնարած

ցեղի կեանքի առնչութիւն, երկրորդը՝ որպէս նրա պա-
տերազմական ոգու արտայայտութիւն: Հովուական երգերը
տխուր են եւ մելամաղձոտ, նրանք խիստ մեղմ կերպով
ներդաշնակվում են հովուի սրինգի խուլ եւ ձգական
հնչիւնների հետ: Իսկ պատերազմական երգերը կրակոտ,
վառվռուն եւ խրոխտ են, նրանք լիահնչիւն համարձակու-
թեամբ որոտում են թմբուկների ձայնի հետ:

Ոչ մի նշանաւոր երեւոյթ չէ կորցնում իւր հետքը
քրդի կեանքի մէջ. ժողովրդական ոգին իւր տաղերով կամ
փառաբանում է մէկի քաջագործութիւնը, կամ պար-
սաւում միւսի թուլասրտութիւնը: Եթէ թագնուի մէկը
թշնամուց, կամ խոյս տայ կռուի դաշտից, միւս օրը
կանայք եւ աղջիկները կը յօրինեն նրա մասին զանազան
կծու պարսաւներ, եւ երգը արագ կը թռչի ամեն երե-
խայի, ամեն չափահասի բերանից:

Թուր, մի ջուխտ ատրճանակ, վահան եւ նիզակը
քրդի մարմնի անդամներ են, որոնք միշտ մնում են նրանից
անբաժան. հրացանը նա գործ է ածում մեծ կռիւների
մէջ: Թամքած ձին, որ միշտ պատրաստ է նրա չադրի
առջեւ, քրդի հաւատարիմ ընկերն է. նրան սիրում է
տէրը աւելի քան իւր կնոջը, աւելի քան իւր որդիները:
Քուրդը իւր չադրի մէջ հիւրասէր է որպէս Աբրահամ,
բայց նա չի խնայել կողոպտելու նոյն հիւրին, եթէ նա
հանդիպէ մէկ մղոն հեռու իւր չադրից: Արեան վրէժ-
խնդրութիւնը, որպէս ամեն կիսավայրենի ցեղերի մէջ,
նոյնպէս քրդի մէջ, անցնում է սերունդից սերունդ:
Սպանուածը հանգիստ չէ իւր գերեզմանի մէջ, քանի որ
նրա արեան վրէժը չէ առնուել սպանողից, կամ նրա մօտ
ազգականներից: Սպանողն այն ժամանակ միայն ազատ է
մնում վրէժխնդրութիւնից, երբ գնում է իւր ոսոխի

տունը, իւր սուրը գցում է նրա ոտքի տակ, եւ ներողութիւն է խնդրում։ Բայց հազիւ կը գտնուի մի քուրդ, որ խոնարհուի մինչ այդ աստիճան ստորութեան։ Քուրդը քինախնդիր է եւ ոխերիմ. Նա մինչեւ մահ չէ մոռանում վիրաւորանքը կամ անպատուութիւնը, քանի որ դեռ լիակատար բաւականութիւն չի ստացել։ Նա միեւնոյն ժամանակ շատ հանգամանքներում հպարտ է եւ ազնիւ։ Քուրդը դադարեցնում է իւր կռիւը, երբ հակառակ կողմից միջամտութիւն են գործում կանայք։ Նա իրան չէ ստորացնում՝ պատերազմելով իրանից թոյլ արարածների հետ, թէեւ քրդի կինը կռուի ասպարէզում նոյնքան կատաղի է եւ քաջասիրտ, որքան իւր ամուսինը։

Կրկին անգամ ամուսնանալը՝ մեռած կամ սպանուած տղամարդից յետոյ, քուրդ կնոջ համար համարվում է նախատինք։ Նա մնում է միշտ այրի, մխիթարում է իրան այն քաղցր յիշողութիւններով, թէ իւր այրը մի "լաւ աւազակ" էր, թէ նա մնաց միշտ մաքուր երկչոտութեան արատից, թէ նա երբէք իւր թիկունքը չդարձրուց թշնամու դէմ, թէ նա սիրում էր իւր ամուսնուն, որքան սիրում էր իւր արաբական նժոյգին, եւ երբէք նրա սիրտը չգրաւեց ամենագեղեցիկը իւր ցեղի աղջիկներից։ Եւ մայրը պատմում է իւր զաւակներին՝ հետեւող լինել նրան եւ կրկին բարձրացնել հանգուցեալի յիշատակը խոր գերեզմանից։

Մանկութիւնից քուրդը կրթվում է ձիու սանձը կառավարելու, զէնք գործածելու, մարմնամարզութեան եւ այլ ճարպկութիւնների մէջ։ Նա քաջագործութիւն է համարում գողանալ, յափշտակել ամեն ինչ, որ պէտք է իւր ապրուստի համար։ Նա մինչեւ անգամ գողանում է իւր հարսնացուին։ Բախտաւոր է համարվում ամուսնութիւնը, երբ տղամարդ-հերոսը առեւանգել է իւր

սիրուհուն հօր ընտանիքից։ Կինը այդպիսի դէպքերում մի առանձին հպարտութեամբ է նայում իւր ընկերուհիների վրայ։

Քրդի ամենամեծ երդումը Թալախի վրայ է լինում. նա առնում է մի քար եւ նետում է, ասելով՝ «Թող իմ Թալախն այս քարի պէս գցած լինի, եթէ այսպէս, կամ այնպէս անեմ»։ Թալախը նրա ամուսնական կապն է, նա լուծուած է համարվում, երբ նրանով երդում ուտողը երդմնազանց է լինում։ Այդպիսի երդումները պահանջվում են, երբ պէտք է որեւիցէ գործի մէջ ամենահաստատ գրաւական մի մարդու հաւատարմութեան մասին։ Եւ այդ լինում է այն ժամանակ, երբ գործը վերաբերում է ընդհանրութեան ամենակարեւոր մի հարցին։

Որպէս բնութեան ազատ որդի, նուիրելով իրան անհոգ եւ պարզ կեանքի, քուրդը բաւականանում է իւր անասուններով։ Նա հովիւ է։ Նա չունի տուն եւ հաստատ բնակութիւն. նրա օթեւանը իւր չադրն է, որ կազմում է այնտեղ, ուր կարող է իւր անասունների համար ճարակ գտնել։ Ձմեռուան ձիւները միայն քշում են քրդին իւր սիրելի սարերից, այդ ժամանակ եւս մի հայի տուն միշտ պատրաստ է ընդունել ինքնակոչ հիւրին։ Այնտեղ քուրդը իւր անասունների հետ անցուցանում է ձմեռը, մինչեւ գարունը կրկին կոչում է նրան դէպի լեռների գիրկը։

Քրդի կերակուրն է՝ իւր անասունների կաթը, մածունը, պանիրը, սերը, կարագը եւ իւղը. նա չէ դիպչում նրանց մսին։ Քրդի հագուստը՝ ոտքից մինչեւ գլուխ կազմուած է իւր անասունների բրդից եւ կաշուց. իսկ այդ բոլորը պատրաստում է նրա կինը։ Տղամարդը տնտեսութեան մէջ շատ չէ խառնվում. նա պատերազմական մարդ է։ Երկրագործութիւնը, արհեստը քրդի համար օտար

պարապմունքներ են, որոնց նա արհամարհում է, համարելով ռայայի գործ: Աշխատասիրությունը նրա մեջ դեռ պահպանել է իր հին, նահապետական ձեւը: Նա տալիս է, օրինակ, քսան ոչխար եւ գնում է մի ձի. Նա փոխում է իր իւղը, պանիրը, բուրդը երկրագործի ալիւրի հետ, կամ արհեստաւորի շինած այս եւ այն գործիքի հետ: Եւ այս բոլորը կատարում է նա չափազանց միամտութեամբ. ամեն առեւտուրի մեջ խաբվում է նա, ամեն փոխարինութեան մեջ որսում է նրանից հայ կամ հրեայ մանրավաճառը իր շահերը: Որովհետեւ այսպիսի յարաբերութիւնների մեջ քուրդը գործ չէ դնում իր սուրը եւ մարմնական ուժը, որ նրա մեջ զարգացած են, այլ նա բանեցնում է իր հմտութիւնը եւ խելքը, որոնք նրա մեջ խիստ թոյլ են:

Քուրդը խաբեբայ չէ. նա հաւատարիմ է իր խոստմունքը կատարելու մեջ: Վճարել այն, ինչ որ պարտքով է առած եւ կողոպտել ուրիշի սեպհականութիւնը — երկուսն էլ մի օրինակ սուրբ են նրա համար: Առաջինի մեջ նա պահպանում է իր պատիւը եւ խօսքը, իսկ երկրորդի մեջ՝ իրաւունքը եւ արդարութիւնը. որովհետեւ քրդի համար ոչինչ ընդդէմ չէ իրաւունքի եւ արդարութեան, երբ նա սեպհականացուցած է սրի եւ յաղթութեան ուժով: Սուրը եւ յաղթութիւնը արդարութեան կշիռն է՝ նրա եւ իր հակառակորդի մեջ:

Այդպէս է վարվում ամեն մի աւազակ. այդպէս է վարվում ամեն մի հասարակութիւն, որ նոյն բնաւորութիւնն ունի, այդպէս է վարվում եւ մի ամբողջ պետութիւն, որ աւազակի դեր է կատարում. . . :

Այսքանը բաւական համարելով քրդի բնաւորութեան եւ ընտանեկան կենցաղավարութեան մասին, դառնանք

այժմ դէպի նրա քաղաքական կեանքի կազմակերպու-
թիւնը:

Քրդերի ցեղերը կառավարվում են իրանց էլ-աղա-սիների (ցեղապետների) եւ շէյխերի (դենպետների) գլխաւորութեամբ:

Ցեղապետը, որ կոչվում է "միր" (տէր), չէ նշանակվում ընտրողական սկզբունքներով. նա, որպէս ցեղի նահապետը, սերունդից սերունդ, տիրում է ժառանգաբար: Ամբողջ ցեղը հպատակում է նրա իշխանութեանը՝ խոնարհ, որդիական հնազանդութեամբ. նրա սուրը, նրա ձեռքը, նրա կեանքը միշտ պատրաստ են ծառայելու պետի կամքին եւ հաճոյքին, որքան եւ չար կամ բարբարոսական լինին նրանք: Ցեղապետն է վճռում իւր ժողովրդի վէճերը, նա է բաժանում աւարը յափշտակողների մէջ, նա է առաջնորդում իւր ցեղին կռուի ժամանակ, նա է ուղարկում խմբերը աւարառութեան համար: Ցեղապետն ամեն առաւօտ իւր չադրի մէջ նստած, ընդունում է ցեղի նշանաւոր տղամարդկանց, որոնք իրանց զինուորական ամբողջ կազմուածքով, ներկայանում են պետին՝ լսելու նրա պատուէրները: Այնտեղ ծխում են հիւրասիրութեան չիբուխը, խմում են մի-մի ֆինջան ղառն սուրճ: Եւ այդպիսի "սալամը" կատարվում է ամեն առաւօտ իւր բոլոր ճշտութեամբ:

Իսկ շէյխերը նշանակվում են գլխաւոր դենպետից. նրանք ունին իրանց մուֆթիները եւ դատիները. Շէյխերը կատարում են ցեղի կրօնական պահանջները, որպիսի են՝ ամուսնութիւն, թլփատութիւն եւ հրապարակական նամազ: Իսկ կռիւների մէջ նրանք մասնակցում են որպէս զինուոր, բայց աւարառութիւնների մէջ՝ որպէս աւազակապետ: Այսուամենայնիւ նրանք վայելում են ցեղի համակրու-

թիւնը նոյն չափով, որքան ջերմ է կրօնական զգացմունքը մի պարզ եւ կիսավայրենի ժողովրդի մէջ, ինչպիսին է քուրդը։

Տարօնի եւ Վասպուրականի ամբողջ նահանգները բաժանուած են քրդերի զանազան ցեղերի մէջ։ Իսկ իւրաքանչիւր ցեղի մէջ երկրի բաժանմունքը՝ ամենախոշոր մասերից հասնում է ամենափոքր մանրերորդի։ Այսինքն՝ սկսեալ մի գաւառից, մի փոքրիկ վիճակից, եւ մինչեւ անգամ մի գիւղից, եւ մի ընտանիքից, իւրաքանչիւրն առանձին-առանձին տէր ունի, եւ իւրաքանչիւր բաժինը հաւասարվում է տիրողի զօրութեան բարձր կամ ստոր աստիճանին։

Ռայան — հպատակը վճարում է այլ եւ այլ հարկեր հողի մշակութեան համար, իւր անասունների համար, իւր արհեստի համար, իւր բնակութեան տեղի համար, իւր գլխի համար, մի խօսքով՝ ամեն բանի համար, որ վերաբերում են նրա կեանքի եւ ապրուստի անհրաժեշտութիւններին։ Հարկերի չափը եւ նրանց քանակութիւնը ոչ կշիռ ունին եւ ոչ սահման. դա կախուած է առնողի խղճմտանքից։ Ռայայի տէր լինելու եւ հարկեր պահանջելու արտօնութիւն վայելողները կոչվում են **խօջէր** կամ **դարա-բէյներ**։ Դրանք ցեղի մէջ որեւիցէ նշանակութիւն ունեցող ազնուական մարդիկն են։ Օրինակ՝ գլխաւոր ցեղապետն ունի իւր ազգակիցները, կամ պաշտօնակալները. դրանց ապրուստի համար տալիս է մի կամ աւելի գիւղ, որոնց հասոյթով պէտք է կառավարուեն նրանք. այդպիսիններն ստանում են խաֆիրութեան իրաւունք։ Նոյն իսկ պաշտօնակալները, կամ ցեղապետի ազգակիցները ունին ծառաներ կամ սպասաւորներ, որոնց ռոճկի փոխարէն տալիս են իրանց ստացած գիւղերից մի կամ շատ ընտանիք որպէս

ծուխ, եւ այդ ծառան վարվում է նոյն ընտանիքների հետ ինչպէս իւր սեպհականութեան կամ հպատակների հետ։ Ահա՛ այդ է պատճառը, որ երկրի բաժանմունքը՝ սկսեալ ամենախոշոր կտորներից հասնում է մի ընտանիքի։

Որպէս իշխանութիւնը՝ սկսեալ ցեղապետից աստիճանաբար իջնում է մինչեւ վերջին սպասաւորը, նոյնպէս եւ սեպհականութեան իրաւունքը՝ սկսեալ երկրի խոշոր կտորներից հասնում է ամենափոքր մասի։

Բայց երկիրը աղաների (խաֆիրների) տոհմային կամ կալուածական ժառանգութիւնը չէ, այլ նա սեպհականացուցած է սրի ուժով. այդ պատճառով նա անդադար անցնում է մի տիրապետողից միւսին, որի սուրն աւելի զօրութիւն է ստանում։

Եւ այդպէս՝ պատերազմը տիրողների մէջ դառնում է մշտական, անընդհատելի։

Պատերազմների ժամանակ իւրաքանչիւր հակառակ կողմերի՝ թէ յաղթութեան եւ թէ յաղթուելու միջոցին, բնակիչների վիճակը սարսափելի է։ Օրինակ՝ մի ցեղ կամենում է խլել միւս ցեղի ձեռքից երկրի այս կամ այն մասը. նա կամ յաղթելով տիրում է, կամ աւար առնելով ու թալանելով ամեն հանդիպածը, յետ է դառնում։ Այդպիսի դէպքերում ժողովուրդը թողնում է իւր տունը, տեղը, մշակած դաշտերն ու արտերը, եւ միայն իւր գլուխն ազատելու համար պատսպարվում է լեռների անմատչելի տեղերում։ Կռիւը տեւում է երկար։ Անասունները, անտէր մնալով, թշնամին կողոպտում է. հունձը, անխնամ մնալով, չորանում, ոչնչանում է. եւ այդ կռիւներից յետոյ վրայ է հասնում մի նոր, ամենասարսափելի թշնամի — սովը։

Ժողովուրդը միշտ գտնվում է անվերջ երկիւղի եւ յուսահատութեան մէջ։ Նա չգիտէ, թէ վաղը կարո՞ղ է հանգիստ լինել, որովհետեւ թշնամին միշտ կանգնած է, որպէս ասում են՝ նրա քամակին։ Կռիւների փոթորիկների մէջ եթէ մի անգամ զրկուեցան նրա մշակութիւնները բերքից, միւս օրը նա ուտելու հաց չունի։ Որովհետեւ նա ապագայի համար պաշար չէ պահում, նախ՝ ապահով տեղ չունի պահելու, երկրորդ՝ աւելորդ ծանրութիւնը միշտ արգելում է նրա փախուստը թշնամու ձեռքից, երբ նա աշխատում է ազատել իւր գլուխը միայն։

Կռիւները, ժողովրդի անդադար անցնելը մէկ տիրապետողից միւսին, սպառում են բնակիչների կեանքը սրով, կրակով ու սովով։

Յանկարծ երկրի նախկին տիրապետողն իրան յաղթուած է համարում, եւ որպէս զի նա յաղթողի համար շահուելու ոչինչ չթողնէ, հրդեհում է ամբողջ գիւղօրայք, աւերում է քաղաքները, կրակ է տալիս հասունացած արտերին, եւ բոլորովին անապատ դարձնելով երկիրը, որ պատկանում է իրան, այդպէս թողնում է եւ հեռանում։ Այդպիսի հանգամանքներում քուրդը կորցնելու ոչինչ չունի, որովհետեւ նա մի ժամանակաւոր հիւր է. իսկ այդ բոլոր կրակի նիւթ դարձած շինութիւնները պատկանում են հայ կամ օտարազգի բնակիչներին. այն բոլոր մշակութիւնների արդիւնաբերութիւնը նրանց ձեռքի վաստակն է։ Նոյն բարբարոսութեամբ է վարվում եւ յարձակուողը. երբ տեսնում է, թէ տիրելու անկարող է, նա խոյս է տալիս կռուի դաշտից, իւր յետքից թողնելով աւերակներ եւ ամայութիւն։

Ժողովուրդը միշտ գտնվում է նոյն դրութեան մէջ, որպէս մի թռչուն, որի բոյնը քանդուած է չար երեխայի

ձեռքով. Նա նստած է միշտ օրօրուող տերեւի վրայ եւ չգիտէ ի՞նչ անէ։ Բնակիչը սիրտ չունի կրկին նորոգելու իւր խրճիթը, որովհետեւ մտածում է՝ արդեօք երկա՞ր կարող է բնակուել նրա մէջ. սիրտ չունի մի անգամ ցանել իւր արտը, որովհետեւ յոյս չունի, թէ կը յաջողուի իրան քաղել իւր արտը։ Նրա տան շարժական իրեղէնները միշտ թաղուած են լինում հողի մէջ, կամ նրանց համար յատուկ շինուած ստորերկրեայ պահարաններում, որպէս զի փախուստների ժամանակ թշնամու ձեռքը չընկնեն։ Բայց յաջողվո՞ւմ է նրան մի անգամ դուրս բերել իւր կայքը գերեզմանից, — խիստ հազիւ, որովհետեւ շատ անգամ թաղցնողը, հանդիպելով թշնամուն, զրկվում է կեանքից եւ իւր պահարանի գաղտնիքը տանում է դէպի միւս աշխարհը։ Այդ է պատճառը, որ Հայաստանում մինչեւ այսօր գետինը փորելու ժամանակ գտնվում են այնքան շատ պղնձէ, երկաթէ իրեղէններ, կանանց զարդեր. դրանք պատերազմների միջոցներում թաղցրած կայքեր են, որոնց տէրերն իրանց հետ իջել են գերեզման։

Այսպէս է հայի վիճակը Տարօնի եւ Վասպուրականի մէջ, նրա դժբախտութիւնն աւելի նրանումն է կայանում, որ տիրող բռնաւորը — քուրդը — երկրի տէրը չէ, այլ զանազան թափառական ցեղերից բաղկացած մի ամբոխ, որ կատաղի մրրկի նման, տարբերվում է երկրի մի կողմից դէպի միւսը՝ ոչնչացնելով ամեն կենդանութիւն, ամեն ինչ, որ արդիւնաբերել է արհեստը եւ մարդու աշխատասէր ձեռքը։

Քուրդը պետական փառասիրութիւն չունի, եւ ոչ հասկանալի է նրան աշխարհակալութեան հպարտութիւնը։ Նա նայում է իւր նուաճած ժողովրդի վրայ, որպէս այն

սարերի խոտերի վրայ, ուր արածում են իւր անասունները։ Մէկը — ժողովուրդը — մատակարարում է քրդի պիտոյքները, միւսը — սարերի խոտը ճարակ են տալիս նրա հօտերին. որպէս վերջինի աճեցնելու եւ մշակելու համար նա հոգ չէ տանում, նոյնպէս եւ ժողովուրդը խնամելու մասին նա չէ մտածում։ Քուրդը վստահ է, թէ աշխարհի մէջ ամեն տեղ բաց է նրա ասպարէզը, ամեն տեղ կարող է գտնել այդ տեսակ արօտներ, քանի իւր սուրը կտրում է, քանի իւր թեւքը շարժվում է։

Վասպուրականի եւ Տարօնի նահանգներում, բացի ներքին խռովութիւններից քրդերի մէջ, լինում են եւ յարձակումներ արտաքին թշնամիներից։ Քիչ չէ պատահում, որ այդպիսի արշաւանքներին պատերազմը վերջանում է կրակով, արիւնով, գերեվարութեամբ եւ աւարառութեամբ։ Այդպիսի դէպքերում վտանգը հասնում է դարձեալ բնիկ ժողովրդին, որովհետեւ քրդերը, եթէ արտաքին թշնամուն ընդդիմանալու կարողութիւն չունին, թողնում են երկիրը, քաշվում դէպի լեռների անմատչելի տեղերը եւ սպասում մինչեւ թշնամու հեռանալը։

Քիչ չէ պատահում, որ Օսմանեան պետութիւնն զօրքեր է ուղարկում խաղաղացնելու իւր տէրութեան սահմանագլուխները եւ նուաճելու ապստամբ քրդերին։ Ու տաճիկ զինուորը վարվում է նոյն բարբարոսութեամբ, ինչպէս պարսիկները։ Որովհետեւ տաճկի տիրապետերը կամ իսպառ չէ յաջողվում, կամ եթէ յաջողվում է, լինում է ժամանակաւոր, եւ զինուորները՝ դատարկաձեռն յետ չդառնալու համար, յափշտակում են ամեն հանդիպածը։

Ահա, այսպիսի դրութեան մէջ են համարեա՝ — Արզրումի, Բայազեդի, Հաղբակայ, Վանի, Բաղէշի, Մուշի,

Շատախու, Սասնոյ, Խիզանու, Մոգաց, Չարսանջակի, Քեղուայ — գաւառները, իրանց բազմաթիւ Հայ բնակիչներով։ Նրանց տիրում է մի աւազակ ցեղ, որի աջ ձեռքը իւր սուրն է, ոտքերը՝ իւր նժոյգը, որի տունը իւր թեթեւ չադրն է, որի Հայրենիքը — ամեն տեղ, որի հունձքը — թշուառ մարդկութիւնը, որի օրէնքն ու իրաւունքը — իւր կամքը, որի կեանքի նպատակը — փշրել, խորտակել եւ ոչնչացնել, որի գործող ոգին — իւր տմարդի սիրտը, վայրենի կատաղութիւնը եւ գազանական յանդգնութիւնը . . . ։

## ՓԱԽՈՒՍՏԻ ՃԱՆԱՊԱՐՀԸ

Հեռագիրը մեզ լուր բերեց, թէ Բ. Դուռը իր պատասխանի մէջ, որ հաղորդած է Կ. Պոլսի եւրոպական դեսպաններին, խոստացաւ համոզել ալբանացիներին զինջանել Դուլցինիոն Չերնոգորիային, եւ պարտաւորվում է վճռել յունաց հարցը երեք ամսուայ մէջ, իսկ հայոց հարցը չորս ամսուայ մէջ։

Այդ դարձեալ նոյն մթին, երկդիմի եւ նենգաւոր պատասխաններից մէկն է, որով Բ. Դուռը սովորութիւն ունի միշտ խոյս տալ Եւրոպայի պահանջումների ուղղակի կատարելուց, փախուստի ճանապարհ գտնել, եւ նոր դժուարութիւններ, նոր արգելքներ սարքելու համար ժամանակ վաստակել։

Բ. Դուռը պարտաւորվում է հայոց խնդիրը չորս ամսուայ մէջ վճռել, բայց ի՞նչ կերպով, ի՞նչ րէֆօրմներ պիտի մտցնէ Հայաստանում, — այդ մասին լռում է։

Ի նկատի ունենալով Թիւրքաց Հայաստանում կատարուող այժմեան անցքերը, շատ հեշտ է նախագուշակել, թէ Բ. Դուռը այս չորս ամսուայ ընթացքում ինչ կերպով կը վճռէ հայկական խնդիրը։

Նա կուղարկէ Հայաստան, ինչպէս առաջ, կամիսարներ, կուղարկէ Հօբարդ փաշայի նման բարեկարգիչներ, ցոյց կը տայ, թէ աշխատում է վերանորոգութիւններ մտցնել, — բայց միեւնոյն ժամանակ քրդերին, Թիւրքերին եւ ամբողջ մահմետական ամբոխը գաղտնի կերպով կը գրգռէ հայերի

դէմ, եւ փոխանակ բարեկարգութիւնների, արիւն, կոտորած, աւերմունք կը տարածէ Հայաստանում։ Չորս ամիսը բաւական ժամանակ է այդ բոլորը կատարելու համար։

Եւ երբ Հայաստանը կը ծխի արեան եւ կրակի մէջ, նա կը պատասխանէ Եւրոպային. իմ ժողովուրդը դեռ պատրաստ չէ. ես ամեն միջոցներ գործ դրեցի. Հայաստանում վերանորոգութիւններ մոցնելը առ այժմ անհնարին է, որովհետեւ մահմետական ամբոխի կրօնական զգացմունքը, Թիւրքերի ազգային հպարտութիւնը վիրաւորում է Հայերին առանձնաշնորհումներ տալու պատճառով։

Խոստանալ եւ չկատարել — այդ Թիւրքիայի վաղեմի սովորութիւնն է։ Իսկ Բարիք խոստանալ եւ չարը գործադրել — այդ պահանջում է նրա այժմեան ամենախարդախ քաղաքականութիւնը։

Հասկանալի է, որ Բ. Դուռը ամեն տեսակ հնարներ գործ պիտի դնէ, որ Բեռլինի դաշնագրի 61րդ յօդուածը գործադրութիւն չգտնէ Հայաստանում։ Նա շատ լաւ հասկանում է, թէ այդ յօդուածը ինչ ապագայ է պատրաստում Հայերի համար։

Հայաստան բառը խիստ անախորժ տպաւորութիւն է գործում Թիւրքիայի ջղերի վրայ։ Բ. Դուռը բացարձակ կերպով յայտնեց Հայոց պատրիարքին, թէ իւր պետութեան մէջ Հայաստան անունով երկիր չէ ճանաչում. նա յայտնեց Կ. Պոլսի եւրոպական դեսպաններին, թէ Հայաստանում *բացառապէս* վերանորոգութիւններ մոցնելու դիտաւորութիւն չունի, այլ պիտի մոցնէ *ընդհանուր* վերանորոգութիւններ ամբողջ Փոքր-Ասիայի մէջ։ Ի՞նչ են նշանակում այդ խօսքերը։ Շատ պարզ է, որ Բ. Դուռը չէ ցանկանում Հայաստանը դարձնել մի արտօնական երկիր, որպէս զի այդ երկիրը, իբրեւ մի որոշ մարմին չառանձ-

նանայ եւ չանջատուի իւր պետութիւնից։ Բալկանեան թերակղզու իշխանութիւնների կազմուելու պատմութիւնը, ի հարկէ, Թիւրքիան շուտով մոռանալ չէր կարող։

Չնայելով, որ հայերի նպատակը խիստ համեստ է, չնայելով, որ հայերը ցանկանում են ունենալ մի բարւոք կառավարութիւն միայն եւ ազատուել մահմետականների մինչեւ այսօր գործ դրած դարեւոր բարբարոսութիւններից, այսուամենայնիւ, Բ. Դուռը չէ կամենում կատարել նրանց իրաւացի պահանջումները, որ ամեն մի փոքր ի շատէ բարեկարգ պետութեան քաղաքացին իրաւունք ունի վայելելու։

Այդ բաւական չէ, այժմ Թիւրքիան աշխատում է հայկական խնդիրը խեղդելու նպատակով ոչնչացնել հայ տարրը։ Աշխատում է լցնել Հայաստանը քրդերով, չէրքեզներով, լազերով, աջարացիներով եւ այդ բոլոր վայրենի ցեղերի բարբարոսութիւնը գրգռել հայերի դէմ։ Ռուսաց նոր նուաճած երկրներից գաղթող բազմաթիւ մահմետականներին նա զետեղեց Հայաստանի մէջ։ Իսկ Եւրոպական Թիւրքիայից դուրս եկող գաղթականների խումբերը նոյնպէս ուղարկում է դէպի Հայաստան։

Նպատակը յայտնի է եւ չորս ամիսը բաւական ձիգ ժամանակ է նրան իրագործելու համար....։

Նշանները արդէն երեւում են Վասպուրականի մէջ, որ Հայաստանի սիրտն է, նկատվում է քրդերի կատաղի յուզմունք, այրվում են գիւղեր, սպանվում են մարդիկ եւ ապստամբութիւնը օրըստօրէ աւելի ընդարձակվում է, աւելի սպառնական ձեւ է ստանում։ Տարօնի նահանգում նոյնպէս արիւն է հոսում։ Սօվուղ-Բուլախի գաւառում Շէյխ-Իբադուլլահը, իւր գլխին հաւաքած աւելի քան տասն հազար աւազակներ, վտանգ է սպառնում Ատրպատականի հայերին։ Հեքարիի կողմերում Բահրի-Բէկը, իւր

ցեղի գլուխն անցած, աւերմունքներ է գործում։ Հին-Բայազէդի կողմերում Հէյդարանլը քրդերը կողոպտում են Հայերին։ Ամեն տեղ նկատվում են միեւնոյն չարագործութիւնները, որոնց կեղեւի տակ թագնուած է թուրք կառավարութեան պաշտօնատարների նենգաւոր ձեռքը։ Իսկ Կ. Պոլսի մահմետական մամուլը այդ բոլոր բարբարոսութիւնները բացատրում է քըրտական ճինայեան անունով . . . ։

Ինչպէս պիտի վարուեն Թիւրքիայի Հայերը վերոյիշեալ բոլոր չարագործութիւնների դէմ։

Թիւրքիայի Հայերը մինչեւ այսօր իրանց բոլոր յոյսը դրել էին դիւանագիտական բանակցութիւնների վրայ, ամեն ինչ սպասում էին Եւրոպայից եւ իրանց փրկութիւնը միայն Բեռլինի դաշնագրի 61րդ յօդուածի մէջ էին որոնում։ Բայց Անգլիայի պետական մարդիկներից մէկը, միստր Բրայս, այս օրերում (1880 թուին) խիստ ճիշտ կերպով նկատեց Կ. Պոլսի Հայերին. “աշխատեցէք չձանձրացնել Եւրոպային։„

Մենք կաւելացնենք Հայասէր անգլիացու խօսքերին, ոչ թէ Եւրոպան, այլ Աստուած ինքը չի օգնի Թիւրքիայի Հայերին, եթէ նրանք ինքները իրանց օգնելու մէջ ծոյլ կը լինին . . . ։

Թիւրքիան խոստանում է վճռել Հայոց Հարցը չորս ամսուայ մէջ։ Գուցէ վճիռը նրանով կը վերջանայ, որ չորս ամսից յետոյ էլ Հայաստանում Հայ չի մնայ . . . ։

# Ն Պ Ա Ս Տ Ե Ն Ք

*Երբ Կ. Պոլսում կազմուեցան զանազան ընկերութիւններ՝ — “Արարատեան„, “Կիլիկեան„, “Դպրոցասիրաց արեւելեան„ — Հայաստանում ուսում տարածելու նպատակով, մեզանից շատերը սկսեց մտածել՝ ի՞նչ հարկաւոր են այսքան ընկերութիւններ, միթէ նպատակը միեւնոյնը չէ, աւելի լաւ չէր լինի եթէ բոլորը միանային, կազմէին մի ամբողջ եւ աւելի հիմնաւոր ընկերութիւն։*

*Մտածութիւնները իրաւացի էին։ Ընկերութիւնները կազմուած էին բարեգործական հիմունքների վրայ եւ պիտի պահպանուէին նուիրատուութիւններով։ Բայց մեր հասարակութիւնը չգիտէր՝ ո՞ր մէկին նուիրել իւր հանգանակութիւնները։ Բոլորը միեւնոյն ասպարէզում, բոլորը միեւնոյն նպատակի համար էին գործում։*

*Կ. Պոլսի հայերը, որոնք աւելի մեծ յոյսեր, աւելի մեծ ակնկալութիւններ ունէին մեզանից, ռուսահայերիցս, — ի հարկէ նիւթական օժանդակութիւնների կողմից, — ընկերութիւնների միացնելու հարցի մէջ ոչ միայն մեզ հետ համաձայն գտնուեցան այլ լիապէս կատարեցին մեր փափագը. մամուլի մէջ հրատարակուեցաւ որ ընկերութիւնները արդէն միացել են ընդունելով “Միացեալ ընկերութիւնք„ անունը։*

*Այժմ ի՞նչ է մնում մեզ անել։*

*Այժմ մնում է մեզ կրկնապատկել մեր բարեգործական եռանդը, եւ մեր նիւթական զոհաբերութիւններով միացեալ ընկերութիւններին ուժ եւ խրախոյս տալ։*

Մեզանից ամեն մէկը համոզուած է, որ ուսումը, կրթութիւնը, ամենագլխաւոր միջոցներն են, որոնք, թէեւ փոքր ինչ ուշ, թէեւ դանդաղ կերպով, բայց վերջապէս կը հարթեն աւելի հիմնաւոր ճանապարհ տաճկահայերի առջեւ մի ապագայ բարօրութեան հասնելու համար։ Մենք համոզուած ենք, որ Թիւրքիայի հայը դպրոցի մէջ պիտի գտնէ իւր վերածնութիւնը, իւր բախտը։ Եւ այն բարիքները, որոնցից մինչեւ այսօր զրկել էր հային բարբարոս Թիւրքիան, — այն բարիքները, որ եւրոպական դիպլօմատիան այնքան ժլատութեամբ է բաժանում հայերին, — հայի որդիները պիտի ստանան դպրոցական վարժապետի ձեռքից։

Բայց Թիւրքիայի հայը աղքատ է։ Թիւրքաց հարստահարութիւնը այն աստիճան քամել է նրա նիւթական զօրութիւնը, որ նա հազիւ թէ կարող է իւր դպրոցները կանոնաւոր, նպատակայարմար կերպով առաջ տանել, եթէ դրսից օգնութիւն չլինի։

Ռուսաստանի հայերը այժմ պէտք է կատարեն տաճկահայերի վերաբերութեամբ նոյնը, ինչ որ մի ժամանակ իրանց ոսկիներով անում էին Հնդկաստանի հայերը ամբողջ ազգի համար։ Ռուսաստանի հայերը, բնակուելով մի բարեկարգ պետութեան հովանաւորութեան ներքոյ, նիւթապէս աւելի բարեբախտ վիճակի մէջ են գտնվում, քան իրանց տաճկահպատակ եղբայրները։

Հնդկաստանի հայերը թողեցին ազգի համար խոշոր կտակներ, նրանց փողերով զանազան երկրներում հիմնուեցան բազմաթիւ դպրոցներ։ Ցանկալի կը լինէր, որ մենք հետեւէինք նրանց օրինակին։ Բայց մեր պահանջը համեստ է, մենք խոշոր կտակներ չենք պահանջում։

Մեզանից ոչ մէկի տնտեսութեան մէջ մի զգալի փոփոխութիւն չէր լինի, եթէ մեզ վրայ բարոյական

պարտք կը դնենք իւրաքանչիւր տարի շարունակ կերպով, մեր կարողութեան համեմատ, մի քանի րուբլ նուիրել Կ․ Պոլսի միացեալ ընկերութիւններին։ Այդ րուբլիներից կը կազմուէին նշանաւոր գումարներ։

Ռուսաստանի հայերը "Արարատեան" ընկերութեան վերաբերութեամբ ցոյց տուեցին իրանց բարեգործական եռանդը, թէ որքան համակրում են կրթութեան գործին տաճկական Հայաստանում։ Ցոյս ունինք, որ այժմ աւելի եւս պիտի բազմապատկեն իրանց զոհաբերութիւնները, երբ մասնաւոր ընկերութիւններից կազմուել է մի հոյակապ, հիմնաւոր ընկերութիւն։

---

Քրիստոնեաների ազատութեան անունով ծագեց ռուս թուրքական պատերազմը, եւ հայերը կարմիր արեան փոխարէն սեւ մելանը գործածելով, ստացան Սան-Ստեֆանոյի 16 Բերլինի աւագաժողովի 61րդ յօդուածները։ Վերջին յօդուածի տրամադրութեան համեմատ Թուրքիան պարտաւորվում էր վերանորոգութիւններ մտցնել իւր պետութեան "հայերով բնակեցրած գաւառների մէջ։" Այստեղից ինքն ըստինքեան ծագեց մի հարց․ — ո՞վքեր են հայերը։

Մեր հին ազգասէրների կարծիքով հայեր միայն լուսաւորչականներն էին, եւ Թիւրքիան բարւոք համարեց այսպէս ընդունել, հաշուեց լուսաւորչականների թիւը, այն եւս փոքրացնելով, եւ պատասխանեց Եւրոպային, թէ իմ պետութեան մէջ հայերը այնքան չնչին փոքրամասնութիւն են կազմում, որ չարժէ մինչեւ անգամ նրանց համար առանձին վերանորոգութիւններ անել։ Պատասխանը, կրօնական կէտից, մասամբ ճիշտ էր, եւ մեզանից ոչ ոք իրաւունք

չունի մեղադրել Թիւրքիային, երբ նա կրկնում է միեւնոյնը, ինչ որ մենք ենք ասում, — թէ բացի լուսաւորչականներից ուրիշ Հայ չկայ։

Այդ բոլորը, նախատեսնում էր, յայտնի էր թէ որպիսի կործանարար հետեւանքներ կարող է ունենալ այդ Հայաստանի վերանորոգութեան մասին, երբ մենք կը շարունակենք անդադար կրկնել, թէ լուսաւորչական եկեղեցուց դուրս Հայութիւն չկայ։ Եւ այդ իսկ պատճառով, բարձրացաւ կրօնի եւ ազգութեան խնդիրը։

Բեռլինի յանձնաժողովի 61րդ յօդուածը տուեց Հայերին երկու արտօնութիւն, առաջին, որ Հայաստանում պէտք է վերանորոգութիւններ մտցնուէին, երկրորդ, որ Հայերը կրօնական համայնքից Եւրոպայի առջեւ ճանաչուեցան որպէս ազգ։

Ի՞նչ է նշանակում՝ կրօնական համայնքից ճանաչուեցան որպէս ազգ։ — Այդ նշանակում է՝ մի ցեղական ամբողջութիւն, որի մէջ կան եւ կարող են լինել զանազան կրօններ եւ եկեղեցիներ։

Այդ կոչմանը արժանի լինելու համար, պէտք էր ցոյց տալ, որ դա իսկապէս այդպէս է, որ մենք ազգ ենք, եւ այդ ազգի մէջ կան զանազան եկեղեցիներ, — լուսաւորչական, բողոքական, կաթոլիկ, յունադաւան եւ մահմետական։ Եւ այդ կազմակերպութիւնից ինքն ըստ ինքեան պէտք է առաջ գար կրօնական ներողամտութիւնը եւ համոզմունքի ազատութիւնը, որպէս զի ազգային միութեան գործը կատարեալ լինէր։

Շատ առաջ էր քարոզւում այդ ցանկալի միութիւնը, Բեռլինի դաշնագրից յետոյ աւելի եռանդով սկսուեց արծարծուել այդ խնդիրը, որովհետեւ այդ միութեան մէջն էր տեսնում ազգի փրկութիւնը եւ Հայաս-

տանի բախտն ու ապագան։ Բայց գտնուեցան մարդիկ, որ սկսեցին հակառակը քարոզել, կամ մեր բռնած ընթացքը ծուռ ու սխալ կերպով բացատրել։ Մենք այդպիսիների հետ գործ չունինք, մեր գործը մեր ազգի բարեմիտների հետ է։ Մենք անդադար պիտի մտրակենք այն չարագործներին, — թէ կաթոլիկ լինէին, թէ լուսաւորչական, թէ բողոքական, թէ յունադաւան եւ թէ մահմետական, — որոնք կրօնի պատճառով մեր ազգի միութեան գործի մէջ երկպառակութիւն են ձգում։ Եւ մենք սիրով կը համբուրենք մեր այն եղբայրներին, առանց դիպչելու նրանց կրօնին, որոնք միայն հայութեան եւ Հայաստանի անունով կը գործեն, եւ հայ ազգի շահերը կը պաշտպանեն։

Մենք մէկ ազգի որդիներ ենք, մենք միեւնոյն ընտանիքի զաւակներ ենք։ Կրօնը, որ մի ժամանակ բաժանել էր մեզ, այժմ ազգի եւ հայրենիքի սէրը պէտք է միացնէ։ Կաթոլիկութիւնը, բողոքականութիւնը եւ մինչեւ անգամ մահմետականութիւնը չեն զրկում հային հայ լինելուց, — եւ ոչ էլ լուսաւորչականութիւնը մեզ իրաւունք է տալիս հայ կոչուելու։ Մենք հայ էինք, երբ հեթանոս էինք, եւ հայ կը մնանք, երբ հազար անգամ կը փոխենք մեր կրօնը։ Մեր ազգութիւնը չի կորչի, — երբ պահպանուած կը լինին այդ բոլոր պայմանները, ինչ որ պէտք են, ինչ որ անհրաժեշտ են մի ազգի գոյութեան համար։

# ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԵՐԻ ՀԱՄԱՐ

*Հրէից ազգը իր հայրենիքը ճանաչում էր Երուսաղէմի մէջ, այսինքն այն տաճարի մէջ, որ Եհովայի տուն էր կոչւում։ Դա էր ժողովրդի սրբավայրը, դա էր, որ Իսրայէլի որդիներին շաղկապում էր “ուխտեալ„ երկրի հետ։*

*Երբ Յիսուս Քրիստոսի աշակերտները հիացմամբ իրանց վարդապետին ցոյց էին տալիս տաճարի շքեղութիւնը, նա խիստ սառնասրտութեամբ պատասխանեց։ “Կը գան օրեր, որ մի քար էլ քարի վրայ չի մնայ եւ բոլորը կը քանդուի։„*

*Մարգարէութիւնը կատարուեցաւ. քանդուեցաւ տաճարը եւ նրա հետ կտրուեցաւ այն կապը, որ կապում էր Իսրայէլի որդիներին մեղր եւ կաթ բղխող “ուխտեալ„ երկրի հետ։ Նրանք սկսեցին գաղթել դէպի զանազան կողմեր. Նրանք այլ եւս հայրենիք չունէին։ Մի ամբողջ ազգ քայքայուեցաւ նիւթեղէն տաճարի հետ. . . .։*

*Քրիստոնէութիւնը հիմնեց հին տաճարի աւերակների վրայ նորը։ Քրիստոնէութիւնը, որի իղձն էր կենդանի մարդերից Աստուծոյ տաճարներ պատրաստել, խոտորուելով իր ուղղութիւնից, սրբացրեց այն բոլոր նուիրական տեղերը, ուր կատարուել էին Փրկչի այս եւ այն տնօրէնութիւնները։ Դաւթի քաղաքի հողն անգամ նուիրական դարձաւ քրիստոնեայ աշխարհի համար, երկար ժամանակ նաւերով կրում էին դէպի արեւմուտք իրանց գերեզմա-*

նատները նրանով սրբացնելու համար։ Այդպիսի անահաւատութիւններից ծնուեցան “խաչակիրների,, արշաւանքները. քրիստոնեայ աշխարհը սկսեց կռուել արեւելքի հետ սուրբ տեղերի ազատութեան համար եւ շարունակ 84 տարի Փոքր-Ասիան ներկուեցաւ մարդկային արիւնով...

Հայերը նոյնպէս յետ չը մնացին ժամանակի քրիստոնէական ֆանատիզմից. հայերը նոյնպէս իրանց բաժինն ունեցան այն քաղաքում, ուր խաչուեցաւ մարդկութեան Փրկիչը։ Հայերը եւս այնտեղ հիմնեցին վանքեր, հաստատեցին վանական միաբանութիւն։ Այնուհետեւ մեր թագաւորներից, թագուհիներից, իշխաններից եւ հարուստներից շատերը, երբ իրանց հայրենիքին վտանգ էր սպառնում, երբ թշնամուն դէմ դնել չէին կարողանում, թողնում էին ժողովուրդը բարբարոսների ձեռքում, եւ իրանց գանձերը առնելով, դիմում էին դէպի Երուսաղէմ, այնտեղ սրբերի հետ ապրելու եւ իրանց հոգու փրկութեան համար աղօթելու։ Մեր անդրանիկ քրիստոնեայ Աբգարի կինը՝ Հեղինէ թագուհին առաջինը եղաւ, որ ճանապարհ բաց արաւ դէպի սուրբ քաղաքը։

Երուսաղէմը դարձաւ հայերի համար նոյնը, ինչ որ էր Մեքքան եւ Մեդինան մահմեդականների համար։ Ամեն մի մահմեդական կրօնական պարտականութիւն ունի, եթէ նրա նիւթական կարողութիւնը հասնում է այնքան գումարի, որ կը լցուցանէ ուխտագնացութեան ծախքը, պէտք է իր կեանքում գոնէ մի անգամ գնայ Մեքքա ու Մեդինա, համբուրէ Մուհամէդի գերեզմանը եւ “հաջի,, դառնայ։ Մի այդպիսի պարտաւորութիւն դրուեցաւ եւ հայերի վրայ։ Աշխարհի ամեն կողմերից ուխտաւորների ահագին բազմութիւն դիմում էին դէպի Երուսաղէմ Փրկչի գերեզմանը համբուրելու համար, այն Փրկչի, որ

1881 տարի առաջ համբարձաւ երկինքը եւ բազմեցաւ Հօր Աստուծոյ աջ կողմը։

Հայոց ուխտաւորները, որպէս նշան ուխտագնացութեան, դրոշմում էին իրանց ձեռքերը, բազուկները վանքի կնիքով, որի կապտագոյն տպաւորութիւնը մնում էր անջնջելի։ Նրանք ստանում էին մի նոր, սրբազան մականուն, կոչվում էին մուղդուսի[1]։ Նրանք ստանում էին վանքի պատրիարքից օրհնութեան կոնդակներ, որոնց մէջ նշանակուած էր լինում, թէ որքան փող ընծայեց վանքին իւրաքանչիւր "Մուղդուսին„ իր հոգու փրկութեան համար։ Իսկ թէ որքան ահագին գումարներ էին դուրս քաշում հայոց ազգի քսակից այդ օրհնութեան կոնդակները, — բաւական է յիշել միայն այն հանգամանքը, որ ուխտաւորների թիւը իւրաքանչիւր տարի հասնում է հազարների։ Այլ եւս չեմ խօսում այն ծախքերի վրայ, որ ամեն մի ուխտաւոր պիտի անէր հեռաւոր Երուսաղէմ հասնելու համար։

Բացի նախապաշարմունքը, բացի ժողովրդի մէջ սովորական դարձած սնահաւատութիւնը, ուխտաւորներին հրապուրում էր այնտեղ եւ մի հրաշք, որ կատարվում էր իւրաքանչիւր տարի սուրբ յարութեան օրում։ Պատարագի ժամանակ յանկարծ երկնքից լոյս էր իջնում եւ տաճարի բոլոր մոմերը առանց կրակի վառվում էին եւ այդ կարող էր տեսնել ամեն մի "մուղդուսի„, եթէ հաւատք ունէր։

Թէեւ այժմ "մուղդուսիների„ դարը մասամբ անցել է, բայց եղել են ժամանակներ, որ ժողովրդի մէջ նախատվում էին, զզուելի էին համարվում այն անձինքը,

---

[1] Մուղդուսի մուղղադդաս բառից է, նշանակում է սուրբ, մաքրուած։

որոնց կարողութիւնը ներում էր, բայց դեռ Երուսաղէմ ուխտ չէին գնացած։ Այսպիսիներին համարում էին ժլատ, ագահ եւ սատանայից կապուած։ Որի ընդհակառակը, ժողովրդի մէջ մեծ յարգանք էին վայելում "մուղդուսի-ները„, նրանց Երուսաղէմի կնիքով դրոշմուած աջը համբուրվում էր քահանաների օծեալ աջի հաւասար։

Ես թողնում եմ Երուսաղէմի վանքի կրօնական նշանակութիւնը, նայում եմ այդ վանքի եւ յի-շեալ ուխտագնացութիւնների վրայ բուն տնտեսական կէտից։

Ինձ միանգամ պատահեց խօսել մի եւրոպացու հետ, որը երկար ժամանակ ապրել էր Պարսկաստանում եւ խիստ խորին կերպով ուսումնասիրել էր երկրի տնտեսական եւ առեւտրական դրութիւնը։ Եւրոպացին սաստիկ գանգատ-վում էր, թէ Պարսկաստանում փող չէ մնացել, ժողո-վուրդը չափազանց աղքատութեան մէջ է, եթէ այսպէս շարունակուի, ամեն վաճառականութիւն կը դադարի այն-տեղ։ Ես հարցրի դրամի բացակայութեան պատճառը։ Նա ասաց, թէ Պարսկաստանից դուրս գնացած տեղային արդիւնաբերութեան եւ նրա փոխարէն արտասահմանից ստացուած մթերքների համեմատական կշռի մէջ մի նշանաւոր տարբերութիւն չը կայ, այնպէս որ, դրսից ստա-ցուած մթերքները չէին կարող սպառել երկրի արծաթն ու ոսկին։ Ապա ի՞նչն է սպառում երկրի դրամը, հարցրի ես։ — Ուխտագնացութիւնը, պատասխանեց նա։ — Ուխտաւորներ ամեն տարի տանում են երկրի հարստու-թիւնը Մեքքա, Մեդինա, Բաղդադ, այնտեղ ծախսում են, իսկ փոխարէնը բերում են "հաջի„ եւ "քէալբալայի„ անունները միայն։ Դա տնտեսական մի մեծ հարուածք է, աւելացրեց նա. այս ուխտագնացութիւնները ամեն տարի

միլիոններ են կլանում, եւ ցոյց տուեց ինձ թուանշաններ իր նկատողութիւնները հաստատելու համար[1]։

Ես ոչինչ չունեմ ասելու եւրոպացու նկատողութիւնների դէմ, բայց եթէ մէկը ինձանից հարցնելու լինէր թէ ինչն է եղել հայերի աղքատութեան պատճառը, — ես կը պատասխանէի, թէ մէկը եւ ամենանշանաւորը եղել է Երուսաղէմի ուխտագնացութիւնը։

Բայց չը նայելով, որ դարերի ընթացքում հայոց բարեպաշտ ժողովուրդը իր հարստութիւնը թափել է Երուսաղէմի վանքում, — այդ վանքը դարձեալ իրան միշտ աղքատ է ձեւացրել եւ միշտ դիմել է ազգի օգնութեանը իր պարտքերը վճարելու համար։ Ով որ ուշիուշով ուսումնասիրել է Երուսաղէմի պատմութիւնը, կը գտնէ այդ մասին շատ փաստեր։ Ես կը յիշեմ մի քանիսը միայն։ Բայց զարմանալին այն է, որ միեւնոյն ժամանակ, երբ վանքը ազգից դրամական օժանդակութիւն է խնդրել, այնտեղ թաղցրած են եղել ահագին գանձեր։

Երուսաղէմի Աստուածատուր պատրիարքի օրերում, յոյն կղերը կաշառելով սուլթանի բօյինի-էյրի (ծռվիզ) Մուհամմէդ փաշայ անունով վէզիրին, խլեցին հայ աբեղաների ձեռքից Երուսաղէմի ուխտատեղիները, որոնց թւում եւ սուրբ Յակոբայ վանքը։ Այդ միջոցին յիշեալ Աստուածատուր պատրիարքը ստիպուեցաւ գնալ Կ. Պոլիս, դիմել ազգի օգնութեան, որ դրամով եւ գործով օժանդակեն իրան, որպէս զի ինքն եւս յոյների նման կաշառքներ տալով, կարողանայ յետ խլել նրանց ձեռքից հայոց սրբավայրերը։ Նա դեգերում էր հայոց իշխանների, հա-

[1] Մեքքայի շէրիֆը մի թագաւորի գանձ ունի. վերջին ռուս-թուրքական պատերազմի ժամանակ սուլթանը դրամի կարօտութիւն կրելով, մտածեց զրկել շէրիֆին, նրա հարստութեան մի մասը փոխ առնելու համար։

րուստների եւ եկեղեցիների դռներում եւ հանգանակութիւն էր հաւաքում։ Այդ միջոցին նա անթափցի Եղիազար վարդապետին Կ. Պոլսից ուղարկեց Երուսաղէմ, որպէս իր փոխանորդ, մինչեւ ինք մայրաքաղաքում կը կարգադրէր գործերը։ Եղիազարը գալով Երուսաղէմ, վանքը գտնում է սաստիկ աղքատութեան մէջ եւ դրամի կարօտ։ Ճարպիկ Եղիազարը քրքրում է պատրիարքի թղթերը (նոյն պատրիարքի, որ Կ. Պոլսում ազգից օժանդակութիւն էր խնդրում) եւ գտնում է մի տումարի մէջ գրուած. “սպիտակ մոմ այսքան, դեղին մոմ այսքան։„ Տեղեակ լինելով վանականների սովորական խորամանկութիւններին, նա իսկոյն հասկանում է այդ հաշուի գաղտնիքը եւ սկսում է որոնել “մոմերը„։ Ի՞նչ է դուրս գալիս։ Պատրիարքի կացարանի մէջ գտնում է երկու պղնձէ “թակոյկներ„ (փոքրիկ կարաս) մէկի մէջ լցրած “դեղին մոմ„, փոխարէն դեղին ոսկի, իսկ միւսի մէջ՝ “սպիտակ մոմ„, փոխարէն սպիտակ արծաթ, բոլորը երկու հարիւր հազար դահեկանի արժէք ունեցող։

Երուսաղէմի պատրիարքութեան հիմքը դրեց Սարգիս եպիսկոպոսը 1311 թուին, Կիլիկիայի կրօնական երկպառակութիւնների ժամանակ։ Նա ապստամբուեցաւ Ռուբինեան Օշին թագաւորի եւ Սսի Կոստանդին կաթողիկոսի դէմ, եւ Եգիպտոսի մահմեդական ամիրից հրովարտակ առնելով, սկսեց թագաւորից եւ կաթողիկոսից անկախ իշխել Երուսաղէմում։ Եւ համարեա այն օրից սկսվում է մի շարունակ կռիւ Երուսաղէմի եւ Կ. Պոլսի պատրիարքութիւնների մէջ մի կողմից, իսկ Երուսաղէմի եւ միւս կաթողիկոսարանների մէջ միւս կողմից։ Այդ կռիւները դարերով տակն ու վրայ են արել ազգը, պատճառել են նրան ահագին բարոյական եւ նիւթական վնասներ եւ

զբաղեցրել են ժողովրդին անհաշտ երկպառակութիւններով։ Պատրիարքները, կաթողիկոսները, իրանց փառասիրութիւնը եւ ընչաքաղցութիւնը յագեցնելու համար, յափշտակում էին միմեանցից աթոռներ, կռւում էին միմեանց հետ, իսկ ժողովուրդը մէջ տեղում մաշվում էր։ Պատերազմական ծախքերը, որ տրվում էին սուլթաններին ու մահմեդական պաշտօնեաներին որպէս կաշառք ժողովրդին էին տուժել տալիս, ի հարկէ, եկեղեցական հանգանակութեան անունով։

Ես կը յիշեմ մի աղէտալի անցք, որ պատահեց Քեօփրուլու Մուհամմէդ կոչուած մեծ վէզիրի օրերում։ Այդ այն ժամանակն էր, երբ Կ. Պոլսի յունաց Բարթենիոս պատրիարքը դատապարտուեցաւ իբրեւ Թիւրքաց կառավարութեան դաւաճան եւ իր պատրիարքական զգեստով կախաղանի վրայ բարձրացաւ Բալըխ-կափու կոչուած տեղում։

Այդ միջոցին Կ. Պոլսի հայոց պատրիարքի ընտրութեան համար մեծ խռովութիւն կար ժողովրդի մէջ։ Բերիացի փառասէր Թոմաս վարդապետը աշխատում էր պատրիարք լինել. ժողովուրդը չէր ընդունում։ Նրա հակառակորդները դիմեցին մեծ վէզիրին, խոստացան վճարել իւրաքանչիւր տարի 140.000 ոսկի[1], միայն թէ Թոմասը պատրիարք չը լինի, այլ թոյլ տրուի ընտրել իրանց ցանկացած անձին։ Այդ երբ տեսաւ Թոմասը, ինքը նոյնպէս դիմեց մեծ վէզիրի մօտ, խոստացաւ վճարել իւրաքանչիւր տարի 400.000 ոսկի, որ Բ. Դուռը իրան հաստատէ Կ. Պոլսի պատրիարք, այն նոր իրաւասութեամբ, որ Երուսաղէմի պատրիարքն եւս ենթարկուի իր իշխանու-

[1] Բ. Դուռը մինչեւ այսօր մի որոշ տուրք է ստանում պատրիարքից նրա ընտրութեան բերաթ հաստատելու համար։

թեանը։ Գումարի խոշորութիւնը հրապուրեց մեծ վէզիրին մերժել ժողովրդի պահանջը եւ Թոմասին սուլթանի բերաթով հաստատել Կ. Պոլսի պատրիարք, այլ եւ Երուսաղէմի պատրիարքի վրայ գերիշխանութիւն շնորհել։ Թոմասը իր կաշառքով գրաւած աթոռը պահպանելու համար շրջապատեց իր պատրիարքարանը մի խումբ թուրք զինուորներով, որոնց թօշակը ինքն էր տալիս, ամեն օր 20 ֆռանկ արծաթ։

Թոմասի մի այսպիսի բռնակալութիւնը գրգռեց ժողովրդի բարկութիւնը մի կողմից, եւ Երուսաղէմի Աստուածատուր պատրիարքի նախանձը միւս կողմից, երբ վերջինս տեսաւ, որ Թոմասը սուլթանի հրամանով իր վրայ գերիշխանութիւն ստացաւ։ (Դա մեր վերեւ յիշած միեւնոյն Աստուածատուր պատրիարքն էր, որ երկու պղնձէ թակոյկների մէջ մոմի անունով թագցրել էր ոսկին ու արծաթը։) Դա միաբանուեցաւ Թոմասի հակառակորդների հետ, թուղթ գրեցին, երդուեցան, ուխտ դրին, որ ամեն միջոցներ գործ դնեն Թոմասին ոչնչացնելու համար։ Կաշառքները չօգնեցին, որովհետեւ որքան դրանք էին տալիս, Թոմասը կրկնապատիկ աւելի էր տալիս։ Մտածեցին մատնել Թոմասին, ամբաստանելով նրան որպէս քաղաքական յանցաւոր, իբր թէ նա “Ֆրանկների„ հետ գաղտնի յարաբերութիւններ ունի, տէրութեան դէմ որոգայթներ է լարում եւ այլն։ Մատնութիւնը հասցրեց նրանց ցանկացած նպատակին, եւ որովհետեւ յունաց պատրիարքի անցքը դեռ նոր էր, կառավարութիւնը Թոմասին կալանաւորեց եւ դրեց մահապարտների բանտը։

Այդ միջոցին Թոմասի կուսակիցները յուսահատ կերպով թիւրքաց պաշտօնատարների դռներում դեգերում էին, ահագին գումարներ էին ծախսում, որ մի կերպով

ազատեն նրան։ Բայց Թոմասի հակառակորդները աւելի
ճարպիկ գտնուեցան. Նրանք կաշառեցին մեծ վէզիրի փո-
խանորդ Սինան փաշային, եւ նրա գիտութեամբ, բանտի
պահապանների ձեռքով, սուրճի մէջ թոյն խառնելով,
սպանեցին Թոմասին։ Պատրիարքի մարմինը մի քանի օր
մնաց անթաղ, բանտի դռան հրապարակի վրայ ընկած,
յետոյ ձգեցին ծովը։

Դրանով չը վերջացաւ խռովութիւնը։ Երկար ժա-
մանակ Թոմասի կուսակիցների եւ նրա հակառակորդների
մէջ կռիւը շարունակվում էր։ Վերջիններից շատերը
բանտարկուեցան որպէս մարդասպաններ։ Անդադար մինը
միւսին ամբաստանելով, կալանաւորել էր տալիս, եւ այդ
աւելի շահաւէտ էր Թիւրք պաշտօնատէրներին, որովհետեւ
ամեն անգամ ահագին տուգանքներ ու կաշառքներ էին
ստանում։

Դեռ յիշեալ երկպառակութիւնները չէին վերջացած,
կռիւը ընկաւ Թոմասի հակառակորդների եւ Երուսաղէմի
Աստուածատուր պատրիարքի մէջ։ Նրանից պահանջում
էին վճարել այն ծախքերի մի մասը, որ գործ էին դրել
Թոմասի սպանութեան համար։ Պատրիարքը չէր ուզում
վճարել, թէեւ ինքը եղեռնագործութեան պարագլուխ-
ներից մէկն էր, եւ իր կնիքն ու ստորագրութիւնը դրել
էր այն թղթի վրայ, որով ուխտել էին Թոմասին ոչն-
չացնելու։ Պատրիարքը կամենում էր իր մաս սպանու-
թեան ծախքը բաժանել Կ. Պոլսի հինգ եկեղեցիների վրայ,
որ ժողովուրդը վճարէ։ Նրան պատասխանում էին. մենք
ի՞նչով ենք մեղաւոր, դու մի պատրիարք ես սպանել
տուել, քո շահերի համար, գնա՛ ինքդ տուժիր ծախքերը։
Ժողովրդի խօսքը իրաւացի էր։ Երուսաղէմի Աստուածա-
տուր պատրիարքը սպանել տուեց Թոմասին գլխաւորապէս

այն պատճառով, որ նա սուլթանի հրամանով գերիշխա-
նութիւն էր ստացել Երուսաղէմի պատրիարքի վրայ։ Այդ
խառնվութիւնների պատճառով մի քանի տարի յուզման
մէջ էր Կ. Պոլսի Հայ հասարակութիւնը։ Հակառակու-
թիւնը օր ըստ օրէ սաստկանում էր. իւրաքանչիւր կողմը
կաշառքով գրաւում էր Թիւրքաց պաշտօնատարներին
դէպի ինքը, հակառակորդին նկուն անելու համար։ Երբեմն
մի կողմի, երբեմն միւս կողմի մարդիկը բանտ էին դրվում,
ի հարկէ, ազատվում էին դարձեալ կաշառքով։ Կռիւը
հանդարտուեցաւ այն ժամանակ, երբ Երուսաղէմի պա-
տրիարքը վերջապէս յանձն առեց վճարել իր մասը, որ
գործ էր դրուած Թոմասի սպանութեան համար։

Վերոյիշեալ աղէտալի պատմութիւնը մի փոքրիկ կտոր
է միայն Երուսաղէմի վանքի ընդարձակ պատմութիւնից,
որ բովանդակում է իր մէջ շատ այդպիսի եւ դրա նման
անցքեր, որ կարդացողի վրայ սարսափ են ձգում։ Անկա-
րելի է երեւակայել, թէ ի՛նչ սրտի, ի՛նչ հոգու տէր են
եղել այդ մարդիկը, որ Յիսուս Քրիստոսի նուիրական տե-
ղերի անունով ահագին գումարներ էին հաւաքում ազգից,
լցնում էին մահմեդական պաշտօնակալների քսակները,
մինը միւսի ձեռքից Երուսաղէմի պատրիարքութեան աթոռը
կորզելու համար։ Իսկ վանքը թողնում էին աղքատու-
թեան մէջ, կրկին դիմում էին ազգին, որ նրա պարտ-
քերը վճարէ։ Այդ մասին բաւական է կարդալ մեր վերեւ-
յիշած Եղիազար անթափցու պատմութիւնը, որը երկու-
պղնձէ թակոյկների մէջ գտաւ Երուսաղէմի Աստուածա-
տուր պատրիարքի թաղցրած գանձը։ Այդ գումարը նա
ծախսեց նոյն իսկ Աստուածատուր պատրիարքին (Թոմասի
սպանել տուողին) աթոռից ձգելու եւ ինքը նրա տեղ
պատրիարք դառնալու։ Դրանով չը բաւականացաւ Եղիա-

զօրը։ Նա աՀագին կաշառքներ տալով սուլթանի մեծ վէզիրին, կաթողիկոս ընտրուեցաւ, նաեւ Երուսաղէմում Հակառակ Սսի եւ Էջմիածնի կաթողիկոսարանների։ Պէտք է ի նկատի առնել, որ Եղիազարի այդ փառասիրական վարմունքը բոլորովին ընդդէմ էր մեր եկեղեցու վարչութեան հնաւանդ սովորութիւններին, որովհետեւ Երուսաղէմում միայն պատրիարքներ կարող էին իշխել եւ ոչ կաթողիկոսներ։

Երբեմն Երուսաղէմի վանքում այն աստիճան անիշխանութիւն էր տիրում, որ իրանք միաբանները, կամ նրա կառավարիչները սկսում էին անխնայ կերպով ամեն ինչ վատնել։ Ես օրինակ կը բերեմ մի անցք, որ տեղի ունեցաւ Գրիգոր պատրիարքի օրերում։ Այդ ժամանակ անկարգութիւնը իր վերին ծայրին էր Հասել. վանքի արծաթեղէնները, սրբազան անօթները, քապերը, սրբոց մասունքները, — բոլորը վաճառվում էին անբարոյական, շռայլ միաբանութեան ծախքերը լցուցանելու Համար։ Երբ ամեն ինչ սպառուեցաւ, սկսեցին աՀագին տոկոսներով պարտքեր անել եւ Երուսաղէմի նուիրական տեղերը, մինչեւ անգամ սուրբ Յակոբայ վանքը մաՀմեդականների մօտ գրաւ դնել։ Պարտքերը այն աստիճան աճեցին, որ Հասան 800 քսակ ոսկու։ ՄաՀմեդականները կամենում էին վաճառել Հայոց սրբավայրերը, որ իրանց տուած փողը ստանան։ Յոյն աբեղաները լաւ մուշտարի էին Հայոց տեղերը գնելու Համար։ Այդ միջոցին նոյն ժամանակուայ Երուսաղէմի Գրիգոր պատրիարքը, որ կապուեցաւ շղթայակիր (զինճիրլի), երբ պարանոցին երկաթէ Հաստ շղթայ ձգելով եւ երկաթէ կողպէքով կողպելով, կանգնած էր Կ. Պոլսի եկեղեցիների դռների առջեւ, եւ արտասուքը աչքերում աղաղակում էր ժողովրդին. “ազատեցէք, ազատեցէք, Երուսաղէմը

գերութեան մէջ է։,, Այդ շղթան նա ամբողջ ութ տարի կրում էր իր պարանոցին, մինչեւ կարողացաւ Հայոց բարեպաշտ ժողովրդից հաւաքել 800 "քսակ,, ոսկին, վճարել մահմեդականների պարտքերը եւ ազատել Երուսաղէմը գերութիւնից . . .

Այսպիսի օրինակներ շատ անգամ են պատահել. Երուսաղէմը պարտքի տակ է ընկել, ազգը նրա պարտքերը վճարել է. կրկին պարտքի տակ է ընկել, կրկին վճարել է, եւ այդ անտանելի դրութիւնը շարունակուել է մինչեւ մեր օրերը։ Բայց եթէ այդ պարտքերի բուն արմատը քննելու լինենք, կը տեսնենք, որ ծայրը հասնում է մինչեւ այս եւ այն աբեղայի գրպանը։ Իսկ այդ բոլորի փոխարէն ես գոնէ չեմ տեսնում մի ամենաչնչին բարիք, որ այդ վանքը Հայոց ազգին մատուցած լինի։

Երուսաղէմի վանքը եղել է եւ է հայերի համար երկպառակութեան աղբիւր, մի տեսակ կռուի բոյն, որտեղից խռովութիւնները երբեք պակաս չեն եղել։ Ես եւ այդ շատ բնական եմ համարում։ Ի՞նչ կը նշանակէ Հայաստանի հողից դուրս, Հրէաստանի մի քաղաքում, ուր ոչ մի հայ ընտանիք չը կայ, պահպանել վանք, վանական միաբանութիւն, այլ եւ մի ամբողջ պատրիարքարան։ Իսկ նրանից մի քանի քայլ հեռու գտնվում է Սսի կաթողիկոսարանը, Կ. Պոլսի պատրիարքարանը, Աղթամարայ կաթողիկոսարանը եւ զանազան վանքեր ու կրօնական միաբանութիւններ։ Յայտնի բան է, որ դրանց մէջ կռիւններ կը ծագէին իշխանութեան եւ շահերի միմեանց հետ ընդհարումների պատճառով։

Բաւական չէր իրանց մէջ ունեցած կռիւները, որոնք ազգի համար խիստ թանգ էին նստում, Երուսաղէմի Հայոց վանքի միաբանութիւնը, համարեա այդ վանքի

հիմնուած օրից մինչեւ մեր ժամանակը, անընդհատ կռիւներ է ունեցել յոյն եւ լատին կրօնաւորների հետ։ Համարեա ամեն տարի սուրբ Յարութեան տօնի օրում աբեղաները միմեանց գլուխը ջարդել են եւ նրանց հետ խառնուել են երկու կողմերի դաւանութիւններին պատկանող ուխտաւորները։ Ամեն անգամ, երբ ուխտաւորը վերադառնում է, առաջին հարցը, որ առաջարկում են նրան, այդ է լինում. “այս տարի կռիւը ինչպէս վերջացաւ։,, Եւ կռիւը ինչից է ծագում, — հայերը կամենում են առաջ իրանք պատարագել, իսկ յոյները արգելում են. նոյնը յոյներն են կամենում, հայերը արգելում են, կամ մինը աշխատում է միւսի տօնը խանգարել եւ այլ այսպիսի պատճառներ։ Եւ այդ բոլորը կատարուել է սէր եւ խաղաղութիւն քարոզող Փրկչի գերեզմանի վրայ։

Թիւրքաց կառավարութիւնը միշտ ներողամիտ աչքով է նայել այդ անկարգութիւնների վրայ, եւ չը նայելով դարեւոր բողոքներին, մինչեւ այսօր Երուսաղէմի մէջ գտնուած զանազան դաւանութեան պատկանող կրօնական միաբանութիւնների վէճերին մի վերջնական որոշում չէ տուել, որպէս զի նրանց մէջ անբաւականութեան առիթ չը մնար։ Եւ այդ պահանջում էր նոյն իսկ կառավարութեան շահը. նախ այն պատճառով, որ հաշտութիւնը քրիստոնեայ հպատակների մէջ նրան շատ օգտաւէտ չէր կարող լինել, երկրորդ, կառավարութեան պաշտօնակալները մեծ շահեր էին ստանում յիշեալ կռիւներից։ Երուսաղէմի հայոց պատրիարք Գրիգոր Մոկացու օրերում մի անգամ “Ծռզատիկ,, պատահեց, այսինքն զատկի խառնում եղաւ, հայերը պէտք է յոյներից մի օրով առաջ կատարէին զատկի տօնը. յոյները կաշառք տալով տեղային փաշային, արգելեցին։ Այդ տեսնելով հայոց պատրիարքը,

ստիպուեցաւ 20 հազար դահեկան կաշառք տալ նոյն փաշային, որ թոյլ տրուի զանկի տօնը հայոց տօնացոյցի համեմատ կատարել:

Թողնենք անցեալը, թողնենք պատմութիւնը, եթէ կարդալու լինինք մեզ մօտ ժամանակների Կ. Պոլսի հայոց պարբերական թերթերը, նրանց մէջ կը գտնենք հարիւրաւոր օրինակներ այն տարօրինակ երկպառակութիւնների, որ կատարուել են Երուսաղէմի վանքում: Իսկ այդ անվերջանալի կռիւները, այդ երկպառակութիւնները մեզ համար շատ թանգ են նստել, մենք թողել ենք մեր բուն ազգային հոգսերը, սկսել ենք մտածել Երուսաղէմի վանքի վրայ, մենք վատնել ենք մեր արծաթը, որի իւրաքանչիւր կոպէկը խիստ մեծ արժէք ունէ մեր ազգային աւելի անհրաժեշտ պէտքերի համար: Կ. Պոլսի պատրիարքարանը, Կ. Պոլսի մեր ազգայինները տարիներով զբաղուած են եղել եւ այժմ զբաղվում են Երուսաղէմի վանքով: Բայց ի՞նչ տուեց այդ վանքը մեզ:

# ՐԱՖՖԻԻ

## ՎԱՃԱՌԵԼԻ ԳՐՔԵՐՆ ԵՆ

| | | ռուբլի | շիլլինգ |
|---|---|---|---|
| 1. | “ՍԱՄՈՒԷԼ” Հտր. Ա. Բ. եւ Գ. մի գրքի մէջ ամփոփուած, Բ. տպագրութիւն (սակաւ.) . . . . . . . . . . | 3.50 | 8 |
| 2. | “ԴԱՒԻԹ-ԲԷԿ” Հտր. Ա. Բ. եւ Գ. վեր-ջաբանով, Գ. տպագր. . . . . . . . | 3.50 | 8 |
| 3. | “ԿԱՅԾԵՐ” Հտր. Ա., Գ. տպագր. . . | 2.— | 5 |
| 4. | “ԿԱՅԾԵՐ” Հտր. Բ. եւ վերջ, Բ. տպ. | 3.— | 7 |
| 5. | “ԽԵՆԹԸ” եւ “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ” մի գրքի մէջ ամփոփուած, Գ. տպագր.. . . . . | 2.— | 5 |
| 6. | “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ” առանձին (սակաւ.) . | 50 կոպ. | 1½ |
| 7 | “ԽԱԶԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ” Ա. Բ. Գ. եւ Դ. Հտր. մի գրքի մէջ ամփոփուած, Գ. տպագր. . . . . . . . . . . | 2.— | 5 |
| 8. | “ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ” “ՂԱՐԱԲԱՂԻ ԱՍՏՂԱԳԷՏԸ” . . “ԳԱՂՏՆԻՔՆ ՂԱՐԱԲԱՂԻ” . . (մի հատորի մէջ ամփոփուած) | 2.— | 5 |
| 9. | “ՍԱԼԲԻ” Հտր. Ա. . . . . . . . | 3.— | 8 |
| 10. | “ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ” . . . . | 2.— | 5 |
| 11. | “ՏԱՃԿԱՀԱՅՔ” Բ. տպագր. լիակատար | 1.— | 3 |

Հրատ. ԱՅՐԻ ԱՆՆԱ ՐԱՖՖԻ

Ցանկացողները դիմել գիմեն՝

*Madame Raffi*

*32, Richmond Gardens, Shepherd's Bush, London, W. (England).*

Մեծ քանակութեամբ պահանջողները դիմել գիմեն՝

**A la Direction de l'Imprimerie des P. P. Méchitharistes**

**VIENNE (Autriche), VII/2 Mechitharistengasse 4.**

# ՐԱՖՖԻԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

*Շուտով տպագրութեան կը յանձնուի Րաֆֆիի ընդարձակ եւ պատկերազարդ կենսագրութեան առաջին պրակը, աշխատասիրութեամբ Այրի Աննա Րաֆֆիի։ Ամբողջ գործը բաղկացած պիտի լինի մի քանի հատոր-ներից որոնք լոյս կը տեսնեն պրակ առ պրակ։*

ԼՈՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ

## ՐԱՖՖԻԻ ՄԱՀԻՑ ՅԵՏՈՅ

### ՄԵՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

| | | рուբլի |
|---|---|---|
| 1. | "ՀԱՅ ԿԻՆԸ ԵՒ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆԸ" (*սպառուած*) . . . . . . . . . . . . . . . | —.— |
| 2. | "ԽԵՆԹԸ" ԵՒ "ՋԱԼԱԼԷԴԴԻՆ" *մի գրքի մէջ ամփոփուած, Բ. տպագր. (սպառուած)* . . . . . | —.— |
| 3. | "ԴԱՒԻԹ-ԲԷԿ" *Հատ. Ա., Բ. եւ Գ. վերջաբանով, Բ. տպագր. (սպառուած)* . . . . . . . . | —.— |
| 4. | "ՄԻՆՆ ԱՅՍՊԷՍ, ՄԻՒՍՆ ԱՅՆՊԷՍ", *պատկերազարդ վէպ (սպառուած)* . . . . . . . . . | —.— |
| 5. | "ԿԱՅԾԵՐԻ" Ա. *Հատ. Բ. տպագր. (սպառուած)* . | —.— |
| 6. | "ԿԱՅԾԵՐԻ ՎԵՐՋԸ" (*սպառուած*) . . . . . . | —.— |
| 7. | "ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ" *Հատ. Ա. (սպառ.)* | —.— |

| | | ռուբլի |
|---|---|---|
| 8. | “ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ„ Հտր. Բ. (սպառ.) | —.— |
| 9. | “ԱՐԾԻՒ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ„ (սպառուած) . . . | —.— |
| 10. | “ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ„ Բ. տպագր. (սպառուած) . . . . . . . . . . . . . . | —.— |
| 11. | “ՊԱՐՈՅՐ ՀԱՅԿԱԶՆ„ (սպառուած) . . . . . | —.— |
| 12. | “Ո՞Վ ԷՐ ՄԵՂԱՒՈՐ„ (սպառուած) . . . . . . | —.— |
| 13. | “ՓՐԻԴՕԼԻՆ„ Թարգ. (սպառուած) . . . . . | —.— |
| 14. | “ՋԱՀՐՈՒՄԱՐ„ վէպ (սպառ.) . . . . . . | —.— |
| 15. | “ՏԱՃԿԱՀԱՅՔ„ (սպառուած) . . . . . . | —.— |
| 16. | “ԽԱԶԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ„ Ա., Բ., Գ. եւ Դ. մաս, Բ. տպագր. . . . . . . . . . . . . | —.— |
| 17. | “ՈՍԿԻ ԱՔԱՂԱՂ„ Բ. տպագր. (սպառ.) . . . . | —.— |
| 18. | “ՍԱՄՈՒԷԼ„ Հտր. Ա., Բ. եւ Գ., Բ. տպագր. (սակաւ.) . . . . . . . . . . . . . | 3.50 |
| 19. | “ԴԱՒԻԹ-ԲԷԿ„ Հտր. Ա., Բ. եւ Գ. վերջաբանով, Գ. տպագր. . . . . . . . . . . . . . | 3.50 |
| 20. | “ԿԱՅԾԵՐ„ Ա. Հտր. Գ. տպագր. . . . . . . | 2.— |
| 21. | “ԿԱՅԾԵՐ„ Բ. Հտր. եւ վերջ, Բ. տպագր. . . . | 3.— |
| 22. | “ԽԵՆԹԸ„ եւ “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ„ Գ. տպագր. . . | 2.— |
| 23. | “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ„ առանձին, Գ. տպագր. (սակաւ.) | —.50 |
| 24. | “ԽԱԶԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ„ Ա. Բ. Գ. եւ Դ. մաս, Գ. տպագր. . . . . . . . . . . . | 2.— |
| 25. | “ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ„<br>“ՂԱՐԱԲԱՂԻ ԱՍՏՂԱԳԷՏԸ„ . .<br>“ԳԱՂՏՆԻՔՆ ՂԱՐԱԲԱՂԻ„ . . . . . . . | 2.— |
| 26. | “ՍԱԼԲԻ„ Հտր. Ա. (ձեռագրից) . . . . . . . | 3.— |
| 27. | “ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ„ . . . . .<br>“ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ„ . | 2.— |

Հրատարակչուհի՝ ԱՅՐԻ ԱՆՆԱ ՐԱՖՖԻ

ՀԵՏԶՀԵՏԷ ԼՈՅՍ ՊԻՏԻ ՏԵՍՆԵՆ

# ՐԱՖՖԻԻ

## ՀԵՏԵՒԵԱԼ ԱՆՏԻՊ ԵՒ ՍՊԱՌՈՒԱԾ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1. “ՍԱԼԲԻ„ *Հատ.* Բ. (*ձեռագիր*)։
2. “ՍԱԼԲԻ„ *Հատ.* Գ. (*ձեռագիր*)։
3. “ՊԱՏՄԱԿԱՆ ԱԿՆԱՐԿՆԵՐ„ (*անտիպ եւ արտատպուած*)։
4. “ՈՍԿԻ ԱՔԱՂԱՂ„։
5. “ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ„ *Հատ.* Ա։
6. “ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ„ *Հատ.* Բ։
7. “ՀՐԱՊԱՐԱԿԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ„ (*անտիպ եւ արտատպուած*)։
8. “ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ„ (*անտիպ եւ արտատպուած*)։
9. “ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ„ (*անտիպ եւ արտատպուած*)։
10. “ՆԱՄԱԿՆԵՐ„ (*անտիպ*)։
11. “ՋԱՀՐՈՒՄԱՐ„։
12. “ՄԻՆՆ ԱՅՍՊԷՍ, ՄԻՒՍՆ ԱՅՆՊԷՍ„։
13. “ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆՆԵՐ„ (*անտիպ եւ տպուած*)։
14. “ԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ„ *Հայկից մինչեւ Լեւոն* Զ. (*անտիպ*)։
15. “ՍԱՄՈՒԷԼ„ *Հատ.* Ա. Բ. Գ.։
16. “ԱՐԾԻՒ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ„ (*Խրիմեան Հայրիկ*)։
17. “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ„ (*առանձին*)։
18. “ԿԱՅԷՆԻ ԿՏԱԿԸ.. *եւ այլն*։

# ՐԱՖՖԻԻ

## ԱՌԱՆՁԻՆ ԳՐՔԵՐՈՎ ԼՈՅՍ ՏԵՍԱԾ ԵՐԿԵՐԻ ԼԻԱԿԱՏԱՐ ՑՈՒՑԱԿԸ

---

### Ա. ՀԵՂԻՆԱԿԻ ԿԵՆԴԱՆՈՒԹԵԱՆ ԺԱՄԱՆԱԿ

*Այս գրքերը տպուած են հեղինակի կենդանութեան ժամանակ իւր սեպհական միջոցներով. միայն “Կայծերի„ մեկենաս է հանդիսացել գնդապետ Մելիք-Հայկազեանը եւ “Խենթը„ հրատարակել է Պր. Աբել Աբրեսեանը։*

*Իւրաքանչիւր գրքից տպագրուել է* 1200 *օրինակ։ Աւել տպուածները յիշուած են փակագծի մէջ։*

---

1. 1874 *Թ.* “ՓՈՒՆՋ„, Ա. *Հատոր. Թիֆլիս* (1500 *օրինակ*)։
2. 1874 *Թ.* “ՓՈՒՆՋ„, Բ. *Հատոր. Թիֆլիս* (1500 *օրինակ*)։
3. 1880 *Թ.* “ԽԵՆԹԸ„. *Շուշի*։
4. 1881 *Թ.* “ԴԱՒԻԹ-ԲԷԿ„, Ա. *Հատոր. Թիֆլիս*։
5. 1882 *Թ.* “ԴԱՒԻԹ-ԲԷԿ„, Բ. *Հատոր. Թիֆլիս*։
6. 1882 *Թ.* “ԽԱՄՍԱՑԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ„. *Թիֆլիս*։
7. 1882 *Թ.* “ՈՍԿԻ ԱՔԱՂԱՂ„. *Թիֆլիս*։
8. 1882 *Թ.* “ՂԱՐԱԲԱՂԻ ԱՍՏՂԱԳԷՏԸ„. *Թիֆլիս*։
9. 1883 *Թ.* “ԿԱՅԾԵՐ„, Ա. *Հատոր. Թիֆլիս*։
10. 1883 *Թ.* “ԽԱՉԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ„, Ա. *եւ* Բ. *մաս. Թիֆլիս*։

11. 1883 թ. “ԽԱՉԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ„, Գ. եւ Դ. մասն. Թիֆլիս։

12. 1884 թ. “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ„. Մոսկուա (2000 օրինակ)։

13. 1884 թ. “ԿԱՅԷՆԻ ԿՏԱԿԸ„. Թիֆլիս։

14. 1884 թ. “ՊՍԱԿ„ (Ժողովածու Րաֆֆիի գրուածքներից). Թիֆլիս։

15. 1887 թ. “ԿԱՅԾԵՐ„, Բ. Հատոր. Թիֆլիս։

16. 1888 թ. “ՍԱՄՈՒԷԼ„, Ա., Բ. եւ Գ. Հատոր. Թիֆլիս (1800 օրինակ)։

---

## Բ. ՀԵՂԻՆԱԿԻ ՄԱՀԻՑ ՅԵՏՈՅ ԼՈՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԱՅՐԻ ԱՆՆԱ ՐԱՖՖԻԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ ԵՒ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՄԲ

Այս գրքերը տպուած են Այրի Աննա Րաֆֆիի սեպհական միջոցներով, առանց կողմնակի որեւէ նպաստի։

Իւրաքանչիւր գրքից տպագրուել է 2400ական օրինակ։

---

17. 1889 թ. Թ. 1. “ՀԱՅ ԿԻՆԸ ԵՒ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆԸ„ (առաջին անգամ առանձին գրքով. արտատպուած “Մշակից„). Թիֆլիս։

18. 1890 թ. Թ. 2. “ՄԻՆՆ ԱՅՍՊԷՍ, ՄԻՒՍՆ ԱՅՆՊԷՍ„ (առաջին անգամ առանձին գրքով, ձեռագրից պատկերազարդ). Թիֆլիս։

19. 1890 թ. Թ. 3. “ԽԵՆԹԸ ԵՒ ՋԱԼԱԼԷԴԴԻՆ„. Մոսկուա. Բ. տպագրութիւն (3000 օրինակ)։

20. 1891 թ. Թ. 4. “ԴԱՒԻԹ-ԲԷԿ„, Ա., Բ. եւ Գ. Հատոր վերջաբանով. Թիֆլիս. Բ. տպագրութիւն,

21. 1891 թ. Թ. 5. “ԿԱՅԾԵՐԻ ՎԵՐՋԸ„ (ձեռագրից, առաջին անգամ). Թիֆլիս։

22. 1892 թ. Թ. 6. “ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ„, Ա. Հատոր (ձեռագիր եւ արտատպուած վէպիկներ, առաջին անգամ առանձին գրքով). Թիֆլիս։

23. 1892 թ. Թ. 7. “ԿԱՅԾԵՐ„, Ա. Հատոր. Բ. տպագրութիւն. Թիֆլիս։

24. 1893 թ. Թ. 8. “ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ„ (ձեռագիր եւ արտատպուած վէպիկներ, առաջին անգամ առանձին գրքով). Թիֆլիս։

25. 1893 թ. Թ. 9. “ԱՐԾԻՒ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ„ (ձեռագիր եւ արտատպուած, առաջին անգամ առանձին գրքով). Թիֆլիս։

26. 1893 թ. Թ. 10. “ՊԱՐՈՅՐ ՀԱՅԿԱԶՆ„. Թիֆլիս։

27. 1893 թ. Թ. 11. “Ո՞Վ ԷՐ ՄԵՂԱՒՈՐ„. Թիֆլիս։

28. 1893 թ. Թ. 12. “ՖՐԻԴՕԼԻՆ„. Թիֆլիս։

29. 1894 թ. Թ. 13. “ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ„, Բ. տպագրութիւն. Թիֆլիս։

30. 1894 թ. Թ. 14. “ՋԱՀՐՈՒՄԱՐ„ (ձեռագրից, առաջին անգամ առանձին գրքով). Թիֆլիս։

31. 1895 թ. Թ. 15. “ԽԱԶԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ„, Բ. տպագրութիւն. Թիֆլիս։

32. 1895 թ. Թ. 16. “ՏԱՃԿԱՀԱՅՔ„ (արտատպուած, առաջին անգամ առանձին գրքով). Թիֆլիս։

---

## Գ. ԱՅՐԻ ԱՆՆԱ ՐԱՖՖԻԻ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Այս գրքերը տպուած են Վիեննա Մխիթարեան Հարց տպարանում, ընտիր թղթի վրայ, խոշոր տառերով եւ միատեսակ

գիրքով, որոնց կցուած են հարկ եղած ծանօթութիւններ եւ բացատրութիւններ եւ այսպիսով կազմում են հեղինակի լիակատար երկերի մի շարքը։

Իւրաքանչիւր գրքից տպագրուել է 3000ական օրինակ։

---

33\. 1898 թ. Թ. 17. “ՍԱՄՈՒԷԼ„, Ա., Բ. եւ Գ. Հատոր. Բ. տպագրութիւն. Վիեննա։

34\. 1903 թ. Թ. 18. “ԴԱՒԻԹ-ԲԷԿ„, Ա., Բ., Գ. Հատոր եւ վերջ. Գ. տպագրութիւն. Վիեննա։

35\. 1903 թ. Թ. 19. “ՈՍԿԻ ԱՔԱՂԱՂԸ„, Բ. տպագրութիւն. Վիեննա։

36\. 1904 թ. Թ. 20. “ԿԱՅԾԵՐ„, Ա. Հատոր. Գ. տպագրութիւն. Վիեննա։

37\. 1904 թ. Թ. 21. “ԿԱՅԾԵՐ„, Բ. Հատոր եւ վերջ, լիակատար Բ. տպագրութիւն. Վիեննա։

38\. 1905 թ. Թ. 22. “ԽԱՉԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ„, մասն Ա., Բ., Գ. եւ Դ.։ Գ. տպագրութիւն. Վիեննա։

39\. 1905 թ. Թ. 23. “ԽԵՆԹԸ ԵՒ ՋԱԼԱԼԷԴԴԻՆ„, Գ. տպագրութիւն. Վիեննա։

40\. 1905 թ. Թ. 24. “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ„, Դ. տպագրութիւն. Վիեննա։

41\. 1906 թ. Թ. 25. “ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ„, “ՂԱՐԱԲԱՂԻ ԱՍՏՂԱԳԷՏԸ„, “ԳԱՂՏՆԻՔՆ ՂԱՐԱԲԱՂԻ„ (“Խամս. Մել.„, Գ. տպագրութիւն, “Ղար. Աստղ.„, Բ. տպագրութիւն, “Գաղտնիքն Ղարաբաղի„ արտատպուած “Արձագանքից„, առաջին անգամ առանձին գրքով)։ բոլորը մի հատորի մէջ ամփոփուած. Վիեննա.

42. 1911 թ. Թ. 26. “ՍԱԼԲԻ„, Ա. Հատոր (Ձեռագրից. առաջին անգամ առանձին գրքով). Վիեննա։

43. 1912 թ. Թ. 27. “ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ„ (Նոր շարադասութեամբ. ձեռագրից եւ արտատպուած). Վիեննա։

44. 1913 թ. Թ. 28. “ՏԱՃԿԱՀԱՅՔ„ (Նոր շարադասութեամբ, ձեռագրից եւ արտատպուած)։ Բ. լոյս տպագրութիւն. Վիեննա։

---

## Դ. ՐԱՖՖԻԻ ՕՏԱՐ ԼԵԶՈՒՆԵՐՈՎ ԱՌԱՆՁԻՆ ԳՐՔԵՐՈՎ ԼՈՅՍ ՏԵՍԱԾ ԵՐԿԵՐԸ

45. Ռուսերէն “ՈՍԿԻ ԱՔԱՂԱՂԸ„. 1892 թ. Թիֆլիս. Թարգ. Ն. Կարա-Մուրզաի։

46. „ “ԽԵՆԹ„. Թարգ. Ն. Կարա-Մուրզաի. Ա. տպագրութիւն. Թիֆլիս։

47. „ “ԽԵՆԹ„. Թարգ. Ն. Կարա-Մուրզաի. Բ. տպագրութիւն. 1901։

48. „ “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ„. 1912 թ. Մոսկուա. Թ. 706. „Универсальная библіотека“, Юрій Веселовскій-ի յառաջաբանով։ Թարգ. Ն. Բահաթրեանի։

49. Գերմաներէն “ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ„. Լայպցիգ, 1887 թ.։

50. „ “ՍՈՎԸ„, “ԲԻԲԻ ՇԱՐԱԲԱՆԻ„ եւ “ԽԱՉ-ՓՈՒՇԵՐ„. Թարգ. Պասքալ Օհաննեանցի. 1912 թ. Վիեննա։

51. „ “ՎԱՐԴԱՆ„ (“ԽԵՆԹԸ„) խմբագրութեամբ Hermann von Staden-ի։

52. Ֆրանսերէն "ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ„. 1902. Թարգ. Արգ. Յովհաննէսեանի. Փարիզ:

53. Անգղիերէն "ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ„. Լօնդօն (մամուլի տակն է):

54. Վրացերէն "ՎԷՊԻԿՆԵՐ„. Թարգ. Մ. Ջմշկեանի:

55. „ "ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ„. Թարգ. Մ. Ջմշկեանի:

56. „ "ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ„. Թարգ. Դ. Տէր-Դաւթեանի:

57. „ "ՊԱՏԿԵՐՆԵՐ„. Թարգ. Դ. Տէր-Դաւթեանի:

58. „ "ԽԵՆԹԸ„. 1903 Թ. Թիֆլիս:

59. Լեհերէն "ՊԱՏԿԵՐՆԵՐ„:

---

*Այստեղ առաջ չենք բերում Րաֆֆիի երկերի օտար լեզուներով այն թարգմանութիւնները, որոնք լոյս են տեսել պարբերական հրատարակութիւնների եւ ժողովածուների մէջ, որպէս են. — "Ջալալէդդին„ ֆրանսերէն թարգմանութիւն Պր. Արշակ Չօպանեանի* „Revue des Revues"*-ի մէջ Փարիզ* 1896 *եւ* 1897 *Թ.: "Ջալալէդդէն„ անգղիերէն* „Armenia"*-ի մէջ Նիւեօրք* 1910 *Թ. "Կայծեր„ եւ "Խենթ„ անգղիերէն Հնդկաստանի* „Ara" *ամսագրի մէջ եւ այլն:*